## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2

ՓԵՏՐՎԱՐ 1974

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅՈՒՄ.

ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ. ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏՈՒՄ

# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԿՈՒԲԱՅԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Քննության առնելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի 1974 թվականի հունվարի 28-ից մինչև փետրվարի 8-ը Կուբա կատարած պաշտոնական բարեկամական այցի արդյունքները, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը լիովին հավանություն են տալիս այդ այցի ժամանակ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը և այն գնահատում են որպես խոշոր իրադարձություն, որը նոր փուլ է նշանավորում Սովետական Միության կոմունիստական կուսակցության և Կուբայի կոմունիստական կուսակցության, ՍՍՀՄ-ի և Կուբայի Հանրապետության եղբայրական բարեկամության ու բազմակողմանի համագործակցության զարգացման ասպարեզում:

Լ. Ի. Բրեժնևը, նրան ուղեկցող ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամներ Ա. Ա. Գրոմիկոն և Վ. Վ. Շչերբիցկին, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու Գ. Վ. Ռոմանովը, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Կ. Ֆ. Կատուշևը և սովետական մյուս ընկերները, կատարելով ՍՄԿԿ Կենտկոմի հանձնարարությունը, հանգամանալի բանակցություններ անցկացրին Կուբայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, Կուբայի Հանրապետության Հեղափոխական կառավարության պրեմիեր-մինիստր Ֆիդել Կաստրոյի, Կուբայի կոմկուսի Կենտկոմի քաղբյուրոյի և քարտուղարության անդամների հետ: Հավանություն տալով այդ բանակցությունների արդյունքներին, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը մեծ գոհունակությամբ են նշում երկու կուսակցությունների ու երկրների հայացքների և դիրքերի միասնությունը ինչպես երկկողմ հարաբերությունների հարցերում, այնպես էլ արդիականության բոլոր արմատական միջազգային պրոբլեմներում:

Հավանայում կայացած սովետա-կուբայական բարեկամության միտինգում ընկերներ Լ. Ի. Բրեժնևի և Ֆիդել Կաստրոյի արտասանած ճառերի մեջ քաղաքական լայն ֆոնի վրա ցույց տրվեցին կուբայական հեղափոխության ակնառու դերը, նոր հասարակարգի կառուցման ասպարեզում կուբայական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները, ամբողջ ուժով ընդգծվեց Կուբայի հետ Սովետական Միության, մյուս եղբայրական սոցիալիստական պետությունների մարտական համերաշխության նշանակությունը, կոմունիզմի կառուցման ասպարեզում սովետական ժողովրդի նվաճումների, ՍՍՀՄ-ի արտաքին քաղաքականության խոր ազդեցությունը խաղաղության, սոցիալիզմի և ազգային ազատագրության ուժերի ամրապնդման վրա:

Սովետա-կուբայական դեկլարացիան, որը ստորագրեցին ընկերներ Լ. Ի. Բրեժնևը և Ֆիդել Կաստրոն, շատ կարևոր փաստաթուղթ է: Դրա մեջ ամփոփված է աշխարհում սոցիալիզմի առաջին երկրի և Լատինական Ամերիկայի առաջին սոցիալիստական պետության հիրավի ինտերնացիոնալիստական համագործակցության 15-ամյա փորձը, նշված է ՍՍՀՄ-ի և Կուբայի քաղաքական, տնտեսական և կուլտուրական կապերի հետագա պլանաչափ զարգացման, սոցիալիստական, կոմունիստական շինարարության փորձի փոխանակման, մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա սոցիալիստական համագործակցության և համաշխարհային կոմունիստական շարժման համախմբվածությունն ամրապնդելու համար մղվող պայքարում գործողությունների կոորդինացման լայն ծրագիր:

Դեկլարացիայում նոր ուժով են ընդգծված սոցիալիստական համագործակցության երկրների համաձայնեցված արտաքին քաղաքականության ազնիվ նպատակները, որոնք ուղղված են միջազգային լարվածության հետագա թուլացմանը և համընդհանուր արդարացի խաղաղության ապահովմանը, Եվրոպայում և ուրիշ մայրցամաքներում կոլեկտիվ անվտանգության սիստեմների ստեղծմանը, իմպերիալիստական ագրեսիայի բոլոր ձևերի դեմ մղվող վճռական պայքարին, ազգային ազատագրության և սոցիալական առաջադիմության համար ժողովուրդների պայքարի պաշտպանությանը:

Իրենց հավատարմությունը հայտնելով տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա ընդհանուր խաղաղությունն ամրապնդելու գործին, Սովետական Միությունը և Կուբան հավաստեցին իրենց վճռականությունը եղբայրական մյուս երկրների, բոլոր առաջադեմ ուժերի հետ հաստատակամորեն հասնելու միջազգային իրադրության մեջ դրական տեղաշարժերի ամրապնդմանը, դրանց կայուն և հաստատուն բնույթ տալուն:

Լ. Ի. Բրեժնևի այցը վերածվեց սովետա-կուբայական բարեկամության հուզիչ, հզոր ցույցի: Դա միևնույն պատմական ուղիով ընթացող և մի ընդհանուր գործ կատարող երկու եղբայր ժողովուրդների համերաշխության իսկական տոն էր, սոցիալիզմի իդեալներին Կուբայի աշխատավորների անսասան հավատարմության արտահայտություն: Սովետական Միության պատվիրակներին կուբայական ժողովրդի ցույց տված ջերմ ընդունելության մեջ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը Լենինի կուսակցության, սովետական ժողովրդի հանդեպ սիրո և հարգանքի հիանալի դրսևորում են տեսնում: ՍՍՀՄ-ի կոմունիստները, աշխատավորները հեղափոխական Կուբային, նրա ղեկավարներին պատասխանում են համերաշխության ու եղբայրության նույնպիսի զգացմունքներով:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը այն կարծիքին են, որ այցի արդյունքները, սովետա-կուբայական դեկլարացիան հուսալի հիմք կծառայեն ՍՍՀՄ-ի և Կուբայի բազմակողմանի համագործակցության հետագա զարգացման համար՝ ի շահ երկու երկրների ժողովուրդների, խաղաղության և սոցիալիզմի գործի:

# ԵՂԲԱՅՐԱԿԱՆ, ՄԻԱՍՆԱԿԱՆ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ 1974 Թ. ՀՈՒՆՎԱՐԻ 19-Ի ՀԱՄԱՏԵՂ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏԸ, ՆՎԻՐՎԱԾ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆԸ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՇՔԱՆՇԱՆԻ ՀԱՆՁՆՄԱՆԸ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՔԱՂԲՅՈՒՐՈՅԻ ԱՆԴԱՄ, ՍՍՀՄ ԱՐՏԱՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԻՆԻՍՏՐ ԸՆԿԵՐ Ա. Ա. ԳՐՈՄԻԿՈՅԻ ՃԱՌԸ

*Թանկագին ընկերնե՛ր։*

*Այսօր Սովետական Հայաստանի կյանքում մեծ, տոնական օր է։ Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությանը հանձնվում է ժողովուրդների բարեկամության շքանշան։*

*Ինձ մեծ գոհունակություն է պատճառում Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և սովետական կառավարության անունից այս դահլիճում բոլոր ներկա գտնվողներին և հանձինս ձեր՝ Հայաստանի աշխատավորներին ջերմորեն շնորհավորել հայրենիքի բարձր և արժանի պարգևի առթիվ։* (Երկարատև ծափահարություններ)։

*Առանձնահատուկ գոհունակությամբ կատարում եմ ես մի հանձնարարություն։ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը խնդրել է Հայաստանի բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը, մտավորականությանը, կոմունիստներին և անկուսակցականներին, ամբողջ ժողովրդին հաղորդել իր սրտագին շնորհավորանքներն ու հետագա աշխատանքային հաջողությունների, բարօրության և անձնական երջանկության բարեմաղթությունները։* (Երկարատև ծափահարություններ)։

*Ժողովուրդների բարեկամության շքանշանը, որն այսուհետև, Լենինի երկու շքանշանների և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանի հետ մեկտեղ, շողալու է Սովետական Հայաստանի դրոշի վրա, մարմնավորում է աշխատանքային և մարտական անօրինակ սխրանքներով կոփված եղբայրական անխախտ միությունը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների*



*Միությունը։ Հանրապետություններին պարգևների հանձնումը ամենուրեք վերածվում է կուսակցության և ժողովրդի միասնության, լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի հուզիչ ցույցի։* (Ծափահարություններ)։

*Դարեր շարունակ Հայաստանի լավագույն որդիներն ու դուստրերը երազել են ազատություն ու երջանկություն իրենց ժողովրդի համար։ Բայց միայն իրենց բախտը կապելով Ռուսաստանի հեղափոխական պրոլետարիատի պայքարի հետ, նրա ավանգարդի՝ մեծ Լենինի կոմունիստական կուսակցության հետ, հայ ժողովուրդը կանգնեց սոցիալական և ազգային վերածննդի ուղու վրա։ Ցարիզմի դեմ մղված հեղափոխական պայքարի տարեգրության մեջ ընդմիշտ մտել են Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի, Ալեքսանդր Մյասնիկյանի, լեգենդար Կամոյի, ուրիշ շատ բոլշևիկ-լենինյանների անունները։* (Ծափահարություններ)։ *Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը հայերին ազատագրեց դարավոր ճնշումից, նրանց առջև բացեց պայծառ ապագայի հեռանկարներ։*

*Երբ բուրժուական նացիոնալիստների՝ դաշնակների, ջախջախումից հետո հայոց հինավուրց հողում հաստատվեց սովետական իշխանություն, Վ. Ի. Լենինը ջերմորեն ողջունեց «իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Սովետական Հայաստանին»։ Վլադիմիր Իլյիչի անձնական ցուցումով, 1920 թվականին Հայաստան ուղարկվեցին մի խումբ հեղափոխականներ, որոնք կարևոր դեր խաղացին երիտասարդ հանրապետության ամրապնդման գործում։*

*Անդրկովկասյան Ֆեդերացիայի, իսկ ապա Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմի մեջ Հայաստանի մտնելը վճռական նախադրյալ եղավ տաղանդավոր հայ ժողովրդի էկոնոմիկայի և կուլտուրայի շեշտակի վերելքի, նրա ստեղծագործական ուժերի լիակատար ծավալման համար։*

*Մշտապես զգալով բոլոր եղբայրական ժողովուրդների և, ամենից առաջ, ռուս մեծ ժողովրդի, անգնահատելի օգնությունն ու աջակցությունը, Սովետական Հայաստանը հետամնաց գավառական ծայրամասից դարձավ երկրի՝ տնտեսական տեսակետից ամենազարգացած հանրապետություններից մեկը։ Դա շահագործումից ազատ ժողովրդի անձնվեր աշխատանքի արգասիքն է։ Դա միաժամանակ սովետական բոլոր մարդկանց ընդհանուր ջանքերի արգասիքն է։*

*Արդյոք աշխարհի շա՞տ երկրներում է արդյունաբերության բաժինը կազմում հանրային արտադրության երեք քառորդը։ Իսկ չէ՞ որ սովետական իշխանության հաղթանակից առաջ Հայաստանում կային միայն մանր տնայնագործական արհեստանոցներ։ Այժմ հանրապետության արդյունաբերական ձեռնարկություններում մեկ օրում այնքան արտադրանք է արտադրվում, որքան հեղափոխությունից առաջ մեկ տարում։ Հայաստանն այժմ արտասահմանյան 70 երկրներ է արտահանում 180 տեսակի արդյունաբերական արտադրանք և տեսեք, թե ինչպիսիք. էլեկտրոնային-հաշվիչ մեքենաներ և մետաղահատ հաստոցներ, հոսանքի գեներատորներ և ուժային տրանսֆորմատորներ։ Բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ հանրապետությունը առաջ է անցել կապիտալիստական բազմաթիվ զարգացած պետություններից։*

*Արմատապես փոխվել է նաև գյուղատնտեսությունը։ Հետևելով ռուսգումը զարգացնելու մասին Վ. Ի. Լենինի ցուցումներին, Հայաստանի աշխատավոր-*

ները լայնորեն ծավալեցին ջրատնտեսական կառուցվածքների շինարարությու-
նը, հանրապետությունը տառացիորեն զուռորեցին բազմաթիվ ջրանցքներով։
Խիստ նշանակալի է Հայաստանի ավանդը այնպիսի մթերքների միութենական
արտադրության մեջ, ինչպիսիք են ծխախոտը, եթերայուղերը և բարձրատե-
սակ խաղողը։
Այսօր Հայաստանը համատարած գրագիտության և կրթության բարձր
մակարդակի հանրապետություն է։ Նա աշխարհի առավել զարգացած երկրների
հետ միևնույն շարքում է կանգնած հազար մարդուն ընկնող ուսանողների
թվով, ունի գիտնականների պատկառելի ջոկատ, որոնցից շատերը համաշ-
խարհային հռչակ են վայելում։
Իսկական ծաղկման է հասել Հայաստանի ժամանակակից սոցիալիստա-
կան արվեստը, որը մեր ամբողջ անծայրածիր հայրենիքի արվեստի բաղկա-
ցուցիչ մասն է։ Հայ տաղանդավոր գրողների, կոմպոզիտորների, նկարիչների
ինքնատիպ ստեղծագործությունները մտնում են բազմազգ սովետական կուլ-
տուրայի ոսկե ֆոնդի մեջ։ Եղիշե Չարենցի բանաստեղծությունները, Մարտի-
րոս Սարյանի կտավները, Արամ Խաչատրյանի երաժշտությունը, հայ արվեստի
ուրիշ շատ գործիչների ստեղծագործությունները լայնորեն հայտնի են մեր
երկրում, ինչպես նաև նրա սահմաններից դուրս։
Հայաստանը պատմականի և արդիականի զարմանալի համաձուլվածք է։
Երևանի ֆիզիկայի ինստիտուտում ստեղծված էլեկտրոնային օղակաձև արա-
գացուցիչը այստեղ հարևանում է Մատենադարանի հետ, որտեղ պահպանվում
են հազարամյա հնություն ունեցող ձեռագրեր։ Լեռների ու ժայռերի միջով
դեպի Սևան ձգվող արդիական ավտոմայրուղին անցնում է ճարտարապետա-
կան սքանչելի հուշարձանների կողքով, որոնք հայերի հնադարյան մշակույթի
վկաներն են։ Ավելի քան 2750 տարի առաջ հիմնված Էրեբունի հին ամրոցի
տեղում տարածվել է Երևանը՝ Միության ամենագեղեցիկ քաղաքներից մեկը։
Մի՞թե հատկանշական չէ այն փաստը, որ տարբեր հանգամանքների բե-
րումով օտար երկրներում ցրված հարյուր հազարավոր հայեր ձգտում են դեպի
Սովետական Սոցիալիստական Հայաստանը, իսկ շատերը ընդմիշտ են գալիս
այստեղ։
«Սովետական Հայաստանի պատմական փորձը,— ասաց ընկեր Լ. Ի.
Բրեժնևը Հայկական ՍՍՀ-ի 50-ամյակի կապակցությամբ տեղի ունեցած հան-
դիսությունների ժամանակ,— կրկին ու կրկին համոզում է, որ իսկական ծաղ-
կումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղինե-
րով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանի-
քում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման
շնորհիվ»։
Մեր երկրում ստեղծվել է ոչ միայն աշխարհում ամենաառաջավոր և ար-
դարացի հասարակարգը, ստեղծվել մեր, սովետական կացութաձևը, ձևավոր-
վել է նոր մարդը՝ կոմունիզմի գիտակից կառուցողը։ Մեր գլխավոր հարստու-
թյունը մարդիկ են, քաղաքի և գյուղի աշխատավորները, որոնց ոգեշունչ աշ-
խատանքը վերափոխում է անծայրածիր բազմազգ հայրենիքի դեմքը, այն
դարձնում է՛լ ավելի հիասքանչ։
Հնգամյակի տարիներին, Հայրենական մեծ պատերազմի բովում, հետ-
պատերազմյան վերականգնման դժվարությունների մեջ, կոմունիզմի ծավա-
լուն կառուցման լայնածիր տարածություններում կռվում ու կոփվում էր Սո-
վետական Միության ավելի քան հարյուր ազգերի և ազգությունների ան-



խախտ բարեկամությունը։ Առաջացավ 250 միլիոն մարդկանց պատմական
նոր հանրություն, որը մենք անվանում ենք սովետական ժողովուրդ։ Դա մեր
ընդհանուր մեծագույն նվաճումն է։
Սովետների երկրի ժողովուրդների բարեկամությունը միութենական բո-
լոր հանրապետությունների, մեր ամբողջ պետության սոցիալական և տնտե-
սական առաջադիմության հզոր արագացուցիչն է։
Սովետական Միության ժողովրդական տնտեսության հետագա զարգաց-
ման համար սկզբունքային նշանակություն ունի ՍՄԿԿ Կենտրոնական կոմի-
տեի՝ 1973 թվականի դեկտեմբերին կայացած պլենումը։ Պլենումում ընկեր
Լ. Ի. Բրեժնևի ունեցած ելույթում խորապես ու համակողմանիորեն վերլուծ-
վեցին ընթացիկ հնգամյակում կուսակցության և ժողովրդի գործունեության
արդյունքները, առաջադրվեցին պայագայի խնդիրները, որոշվեցին ժողովրդա-
տնտեսական պլանի կատարման ուղիներն ու մեթոդները, բացահայտվեցին
սովետական էկոնոմիկայի և աշխատավորների բարեկեցության նոր վերելքի
հեռանկարները։ Պլենումը բոլոր կուսակցական կազմակերպություններին ա-
ռաջարկեց իրենց աշխատանքում ղեկավարվել ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր
քարտուղարի ելույթում բովանդակվող դրույթներով ու հետևություններով։
Հնգամյակի առաջին երեք տարիների արդյունքների մասին մենք կարող
ենք խոսել օրինական հպարտությամբ։ Սովետական տերությունը ևս մեկ, կա-
րևոր առաջընթաց քայլ կատարեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի
ստեղծման և ամրապնդման ասպարեզում։ Վերջին երեք տարում արդյունա-
բերական արտադրանքի ծավալը աճեց 23,1 տոկոսով, իսկ յուրաքանչյուր
այդպիսի տոկոս, ինչպես ասում են, միլիարդավոր ռուբլիներ է կշռում։
Կուսակցության և Կենտրոնական կոմիտեի գործունեության վերջին տա-
րիների քաղաքական ու տնտեսական ամենանշանակալի արդյունքներից մեկը
գյուղատնտեսության ասպարեզում ձեռք բերված լուրջ տեղաշարժերն են։ Բա-
նը ո՛չ միայն այն է, որ 1973 թվականին հավաքվեց հացահատիկային կուլ-
տուրաների՝ երկրի պատմության մեջ ռեկորդային բերք՝ ավելի քան 222 մի-
լիոն տոննա, թեև դա, իհարկե, հսկայական նվաճում է։ Կուսակցության մըշ-
տական և հաստատակամ ջանքերի շնորհիվ մեր ողջ գյուղատնտեսական ար-
տադրությունը նոր աստիճանի բարձրացավ։ Եթե մենք դեռ չենք էլ կարող
ասել, որ մեզ լիովին ապահովագրել ենք եղանակի քմահաճույքներից,
ապա ակնհայտորեն գնում ենք դեպի այդ նպատակը։
Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը ընդգծեց, որ 1973 թվականը իննե-
րորդ հնգամյակի վճռական տարի դարձնելու՝ կուսակցության առաջադրած
խնդիրը հաջողությամբ է կատարված։ Արդյունաբերական արտադրության աճի
պլանային ցուցանիշը, իսկ դուք գիտեք, որ այն վերանայվեց ավելացման
կողմը, ձեռք է բերված և գերազանցված է։ Եվ որ առանձնապես կարևոր է՝
գերակատարված է հանրային արտադրության արդյունավետության ամենա-
կարևոր ցուցանիշի՝ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլա-
նային առաջադրանքը։
1973 թվականին կուսակցությունը, ժողովուրդը լուրջ քննության առջև էին
կանգնած։ Այդ քննությունը հանձնվեց, և պատվով հանձնվեց։ (Ծափահա-
րություններ)։
Իններորդ հնգամյակում արդյունաբերության և գյուղատնտեսության դի-
նամիկ զարգացումը կուսակցության ու կառավարության հնարավորություն

տվեց պլանաչափ իրագործել աշխատավորների կենսամակարդակի բարձրաց-
ման ծրագիրը: Յուրաքանչյուր սովետական մարդ այդ զգում է: Ավելացան
միլիոնավոր սովետական մարդկանց աշխատավարձը, կենսաթոշակները,
կրթաթոշակները, 34 միլիոն մարդ բարելավեց իր բնակարանային պայման-
ները:

Սովետական ժողովրդի բարեկեցության աղբյուրը եղել և մնում է նույնը՝
սովետական մարդկանց աշխատանքը: Մեր երկրի ոչ մի նվաճում նվեր չի
տրվել նրան: Պարզ է, որ այսուհետև էլ կուսակցության առաջադրած գլխա-
վոր խնդիրը՝ ամբողջ սովետական ժողովրդի կյանքի նյութական և հոգևոր
մակարդակի հետագա բարձրացման խնդիրը, նույնքան հաջողությամբ կլուծ-
վի, որքան արտադրողաբար աշխատի յուրաքանչյուր սովետական մարդ:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման վերաբերյալ XXIV համա-
գումարի դիրեկտիվների իրականացման, իններորդ հնգամյա պլանի առաջա-
դրանքների կատարման գործում իրենց ավանդն են մուծում Սովետական Հա-
յաստանի աշխատավորները: Հանրապետության արդյունաբերության պլանը
1973 թ. կատարվեց ժամկետից շուտ: Ընդհանուր աշխատանքին լավ ուիժ են
հաղորդում Հայկական ՍՍՀ-ի այնպիսի առաջատար ձեռնարկություններ, ինչ-
պիսիք են՝ «Հայէլեկտրալույս» միավորումը, Կիրովականի Ալեքսանդր Մյաս-
նիկյանի անվան քիմիական կոմբինատը, Քանաքեռի ալյումինի գործարանը
և այլն:

Անցյալ տարի հարվածային աշխատանք կատարեցին Ախուրյանի, Թա-
լինի և Սիսիանի շրջանների կոլտնտեսականները. այդ շրջանները 1973 թվա-
կանին պարգևատրվեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի,
ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի կարմիր դրոշներով: Նույնպիսի բարձր պա-
տիվ ցույց տրվեց Անիի շրջանի Ձերժինսկու անվան կոլտնտեսությանը, Հոկ-
տեմբերյանի շրջանի Էնգելսի անվան կոլտնտեսությանը և Թալինի շրջանի
Արագածի պտղաբուծական սովխոզին:

1973 թվականին գյուղատնտեսության բնագավառում ձեռք բերած աչքի
ընկնող հաջողությունների համար սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչ-
ման արժանացան Գ. Կարապետյանը և Ս. Խանոյանը:

Էկոնոմիկայի բոլոր ճյուղերը ունեն իրենց առաջավոր աշխատողները,
որոնց հավասարվում են մնացածները: Դրանք են՝ մեքենաշինարար Ս. Ներ-
սիսյանը, տեքստիլագործներ Մ. Ստեփանյանը և Մ. Փափազյանը, քիմիա-
գործներ Ս. Պետրոսյանը և Ս. Վարդանյանը, ֆլոտատորուհի Կ. Սարդար-
յանը, խոր հորատման վարպետ Ա. Ոսկանյանը, գորգագործուհի Ն. Վարդան-
յանը, շինարար Գ. Մանասյանը: Այստեղ հիշատակվեցին միայն մի քանի
անուններ: Ուղղակի ֆիզիկապես անհնար կլիներ թվարկել աշխատանքի բոլոր
իսկական հերոսներին, արտադրության նորարարներին. հանրապետությունում
դրանք հազարներ են: (Ծափահարություններ):

Սովետական ժողովրդի ձեռք բերած բոլոր հաջողությունների մեջ խտաց-
ված է նրա մարտական ավանգարդի՝ Սովետական Միության կոմունիստական
կուսակցության քաղաքական ու կազմակերպչական վիթխարի աշխատանքը:
Բայց կոմունիստներին երբեք հատուկ չեն եղել ինքնահանգստացումն ու բա-
րեհոգությունը: Եղած թերությունների նկատմամբ իսկական լենինյան, ան-
հաշտ վերաբերմունքի ակնառու օրինակ ցույց տվեց դեկտեմբերյան պլենումը:
Այնտեղ ուղղամիտ բոլշևիկյան սկզբունքային խոսակցություն տեղի ունեցավ:
ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ելույթում սուր կեր-



պով դրվեցին պլանավորման թերություններին վերաբերող հարցերը, կուսակ-
ցական քննադատության ենթարկվեցին պլանային կարգապահության խախ-
տումները, արտադրանքի որակի բարձրացման, արտադրության մեջ գիտու-
թյան նորագույն հայտնագործությունների և տեխնիկական նվաճումների
արմատավորման անբավարար տեմպերը: Դատապարտվեցին նեղ-գերատես-
չական, տեղայնական տենդենցները:

Ձեզ համար, իհարկե, գաղտնիք չէ, որ այն թերությունները, որոնց մա-
սին խոսվեց դեկտեմբերյան պլենումում, ինչ-որ չափով առկա են նաև Հա-
յաստանում: Վլադիմիր Իլյիչ Լենինը սովորեցրել է, որ նույնիսկ հանդիսավոր
առիթները անհրաժեշտ է օգտագործել ուշադրությունը չլուծված խնդիրների
վրա կենտրոնացնելու համար:

Թողարկվող արտադրանքի որակը միշտ չէ, որ համապատասխանում է
արդի պահանջներին: Արդի պայմաններում սովետական մարդկանց արդեն չի
կարող բավարարել այն, ինչ դեռ երեկ լավ պահանջարկ էր վայելում: Արտա-
դրանքի որակի բարձրացումը այսօր հրամայական անհրաժեշտություն է:

Դուք, ընկերնե՛ր, ինձնից ավելի լավ գիտեք, որ Հայաստանում դեռևս
կան կոլտնտեսություններ, սովխոզներ և կառույցներ, որոնք դեռ չեն կատա-
րում սահմանված պլաններն ու ստանձնած սոցիալիստական պարտավորու-
թյունները: Իսկ նրանց կողքին կան տնտեսություններ, որոնք աշխատում են
հաջողությամբ և նույնիսկ շատ լավ: Ուրեմն, բանը արտադրության կազմա-
կերպումն է, դրա կառավարումը: Արդարացի կշտամբանքներ են հարուցում
նաև առևտրում, բնակչության կուլտուր-կենցաղային և կոմունալ սպասարկ-
ման ասպարեզում եղած թերությունները: Այնպես որ, անելիքներ դեռ շատ
կան:

Կուսակցության ուժն էլ հենց այն է, որ նա լռության չի մատնում եղած
դժվարությունները, համարձակորեն բացահայտում է թերությունները, կոնկ-
րետ միջոցներ է ձեռնարկում դրանց արագ վերացման համար: Կուսակցական
քննադատությունն ու ինքնաքննադատությունը նորից ու նորից հանդես են
գալիս որպես մեր ընդհանուր առաջընթացն արագացնող կարևորագույն
գործոն:

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը, ինչպես գիտեք, հավանու-
թյուն տվեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1974 թվականի
պետական պլանի և պետական բյուջեի նախագծերին: Երկրի իշխանության
բարձրագույն մարմինը՝ ՍՍՀՄ Գերագույն սովետը, հաստատեց այդ փաստա-
թղթերը, նրանց օրենքի ուժ տվեց:

Պետք է ուղղակի ասել, որ 1974 թվականի պլանը ամբողջ երկրի համար,
այդ թվում, իհարկե, նաև Հայկական ՍՍՀ-ի համար, խիստ լարված է: Կու-
սակցությունը գտնում է, որ այս տարի պետք է ո՛չ միայն ամրապնդվեն, այլև
զարգացվեն հնգամյակի երրորդ տարվա նվաճումները: Անհրաժեշտ է ամեն
հնարավոր բան անել՝ ընթացիկ տարվա պլանային բնագծերը գերազանցելու
համար: Հարցը հենց այդպես դրվեց դեկտեմբերյան պլենումում: Պլենումի
ընդունած որոշման մեջ ընդգծվում է, որ 1974 թվականի պլանի կատարումն
ու գերակատարումը որոշիչ նշանակություն կունենան ամբողջ հնգամյակը
հաջողությամբ ավարտելու համար:

Առջևում մեծ ու դժվարին աշխատանք է սպասվում: Բայց տարակույս
չկա, որ այն մատչելի է կուսակցությանը և ժողովրդին, ինչպես մատչելի են

ճղել ոչ պակաս դժվարին և հաջողությամբ կատարված խնդիրները: Այս մասին են վկայում սովետական մարդկանց աշխատանքային գործերը՝ նոր տարվա առաջին իսկ օրերից:

Սովետական էկոնոմիկան այժմ չտեսնված մասշտաբների է հասել: Մենք գործ ունենք վիթխարի, բազմաճյուղ ինդուստրիայի, խոշոր սոցիալիստական գյուղատնտեսության հետ, բուռն զարգանում է գիտատեխնիկական հեղափոխությունը:

Այս պայմաններում առանձնապես կարևոր նշանակություն են ստանում ժողովրդատնտեսական բարդ կոմպլեքսի կառավարման մեխանիզմի հետագա կատարելագործման հարցերը: Միայն կուսակցական լայն մոտեցումը, հեռանկարը տեսնելու հմտությո՛ւնն են ի վիճակի ապահովելու էկոնոմիկայի ղեկավարման՝ ներկայումս անհրաժեշտ ավելի բարձր մակարդակ:

Էկոնոմիկայի զարգացման արագ տեմպերի ապահովման վճռական նախադրյալներից մեկը այն ամեն լավագույնի համակողմանի օգտագործումն է, ինչ ծնում է գիտատեխնիկական առաջադիմությունը և գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների, ժամանակակից տեխնոլոգիայի համարձակ արմատավորումը: Այս ամենը հնարավորություն կընձեռի ավելի լրիվ օգտագործելու զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի առավելությունները:

Կյանքը ցույց տվեց, թե որքան ժամանակին կուսակցությունը վերցրեց երկրի վառելիքա-էներգետիկ բազան ընդլայնելու կուրս: Սովետական էկոնոմիկան զերծ է այն տհաճություններից, որ այժմ ապրում են կապիտալիստական պետությունները էներգետիկ ճգնաժամի հետևանքով: Մեր բնական հարստությունները մեծ են, բայց մենք պետք է կարողանանք ռացիոնալ օգտագործել դրանք, լինենք հոգատար տնտեսատերեր, թույլ չտանք շռայլություն:

Կկամենայի ընդգծել ևս մի կարևոր մոմենտ, որի վրա ուշադրություն հրավիրեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումը: Աշխատանքի արդյունավետության բարձրացման հուժկու, միայն մեր հասարակարգին հատուկ լծակ է համամիութենական սոցիալիստական մրցությունը: Նրա մասսայական ծավալումը, ինդուստրիայի և գյուղատնտեսության աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունները, որոնց արձագանքում են միլիոնավոր մարդիկ, արդեն հնարավորություն են ընձեռել բացահայտելու արտադրության լրացուցիչ և հսկայական ռեզերվներ:

Համակողմանի խրախուսանքի է արժանի մրցության՝ կարելի է ասել ժողովրդի խորքից ծնունդ առած այնպիսի ձև, ինչպիսիք են հանդիպական պլանները: Հարկավոր է ըստ ամենայնի նպաստել այնպիսի պայմանների ստեղծմանը, որոնք աշխատավորներին մղեն ստանձնելու սոցիալիստական ավելի բարձր պարտավորություններ և, իհարկե, ոչ թե պարզապես ստանձնելու, այլև արժանավայել կատարելու դրանք:

Խնդիրը հենց այդպես է դրվում արդյունաբերության, շինարարության մեջ, տրանսպորտում և գյուղատնտեսության ասպարեզում համամիութենական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի վերջերս ընդունված որոշումներում:

Հայաստանի կոմունիստները իրենց պլենումում քննարկեցին ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի արդյունքները և հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները: Պատշաճը հատուցելով Հայկական ՍՍՀ-ի



ձեռք բերած հաջողություններին, իսկ դրանք անվիճելի են, պլենումի մասնակիցները կրակը կենտրոնացրին այն բանի վրա, ինչը դեռ արգելակում է հանրապետության ժողովրդական տնտեսության մի շարք ճյուղերի աճը:

Ընդ որում, նշվեց, որ տնտեսության, սոցիալիստական մրցության ղեկավարման, աշխատանքի և սոցիալիստական սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու գործում որոշ շրջկոմների և քաղկոմների, սովետական և արհմիութենական մարմինների աշխատանքի մակարդակը միշտ չէ, որ համապատասխանում է ՍՄԿԿ XXIV համագումարի պահանջներին: Ընդգծվեց, որ դեռևս շատ բան պետք է արվի պետական և աշխատանքային կարգապահությունն ամրապնդելու, հանձնարարված գործի համար աշխատողների անձնական պատասխանատվությունը բարձրացնելու մարզում:

Պլենումը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին հավաստիացրեց, որ Հայաստանի կուսակցական կազմակերպությունները, աշխատավորները բոլոր ուժերը կգործադրեն՝ հաջողությամբ կատարելու հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա առաջադրանքները: Իսկ կոմունիստների խոսքը գործից չի տարբերվում:

Ընկերնե՛ր:

Կոմունիստական շինարարության խնդիրների լուծումը ամենասերտ կերպով առնչված է այն բանի հետ, թե ինչպես են դասավորվում գործերը միջազգային ասպարեզում: Որքան մեզ համար լավ լինի աշխարհում տիրող ընդհանուր իրադրությունը, այնքան մեր երկիրը հարաճուն չափով կարող է ջանքերը կենտրոնացնել ժողովրդատնտեսական պլանների կատարման, սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացման վրա:

Արտաքին քաղաքականության բնագավառի նվաճումները, ինչպես և անհաջողությունները, դժվար է կշեռքով չափել: Բայց եթե փորձելու լինենք գլխավոր հետևությունն անել այն մեծաթիվ իրադարձություններից, որոնցով հագեցած է վերջերս ավարտված տարին, ապա կարելի է վստահությամբ ասել, որ Սովետական Միության միջազգային դրությունը շարունակում է անշեղորեն ամրապնդվել: (Ծափահարություններ):

Իսկ ի՞նչ են նշանակում այս խոսքերը:

Ամենից առաջ՝ մեր պետության տնտեսական և պաշտպանական հզորության աճ: Այդ հզորությունը օրավուր բազմապատկվում է ամբողջ սովետական ժողովրդի աշխատանքով: Աշխատանքային ճակատում ձեռք բերված ամեն մի նոր հաջողություն միաժամանակ ծանրակշիռ ավանդ է նաև արտաքին քաղաքականության մեջ:

Այնուհետև, մենք հավատարիմ շատ բարեկամներ ունենք աշխարհում, և նրանց թիվը աճում է: Մենք կարող ենք հույս դնել նրանց աջակցության վրա, ճիշտ այնպես, ինչպես որ նրանք էլ գիտեն, որ իրենց համար դժվարին րոպեին վճռական օգնությունը կարող է գալ միայն մեզանից: Սովետական երկրի, նրա խաղաղասիրական քաղաքականության հեղինակությունը ամբողջ աշխարհում բարձր է ավելի, քան երբևիցե:

Իհարկե, մեր թշնամիները նույնպես ձեռքները ծալած չեն նստել: Բայց իմպերիալիստական բանակում ևս ավելի ու ավելի են հասկանում, որ Սովետական Միության հետ հարաբերությունների սրումը, մանավանդ նրա հետ ռազմական ընդհարումը ոչ մի լավ բան չի բերի: Այժմ ուժերի հարաբերակցությունն այնպիսին է, որ իմպերիալիզմի առաջատար տերությունները հարկադրված են համաձայնություն որոնել մեզ հետ, ընդ որում, այնպիսի հի-

մունքներով, որոնք մեր կուսակցությունը առաջ է քաշում մեծ Լենինի ժամանակներից սկսած: Դրանք են տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները:

Բոլոր նշանները կան այն բանի, որ Սովետական Միության, եղբայրական սոցիալիստական պետությունների ջանքերի շնորհիվ աշխարհը թևակոխել է միջպետական փոխհարաբերությունների հիմնավոր վերակառուցման ժամանակաշրջան:

Միջազգային գործերում մենք ունենք գործողությունների հստակ ու ծրագրիտ ծրագիր: Այն սահմանել են ՍՄԿԿ XXIV համագումարը, Կենտկոմի հաջորդ պլենումները, այդ թվում նաև վերջին՝ դեկտեմբերյան պլենումը: Մենք քայլ առ քայլ հետևողականորեն մոտենում ենք այդ ծրագրի իրականացմանը, թեև, իհարկե, անելիք դեռ շատ կա: Եթե ամեն ինչ կախված լիներ միայն մեզանից, խաղաղությունն ու միջազգային համագործակցությունը կհաստատվեին ամբողջ աշխարհում: Բայց արդեն հենց ներկայումս էլ երկրի լենինյան արտաքին քաղաքական կուրսը աճող և բարերար ազդեցություն է գործում մոլորակի իրադարձությունների ընթացքի վրա, ներառյալ նրա ամենահեռավոր անկյունները:

Այսպիսով, սովետական ժողովրդի, մեր դաշնակիցների և բարեկամների խաղաղ ստեղծարար աշխատանքի արտաքին պայմանները ավելի ու ավելի բարենպաստ են դառնում: Դա կոմունիստական կուսակցության և սովետական պետության արտաքին քաղաքական գործունեության արգասիքն է: Դա մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի կոլեկտիվ բանականության, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի անձնական ակնառու ավանդի պտուղն է: (Երկարատև ծափահարություններ):

Կուսակցությունը, ինչպես առաջ, սովետական արտաքին քաղաքականության կենտրոնական խնդիրն է համարում սոցիալիստական համագործակցության, նրա միասնության և համախմբվածության հետագա ամրապնդումը: Այդ խնդիրը հաջողությամբ կենսագործվում է:

Որակապես նոր աստիճանի է բարձրացել սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրագիրն իրականացնող պետությունների համագործակցությունը: Մեր պլանավորման պրակտիկայում առաջին անգամ ժողովրդական տնտեսության զարգացման 1974 թվականի պետական պլանի մեջ մշակված է հատուկ բաժին, որը նախատեսում է միջոցառումներ ՏՓԽ-ի անդամ երկրների հետ՝ արտաքին տնտեսական կոմպլեքսային կապերի զարգացման ոլորտում: Այդ գործը մշտական ուշադրություն ու հոգատարություն է պահանջում ինչպես կենտրոնում, այնպես էլ տեղերում, միութենական հանրապետություններում: Կկամենայի մասնավորապես ընդգծել, որ Տնտեսական փոխօգնության խորհրդի մասնակիցների արտադրական կոոպերացիայի շրջանակներում պարտավորությունների ժամանակին և որակյալ կատարումը տնտեսական և կուսակցական ղեկավարների առաջնահերթ պարտքն է:

Համաշխարհային ասպարեզում սոցիալիստական համագործակցության երկրների միասնությունը արտահայտվում է ո՛չ միայն նրանց գրաված քաղաքական դիրքորոշումներում, այլև փաստորեն բոլոր կոնկրետ պրոբլեմների նկատմամբ գործողությունների սերտ կոորդինացման մեջ: Փորձը համոզիչ ցույց է տալիս, որ սոցիալիստական երկրները՝ բոլորը միասին և յուրաքանչյուրն առանձին, ամենալավ արդյունքներին հասնում են այն ժամանակ, երբ նրանք հանդես են գալիս համաձայնեցված և համատեղ: Հենց այդպիսի գործողությունները վճռական չափով պայմանավորեցին (եթե բերելու լինենք միայն մեկ օրինակ) մեր ընդհանուր մեծ հաղթանակը՝ Գերմանական Դեմոկրատական Հանրապետության դիվանագիտական շրջափակման վերջնական և անվերադարձ ճեղքումը: Անցած տարի, ինչպես գիտեք, ԳԴՀ-ն դարձավ Միավորված ազգերի կազմակերպության լիիրավ անդամ: (Ծափահարություններ):



Առանձնապես կուզենայի նշել այն դերը, որ սոցիալիստական համագործակցության համախմբման մեջ խաղում են եղբայրական կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարների հանդիպումները: Ամենաբարձր մակարդակի այդպիսի բազմակողմ բանակցությունները լավ ավանդույթ են դարձել: Դրանք ամեն անգամ նոր խթան են ծառայում սոցիալիստական երկրների փոխըմբռնման և համագործակցության ընդլայնման համար:

Բացառիկ ինտենսիվությամբ են աչքի ընկնում եղբայրական կուսակցությունների և պետությունների երկկողմ հարաբերությունները, նրանց ղեկավար գործիչների կոնտակտները: Շուտով տեղի կունենա սոցիալիստական համագործակցության հետագա ամրապնդման այնպիսի խոշոր իրադարձություն, ինչպիսին է ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի այցը Կուբա:

Սովետական Միության և եղբայրական սոցիալիստական պետությունների համակողմանի կապերի բազմապատկումը ներառնում է հազարավոր ու հազարավոր սովետական մարդկանց՝ կուսակցական ու սովետական աշխատողների, արդյունաբերության և գյուղատնտեսության աշխատավորների, գիտության և արվեստի գործիչների, դասախոսների և ուսանողների: Պատվիրակությունների փոխանակումը, տարբեր տեսակի կոնտակտները, փոխադարձ ուղևորությունները, վերջապես, տուրիզմը, ինչպես դուք, ըստ երևույթին, զգում եք նաև ձեր հանրապետության օրինակով, ավելի ու ավելի մասսայական բնույթ են ստանում: Որքան ամուր, որքան ճյուղավորված լինեն այդպիսի կապերը, այնքան ավելի կշահի սոցիալիզմի երկրների բարեկամության և համագործակցության ամրապնդման կենդանի գործը:

Նկատելի տեղաշարժեր են կատարվել Եվրոպայում լարվածության թուլացման և խաղաղ համագործակցության հաստատման ասպարեզում: Ընդլայնվում են մեր համակողմանի և փոխշահավետ կապերը փաստորեն բոլոր արևմտաեվրոպական պետությունների հետ: Արդեն մի շարք տարիներ բեղմնավոր կերպով զարգանում է համագործակցությունը Ֆրանսիայի հետ, արմատական շրջադարձ է կատարվել ԳՖՀ-ի հետ ունեցած հարաբերություններում. այն ձևով է բերվել ամենից առաջ 1970 թվականին ԳՖՀ-ի հետ կնքված մեր պայմանագրի հիման վրա: Այդ ամենին վճռական չափով նպաստեցին ընկեր Լ. Ի. Բրեժնևի բազմակի հանդիպումներն ու բանակցությունները Պոմպիդուի և Բրանդտի հետ:

Եվրոպայում սոցիալիզմի դիրքերը ոչ միայն ավելի ու ավելի հուսալիորեն են ապահովվում ռազմական և քաղաքական տեսակետներից, այլև վավերագրված են իրավաբանորեն, միջազգային-իրավական կարգով, պայմանագրերի և համաձայնագրերի մի ամբողջ սիստեմով: Դրանց շարքում վերջինը ՉՍՍՀ-ի և ԳՖՀ-ի միջև վերջերս Պրագայում ստորագրված պայմանագիրն է: Պայմանագրի կնքումը հնարավոր դարձրեց դիվանագիտական հարաբերությունների հաստատումը՝ այժմ արդեն սոցիալիստական համագործակցության եվրոպական բոլոր երկրների և ԳՖՀ-ի միջև՝ այդ պետության կողմից Եվրոպայում գոյություն ունեցող սահմանների անվերապահ ճանաչմամբ:

Այսպիսով, եվրոպական մայր ցամաքում փաստորեն ավարտվեց հետպա-
տերազմյան առավել սուր պրոբլեմների կարգավորման պայքարի տևական
փուլը, պայքար, որ մղում էին Սովետական Միությունը և մեր դաշնակիցները:
Բայց ՍՄԿԿ Կենտկոմը, քաղբյուրոն չեն թուլացնում ջանքերը Եվրոպայի իրա-
դրության հետագա նորմալացման, այնտեղ սոցիալիստական և կապիտալիս-
տական պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքների հիման վրա
փոխհարաբերությունների կայուն սիստեմ ստեղծելու գործում:
Դա այն գլխավոր խնդիրն է, որը կանգնած է Եվրոպայի անվտանգության
և համագործակցության խորհրդակցության առջև: Այն արդեն թևակոխել է իր
երկրորդ էտապը՝ հանրագումարային փաստաթղթերի նախապատրաստման
փուլը:
Այսպիսով, գործը առաջ է շարժվում, թեկուզև ոչ այնքան արագ: Այստեղ
ինհարկե, կան որոշակի օբյեկտիվ պատճառներ. չէ՛ որ խոսքը վերաբերում է
ավելի քան 30 պետությունների տեսակետների համաձայնեցմանը: Բայց գըլ-
խավոր դժվարությունները արհեստականորեն հարուցում են արևմտյան եր-
կրների որոշ շրջաններ: Նրանք կուզենային մասնավորապես համաեվրոպա-
կան խորհրդակցությունն օգտագործել սոցիալիստական երկրների ներքին
գործերին միջամտելու փորձերի համար: Մենք, անշուշտ, այդ բանը թույլ
չենք տա և մեր բարեկամների հետ միասին հաստատ պաշտպանում ենք ընդ-
հանուր շահերը բոլոր սկզբունքային հարցերում:
Կենտրոնական կոմիտեն ելնում է այն բանից, որ, չնայած առկա բար-
դություններին, համաեվրոպական խորհրդակցությունը, այդ մեծ ու աննախա-
դեպ ձեռնարկումը, հնարավոր կլինի հաջողությամբ ավարտել:
ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը լուրջ նշանակություն
են տալիս Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների փոխ-
հարաբերությունների հետագա զարգացմանը: Այն, թե ինչպես են դասավոր-
վում այդ հարաբերությունները, անշուշտ, ինքնին կարևոր է: Բայց դրանց
վիճակով է մեծապես պայմանավորված նաև միջազգային այս կամ այն
պրոբլեմի լուծման բնույթը, աշխարհում տիրող ընդհանուր քաղաքական կլի-
մայի ջերմաստիճանը:
Այս տեսակետից առավել խոշոր իրադարձություն էր միջուկային պատե-
րազմը կանխելու վերաբերյալ ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև համաձայնագրի կնքու-
մը: Այն ստորագրվեց անցյալ տարվա ամռանը, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր
քարտուղար Լ. Ի. Բրեժնևի՝ Միացյալ Նահանգներ կատարած այցի ժամանակ:
Միջուկային երկու խոշորագույն տերությունները ըստ էության պարտավորվե-
ցին միմյանց և համապատասխան դաշնակիցների դեմ չգործադրել միջուկա-
յին զենք, իրենցից կախված ամեն բան անել միջուկային պատերազմը կան-
խելու համար: Հասկանալի է, թե դա որքան է թուլացնում երկու համաշխար-
հային հասարակական սիստեմների գլոբալ ընդհարման սպառնալիքը, ընդ-
հարում, որը ծանրագույն հետևանքներ կունենար բոլոր երկրների և ժողո-
վուրդների համար:
Այդ նպատակին են ծառայում նաև ստրատեգիական զենքի փոխադարձ
սահմանափակումների վերաբերյալ սովետա-ամերիկյան հայտնի համաձայ-
նագրերը: Ինչպես գիտեք, ԱՄՆ-ի հետ շարունակվում են բանակցությունները
ստրատեգիական սպառազինությունների մրցավազքը կասեցնելու նոր, հնա-
րավոր քայլերի շուրջ: Այս հարցերը, ինարկե, չափազանց բարդ են, քանի որ
շոշափում են մեր երկրի և ԱՄՆ-ի անվտանգության հիմնական էությունը:



Սակայն այստեղ էլ կան փոխադարձաբար ընդունելի որոշումներ գտնելու հնա-
րավորություններ՝ պայմանով միայն, որ դրանք լինեն իրոք փոխադարձաբար
ընդունելի: Պարզ է, որ խոսք անգամ չի կարող լինել ԱՄՆ-ի համար ինչ-որ
միակողմանի առավելությունների մասին, որոնք թուլացնեին Սովետական
Միության, մեր դաշնակիցների անվտանգությունը:
ԱՄՆ-ի հետ համագործակցության հաստատումը հարթ չի ընթանում: Օվ-
կիանոսի այն կողմում դեռ հանդիպում են երկու խոշոր տերությունների հա-
րաբերությունների բարելավման հակառակորդներ: Բայց կարևոր է, որ
ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների նորմալացման, այն էլ արմատական
նորմալացման բուն պրոցեսը ուժեղանում է: Համաձայնություն է կայացվել
ԱՄՆ-ի պրեզիդենտի՝ Սովետական Միություն կատարելիք նոր այցի մասին և,
կարելի է հուսալ, որ սովետա-ամերիկյան հերթական բարձր մակարդակի
հանդիպումը ևս ռեալ պտուղներ կտա:
Այժմ Մերձավոր Արևելքի դրության մասին: Քաջ հայտնի են վերջին տա-
րիներս այդ շրջանում տեղի ունեցած իրադարձությունները, որոնք վերջերս
հանգեցրին պատերազմական կառաղի բռնկման: Հայտնի է նաև այդ իրա-
դարձությունների աստառը— Իսրայելի ագրեսիվ, վրդովեցուցիչ քաղաքակա-
նությունը, մերձավորարևելյան կոնֆլիկտի քաղաքական կարգավորման վիժե-
ցումը նրա կողմից:
Այժմ կատարվել է առաջին, բայց կարևոր տեղաշարժը: Կարգավորման
գործը շարժվեց մեռյալ կետից: Ժնևում իր աշխատանքն է սկսել Մերձավոր
Արևելքի վերաբերյալ հաշտության կոնֆերանսը:
Դա շատ գործոնների արգասիք է: Դրանցից է Եգիպտոսի և Սիրիայի
զինված ուժերի մարտունակության աճը, հետևաբար՝ զավթված արաբական
տերիտորիաները ուժով պահելու Իսրայելի պլանների ձախողումը: Դրանցից
է ամբողջ արաբական աշխարհի ամրապնդվող համերաշխությունը: Դրանցից
է նաև Մերձավոր Արևելքի վտանգավոր իրավիճակին վերջ տալու՝ պետու-
թյունների ճնշող մեծամասնության բացահայտ ձգտումը և, որպես դրա հե-
տևանք՝ Իսրայելի միջազգային լուրջ մեկուսացումը:
Բայց, այս ամենով հանդերձ, դժվար է գերագնահատել այն բացառիկ ակ-
տիվ և բարերար դերը, որ խաղացել և խաղում է մեր երկիրը: Առանց այն
հսկայական աշխատանքի, որ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն կատարեց մինչև
հոկտեմբերյան իրադարձությունները և դրանց ընթացքում, հազիվ թե հաջող-
վեր ստիպել լռեցնելու թնդանոթները, շահագրգռված կողմերին հավաքել
հաշտության կոնֆերանսի սեղանի շուրջը, դնել աշխարհում լարվածության
վտանգավոր օջախներից մեկի գործնական վերացման սկիզբը:
Ժնևի կոնֆերանսի հրավիրման և կոնֆերանսն սկսվելու ժամանակ շահա-
գրգռված կողմերի միջև կարծիքների փոխանակության շնորհիվ պայմանա-
վորվածություն ձեռք բերվեց իսրայելական զորքերը ետ քաշել Իսրայելի օկու-
պացրած եգիպտական տերիտորիայի մի մասից: Այդ բանը, ինչպես հայտնի է,
Իսրայելին պարտավորեցնում են Անվտանգության խորհրդի համապատաս-
խան որոշումները, որոնց ընդունման անհրաժեշտությունը պնդում էր Սովե-
տական Միությունը: Այդ պայմանավորվածությունը ինքնըստինքյան դրական
նշանակություն ունի, եթե, ինարկե, դրան հաջորդի արմատական կարգավո-
րումը Մերձավոր Արևելքում: Իսկ այդպիսի կարգավորումը, այդ շրջանում
պատերազմական նոր ընդհարման սպառնալիքի վերացմամբ հանդերձ, հնա-

րավոր է միայն բոլոր օկուպացված արաբական տերիտորիաները իսրայելական զորքերից լիովին ազատելու և Պաղեստինի արաբ ժողովրդի օրինական իրավունքները լիովին պաշտպանելու հիման վրա:

Սովետական Միությունը, առաջվա նման, այս հարցում վարելու է սկզբունքային քաղաքականություն, որի նպատակն է պաշտպանել արաբական պետությունների անկապտելի օրինական իրավունքներն ու շահերը:

Անցած տարին նշանավորվեց Ասիայի մայրցամաքում մեր արտաքին քաղաքականության լուրջ նվաճումներով:

Ես, առաջին հերթին, նկատի ունեմ Սովետական Միության ու Հնդկաստանի հարաբերությունների որակապես այն նոր մակարդակը, որ ձեռք բերվեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի վերջերս այդ երկիր կատարած այցի շնորհիվ: Բարեկամական սերտ կապերը, որոնք վաղուց գոյություն ունեն ՍՍՀՄ-ի և Հնդկաստանի միջև, դառնում են առավել կայուն և երկարատև:

Դելիում Հնդկաստանի պրեմիեր-մինիստր Ինդիրա Գանդիի հետ ունեցած բանակցությունների ժամանակ կարծիքների լայն փոխանակությունն ամրապնդեց մեր երկրների դիրքորոշումների ընդհանրությունն ու զուգադիպումը միջազգային մի շարք կարևոր պրոբլեմների շուրջ: Հավաստվեց, որ թե՛ ՍՍՀՄ-ը և թե Հնդկաստանը խորապես շահագրգռված են Ասիայում խաղաղության ու կայունության ամրապնդմամբ, համաձայն են այն սկզբունքներին, որոնք կարող են հիմք ծառայել այդ ազնիվ նպատակին հասնելու համար:

Սովետա-հնդկական դեկլարացիան, որն արտացոլում է այցի գլխավոր քաղաքական արդյունքները, ավելի է զարգացնում 1971 թվականին ՍՍՀՄ-ի և Հնդկաստանի միջև կնքված խաղաղության, բարեկամության ու համագործակցության պայմանագրի կարևորագույն դրույթները: Այդ դրույթները համապատասխանում են երկու երկրների ժողովուրդների արմատական շահերին:

Շարունակում են բարելավվել մեր հարաբերությունները Ճապոնիայի հետ: Հայտնի է, որ իր տնտեսական պոտենցիալով նա այժմ աշխարհի երրորդ երկիրն է: Ճապոնիայի պրեմիեր-մինիստր Տանակայի հետ, անցյալ տարի, Մոսկվայում տեղի ունեցած բանակցությունները ցույց տվին, որ Ճապոնիան լրջորեն շահագրգռված է Սովետական Միության հետ համագործակցությամբ: Դա ամենից առաջ վերաբերում է Սիբիրում և Հեռավոր Արևելքում տնտեսական խոշոր նախագծերի իրականացմանը: Մենք կողմնակից ենք Ճապոնիայի հետ ամուր բարիդրացիությանը, բայց, իհարկե, շատ բան կախված կլինի ճապոնական կողմից:

Հարկավոր է առհասարակ ասել, որ մեր ասիական հարևանների մեծ մասի հետ մենք ունենք ոչ վատ, իսկ մի քանիսի հետ՝ նույնիսկ լավ փոխհարաբերություններ:

Իհարկե, Պեկինի ղեկավարության մեղքով առանձնահատուկ հարաբերություններ են ստեղծվել Չինաստանի Ժողովրդական Հանրապետության հետ: Այս առթիվ մեր կուսակցության քաղաքականությունը բազմիցս շարադրվել է սպառիչ պարզությամբ: Այդ քաղաքականությունը խարսխվում է XXIV համագումարի, դրան հաջորդած Կենտկոմի պլենումների որոշումների վրա:

Մենք հանդես ենք եկել և հանդես ենք գալիս այդ պետության հետ նորմալ, լավ հարաբերությունների օգտին: Բայց դրա իրականացման համար պահանջվում է կողմերի երկուստեք ցանկություն: Չինաստանի ղեկավարությունը պատրաստակամություն հանդես չի բերում՝ նորմալացնելու սովետաչինական հարաբերությունները: Ավելին, նա առաջվա նման Սովետական Միության նկատմամբ թշնամական քաղաքականություն է վարում փաստորեն բոլոր ուղղություններով:



Այսպիսով, Չինաստանի վերաբերյալ կուսակցության սահմանած գիծը լիովին մնում է ուժի մեջ: Այն ընդունում և պաշտպանում են ո՛չ միայն սովետական ժողովուրդը, մեր բարեկամները, այլև բոլոր, իրոք, խաղաղասեր ուժերը: (Ծափահարություններ):

Տակավին սովետական իշխանության արշալույսին Վլադիմիր Իլյիչ Լենինը Սովետական Միության արտաքին քաղաքականության առջև դրեց զինաթափման համար պայքարելու խնդիրը: Հետագա բոլոր տարիներին կուսակցությունը հավատարիմ է մնացել այդ պատվիրանին: Այն հարցերի առաջադրման նախաձեռնությունը, որոնց լուծումը սահմանափակում է սպառազինությունների մրցավազքը այս կամ այն կոնկրետ ուղղությամբ, ամուր կերպով իրենց ձեռքն են պահում Սովետական Միությունը, սոցիալիստական պետությունները:

Զինաթափման բնագավառի ամեն մի նոր բնագիծ նվաճվում է իմպերիալիզմի առավել ռեակցիոն, ագրեսիվ շրջանների դեմ մղվող համառ պայքարով:

Կուսակցությունը Լենինի ժամանակներից ելել է սովետական սոցիալիստական պետության պաշտպանությունը մշտապես ամրապնդելու, ամեն տեսակ անակնկալների դեմ-հանդիման մարտական պատրաստության վիճակում լինելու անհրաժեշտությունից: Այդպիսի մոտեցումը լիովին արդարացնում է իրեն: Այժմ ևս մեր կուսակցության Կենտկոմը, քաղբյուրոն անհրաժեշտ ուշադրություն են նվիրում Սովետական Միության պաշտպանունակության հետագա բարձրացման հարցերին: (Ծափահարություններ):

Խաղաղ գոյակցության և լարվածության թուլացման մեր գիծը, բանակցությունների միջոցով միջազգային պրոբլեմների կոնստրուկտիվ լուծումը մշտապես զուգորդվում են ագրեսիային ուժգին հակահարված հասցնելու հետ, ազատության, անկախության համար պայքարող ժողովուրդներին վճռականորեն զորավիգ կանգնելու հետ: Դրանում արտահայտվում է սովետական արտաքին քաղաքականության իրոք ինտերնացիոնալ, դասակարգային, ընդգծում եմ, դասակարգային բնույթը:

Եթե ամերիկյան իմպերիալիզմը չկարողացավ ընկճել վիետնամական ժողովրդի հերոսական դիմադրությունը, ապա դրա պատճառն այն է, որ մարտնչող Վիետնամի կողմում կանգնած էին Սովետական Միությունը, եղբայրական մյուս երկրները: Եթե Մերձավոր Արևելքում իմպերիալիստական ուժերը չեն կարողանում կասեցնել ազգային-ազատագրական պայքարի ալիքը, ապա դրա պատճառն այն է, որ արաբական ժողովուրդները միայնակ չեն և վայելում են մեր օժանդակությունը: Այս բանը հավասարապես վերաբերում է այն բոլոր ժողովուրդներին, որոնք պայքարում են իմպերիալիստական ագրեսիայի դեմ:

Այն, որ ՍՄԿԿ-ի արտաքին քաղաքական կուրսը արտահայտում է երկրագնդի մարդկանց գերակշիռ մեծամասնության իղձերը, վառ կերպով ցուցադրեց խաղաղասեր ուժերի համաշխարհային կոնգրեսը: Այն իրավամբ անվանվեց աշխարհի ժողովուրդների առաջին գլխավոր ասամբլեա: Կոնգրեսի մասնակիցները բարձր գնահատեցին Սովետական Միության դերը ընդհանուր անվտանգության և միջազգային համագործակցության համար մղվող պայքարում: Մոսկվայի կոնգրեսը, ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ելույթը այնտեղ, հզոր ազդակ հանդիսացան խաղաղության համար, ագրեսիայի ու գաղութատիրության





ուժերի դեմ ուղղված շարժման բոլոր հոսանքների հետագա ակտիվացման ու միավորման գործում:

Ընկերնե՛ր, լիակատար հիմքեր ունենք ասելու, որ Սովետական Միության արտաքին քաղաքականության հաջողությունները ներդաշնակում են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ասպարեզում սովետական ժողովրդի ստեղծարար աշխատանքի նվաճումներին: (Ծափահարություններ):

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումն ամբողջովին ու լիովին հավանություն տվեց քաղբյուրոյի գործունեությանը՝ ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության XXIV համագումարի որոշումների իրականացման ասպարեզում, պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևի ելույթում շարադրված դրույթներին ու հետևություններին: Այդ ելույթը կուսակցությանը զինում է ո՛չ միայն կոմունիստական շինարարության հետագա ծավալման գործում: Նրանում նաև նշված են մեր հետագա ամբողջ արտաքին քաղաքական աշխատանքի հիմնական խնդիրները:

Թե՛ կոմունիզմի համար մղվող պայքարում և թե միջազգային ասպարեզում մեր բոլոր հաղթանակների կազմակերպիչն ու ոգեշնչողը եղել և մնում է Սովետական Միության մեծ կոմունիստական կուսակցությունը: Զինված առաջավոր մարքս-լենինյան ուսմունքով, է՛լ ավելի ամրապնդելով կապերը մասսաների հետ, մոբիլիզացնելով նրանց ստեղծագործական ակտիվությունը, կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն սովետական ժողովրդին վստահորեն առաջնորդում են դեպի նոր մեծագործություններ: (Ծափահարություններ):

Սովետական մարդկանց սրտերում խոր արձագանք առաջացրեց նոր տարվա՝ 1974 թվականի առթիվ կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմումը: Մեր կուսակցության լենինյան շտաբի կոչը՝ հնգամյակի չորրորդ տարին նշանավորել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարման նոր հաջողություններով, ամբողջ սովետական ժողովրդի մեջ ձգտում առաջացրեց է՛լ ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը՝ պլանային առաջադրանքները և պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու համար:

Հայաստանի կոմունիստները ՍՄԿԿ փորձված մարտական ջոկատներից մեկն են: Նրանք միշտ գտնվել են սոցիալիստական շինարարության առաջավոր բնագծերում, հետևողականորեն կենսագործել և կենսագործում են ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի լենինյան կուրսը, վայելում են հանրապետության աշխատավորների անսահման վստահությունը: (Ծափահարություններ):

Այժմ Հայաստանի կոմունիստներից կպահանջվի գործին նվիրել իրենց ողջ հմտությունը, կրքոտությունն ու նվիրվածությունը՝ գլխավորելու այն պայքարը, որ մղվում է ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրների կենսագործման համար, նոր մեծագործությունների համար՝ ի փառս մեր հայրենիքի:

Ընկեր Ա. Ա. Գրոմիկոն հրապարակում է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագիրը Հայկական ՍՍՀ-ն ժողովուրդների բարեկամության շքանշանով պարգևատրելու մասին:

Դահլիճում բռնկում է փոթորկալի օվացիան, բոլորը ոտքի են կանգնում: Թնդում են բացականչությունները՝ «Փա՜ռք ՍՄԿԿ-ին», «Լենինյան Կենտկոմին փա՜ռք», «Ուռա՜»:



Ընկեր Ա. Ա. Գրոմիկոն Հայկական ՍՍՀ-ի դրոշին է ամրացնում ժողովուրդների բարեկամության շքանշանը: Օվացիան սաստկանում է մի նոր ուժով. Դահլիճը վանկարկում է՝ «Բարեկամություն», «Կեցցե՜ սովետական ժողովուրդների եղբայրությունը»:

*Թանկագին ընկերնե՛ր:*

*Թույլ տվեք վստահություն հայտնել, որ Սովետական Հայաստանի աշխատավորները բարձր կպահեն իրենց քառակի շքանշանակիր հանրապետության դրոշը:*

*Փա՜ռք ու պատիվ աշխատասեր հայ ժողովրդին:* (Երկարատև ծափահարություններ):

*Կեցցե՜ փառապանծ Սովետական Հայաստանը:* (Երկարատև ծափահարություններ):

*Թող ամրապնդվի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների անխախտ Միությունը:* (Երկարատև ծափահարություններ):

*Փա՜ռք մեր մեծ Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը:* (Բուռն, երկարատև ծափահարություններ):

# ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Ա. Ե. ՔՈՉԻՆՅԱՆԻ ՃԱՌԸ

Թանկագին Անդրեյ Անդրեևի՛չ։
Թանկագին ընկերնե՛ր։
Այսօր մեզ մոտ մեծ ուրախություն է։ Սովետական Հայաստանին հանձ-
նըվեց բարձր պարգևը՝ ժողովուրդների բարեկամության շքանշանը։
Թույլ տվեք Հայաստանի կոմկուսի Կենտրոնական կոմիտեի, Հայկական
ՍՍՀ Գերագույն սովետի, Մինիստրների սովետի անունից, հանրապետության
կոմունիստների և բոլոր աշխատավորների անունից Սովետական Միության
կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեին, ՍՍՀՄ Գերագույն
սովետի նախագահությանը և սովետական կառավարությանը, անձամբ ՍՄԿԿ
Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին ամենասրտա-
գին շնորհակալությունը հայտնել սովետական ժողովուրդների լենինյան բարե-
կամության ամրապնդման, մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական,
սոցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման գործում մեր հանրապե-
տության բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և մտավորա-
կանության ծառայությունների բարձր գնահատման համար։ (Երկարատև ծա-
փահարություններ)։
Սովետական Հայաստանի դրոշի վրա Լենինի երկու շքանշանների և Հոկ-
տեմբերյան հեղափոխության շքանշանի կողքին այսուհետև կշողա նաև ժո-
ղովուրդների բարեկամության շքանշանը՝ մեր երկրի սոցիալիստական ազգերի
և ազգությունների եղբայրական միասնության կենդանի մարմնացման խոր-
հըրդանիշը։ (Ծափահարություններ)։
Այս բերկրալի ժամին, ընդունելով հայրենիքի բարձր պարգևը, մենք
երախտագիտության մեր առաջին խոսքն ուղղում ենք կոմունիստական մեծ
կուսակցությանը, նրա հիմնադիր և առաջնորդ, մեր ուսուցիչ Վլադիմիր Իլյիչ
Լենինին։ (Երկարատև ծափահարություններ)։
Մեր կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականությունն
էր, որ դարձավ այն մեծ ստեղծարար ուժը, որն արմատական հեղաշրջում կա-
տարեց մեր երկրի՝ նախկինում ճնշված բոլոր ժողովուրդների պատմական
ճակատագրում, դարձավ նոր տիպի պետության՝ Սովետական Սոցիալիստա-
կան Հանրապետությունների Միության ստեղծման ու զարգացման հիմքը։
Կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականությունն
էր, որ իբրև ազատության ու երջանկության կենարար արև, բացահայտեց ու
վերածնեց հայ ժողովրդի ստեղծարար ուժերը, որոնց շնորհիվ պատմական
կարճ ժամանակում նա հասավ արդի քաղաքակրթության և առաջադիմության
բարձունքներին։
Ամբողջ երկրի հետ մեկտեղ, եղբայրական ժողովուրդների ընտանիքում,



Սովետական Հայաստանը վերածվեց ինդուստրիալ հանրապետության՝ խոշոր
մեքենայացված գյուղատնտեսությամբ, բարձր կուլտուրայով և առաջավոր
գիտությամբ։
Խոսելով հանրապետության էկոնոմիկայի զարգացման մեծ հաջողություն-
ների մասին, բավական է ասել, որ 1973 թվականին արդյունաբերական ար-
տադրության ծավալը, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել է 220
անգամ։
Հանրապետությունը երկրում առաջատար տեղ է գրավում մոլիբդենային
կոնցենտրատների, բազմատեսակ էլեկտրատեխնիկական արտադրանքի, մե-
տաղահատ հաստոցների, սարքերի և այլ առարկաների արտադրությամբ։
Կոլտնտեսային և սովխոզային դաշտերում բանում են հազարավոր տրակ-
տորներ, կոմբայններ, ավտոմոբիլներ և գյուղատնտեսական այլ մեքենաներ։
Ոռոգելի հողատարածությունը սովետական իշխանության տարիներին ավելա-
ցել է հինգ անգամ։
Հանրահայտ են հանրապետության հաջողությունները գիտության ու
կուլտուրայի զարգացման ասպարեզում։
Աճել են նոր, ժամանակակից քաղաքներ ու բանվորական ավաններ, ար-
մատապես կերպարանափոխվել է մեր գյուղը։
Սովետական Հայաստանի տնտեսական ու կուլտուրական ծաղկումը բան-
վորների և գյուղացիների, ժողովրդական մտավորականության՝ հեղափոխու-
թյամբ ազատագրված աշխատանքի արգասիքն է, սովետական բոլոր ժողո-
վուրդների և, ամենից առաջ, ռուս մեծ ժողովրդի միացյալ ջանքերի, եղբայ-
րական համագործակցության և անշահախնդիր օգնության արգասիքը։ (Ծա-
փահարություններ)։
Մենք երբեք չենք մոռանա այն հերոսական տարիները, երբ ռուս մեծ
ժողովրդի, եղբայրական մյուս ժողովուրդների անշահախնդիր օգնությամբ և
աջակցությամբ ստեղծվում էր Սովետական Հայաստանի տնտեսական պոտեն-
ցիալը, դրվում էին նրա գիտության ու կուլտուրայի բուռն զարգացման հիմ-
քերը։
Մեր հանրապետության աշխատավորները խորապես գիտակցում են, որ
այն ամենով, ինչով հարուստ ու հռչակված է այսօր Սովետական Հայաստա-
նը, մենք առաջին հերթին պարտական ենք սովետական ժողովուրդների բա-
րեկամությանը՝ սոցիալիզմի մեծագույն և ամենաթանկ նվաճումներից մեկին։
Մեր երկրի բոլոր ժողովուրդները ռուս ժողովրդին իրավամբ անվանում
են իրենց ավագ եղբայրը, հավասարների մեջ առաջինը։ Հայ ժողովուրդը իր
կոմունիստական վաղվա համար մղած պայքարում միշտ կլինի ռուս մեծ ժո-
ղովրդի հետ, Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ։
Եվ այսօր, այս բարձր ամբիոնից մենք կրկին մեր խորին շնորհակալու-
թյունն ու երախտագիտությունն ենք հայտնում եղբայր ժողովուրդներին՝ նը-
րանց աջակցության և օգնության, սրտագին բարեկամության և իսկական
եղբայրության համար։
Հայ ժողովուրդն այսուհետև ևս բարձր կպահի ժողովուրդների բարեկա-
մության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան դրոշը, աչքի լույսի
պես կպահպանի, կզարգացնի և կամրապնդի սովետական ժողովուրդների
բարեկամությունն ու եղբայրությունը՝ ոգեշնչման և ստեղծարար աշխատանքի
անսպառ աղբյուրը, մեր մեծ սոցիալիստական հայրենիքի նոր հաղթանակների
երաշխիքը։ (Ծափահարություններ)։

Թանկագին Անդրեյ Անդրեևի՛չ։

Ընկերնե՛ր։

Մեզ բոլորիս խորապես հուզեցին ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի հաղորդած բարեմաղթությունները։ (Երկարատև ծափահարություններ)։

Մեր հանրապետության աշխատավորները երբեք չեն մոռանա այն հուզիչ օրերը, երբ Սովետական Հայաստանի 50-ամյակի համաժողովրդական տոնի կապակցությամբ մեր հինավուրց հայկական հողում էր գտնվում թանկագին Լեոնիդ Իլյիչը։

Մենք երբեք չենք մոռանա ընկեր Բրեժնևի այն բարի ու ջերմ խոսքերը, որոնցով նա բարձր գնահատեց հայ ժողովրդի, մեր հանրապետության բոլոր աշխատավորների՝ սովետական կենարար հայրենասիրությունն ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի բոցաշունչ զգացումները, նրանց աշխատասիրությունն ու ստեղծարար ուժը։

Մեր հանրապետության բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունն ու մտավորականությունը քաջ գիտեն, թե ինչպիսի՛ լենինյան սկզբունքայնությամբ, հետևողականությամբ և անսպառ եռանդով է ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը պայքարում կոմունիստական շինարարության վիթխարի պլանների կենսագործման համար, թե ինչպիսի հաստատակամությամբ և իմաստուն հեռատեսությամբ է նա պաշտպանում մեր սովետական հայրենիքի պետական շահերը համաշխարհային ասպարեզում, հասնում խաղաղության և միջազգային անվտանգության ամրապնդման ազնիվ նպատակների իրականացման։

Թույլ տվեք հայ ժողովրդի, մեր հանրապետության բոլոր աշխատավորների անունից թանկագին Լեոնիդ Իլյիչին մաղթել նոր, մեծ հաջողություններ իր բազմաբովանդակ և եռուն գործունեության մեջ՝ ի փառս մեր լենինյան կուսակցության, ի բարօրություն մեր սոցիալիստական հայրենիքի, հանուն աշխարհի կայուն խաղաղության։ (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։

Մեր երկրի ժողովուրդների բարեկամությունը դարձել է սովետական մարդկանց, սովետական ապրելակերպի միս ու արյունը։ Հենվելով նպատակների և շահերի ընդհանրության վրա, այն հանդիսանում է սոցիալիստական ազգերից յուրաքանչյուրի և մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ողջ ժողովրդի երջանկության ու բարգավաճման կենսահաստատ ուժը։

Ուստի և մեր սոցիալիստական հայրենիքի համաշխարհային պատմական հաղթանակները սովետական յուրաքանչյուր մարդու հոգում մեծ հպարտության զգացում են առաջացնում մեր ժողովրդի, մեր կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի համար։

Սովետական մարդը, ինչ ազգության էլ պատկանելիս լինի, իրավամբ հպարտանում է իր մեծ հայրենիքով, որը նոր դարագլուխ է բացել մարդկության պատմության մեջ, հիանում է իր միլիոնավոր համաքաղաքացիների, եղբայրական, սովետական բոլոր ժողովուրդների ոգեշունչ աշխատանքով, ովքեր շաղկապված են լենինյան անխախտ բարեկամությամբ, ովքեր Լենինի մեծ կուսակցության իմաստուն ղեկավարությամբ ընթանում են դեպի կոմունիզմի համար մղվող պայքարի գալիք հաղթանակներ։

Այս հուզիչ հանդիսության մասնակիցները, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորները խորապես գիտակցում են, որ հանրապետության



պարգևատրումը նոր շքանշանով՝ ժողովուրդների բարեկամության շքանշանով, ո՛չ միայն մեծ պատիվ է, այլև մեծ պարտականություն։

Այդ պարգևը մեծ խթան կլինի հնգամյակի չորրորդ տարվա լարված պլանների և պարտավորությունների կատարման համար, ՍՄԿԿ XXIV համագումարի հոյակապ կանխագծումների կենսագործման պայքարում։

Հանրապետության աշխատավորները լավ, հարվածային աշխատանք կատարեցին անցյալ տարի։ Լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցությունը, արտադրության առաջավորները, կոմունիստները, կոմերիտականները, քաղաքների և գյուղերի աշխատավորները հաջողությամբ կատարեցին հնգամյակի վճռական տարվա պլանները և ստանձնած բարձր պարտավորությունները։ Նոր, մեծ քայլ արվեց ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի բոլոր ճյուղերի զարգացման, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման գործում։

Բայց մեր առջև ավելի պատասխանատու խնդիրներ են կանգնած իններորդ հնգամյակի եզրափակիչ փուլում։

Մեր աշխատանքի կոնկրետ ծրագիրը սպառիչ հստակությամբ ու պարզությամբ ձևակերպվեց կուսակցության Կենտկոմի դեկտեմբերյան պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի արտասանած փայլուն ու բովանդակալից ճառում։ Նրանում համակողմանի բնութագրվեցին հնգամյակի երեք տարում մեր կուսակցության և սովետական ժողովրդի ստեղծարար գործունեության արդյունքները, առաջ քաշվեցին սկզբունքային դրույթներ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, աշխատավորների կուլտուրայի և բարեկեցության բարձրացման ուղիների ու մեթոդների մասին։

Սովետական մարդկանց աշխատանքային նոր հաղթանակների է կոչում կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմումը, որը հանրապետությունում ամենուրեք ընդունվեց որպես մոբիլիզացնող վիթխարի ուժի փաստաթուղթ։

Աշխատանքային կոլեկտիվներում լայն արձագանք և ջերմ հավանություն գտան ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումները՝ «1974 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» և «1974 թվականին հողագործական և անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների ավելացման համար գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցմրցման մասին»։

Հնգամյակի չորրորդ տարին աշխատանքային նոր հաջողություններով նշանավորելու՝ կուսակցության կոչին Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը պատասխանում են սոցիալիստական բարձր պարտավորություններով և հանդիպական պլաններով։

Լենինի պատգամներով մեզ մոտ, սովետական երկրում, հրաշալի ավանդույթ է դարձել մեծ տոների օրերին, խորապես իմաստավորելով անցած ուղու արդյունքները, գլխավոր ուշադրությունը կենտրոնացնել դեռ չլուծված պրոբլեմների վրա, կոմունիստների, բոլոր աշխատավորների ջանքերն ու եռանդն ուղղել թերությունների վերացման, տնտեսական և կուլտուրական շինարարության հերթական խնդիրների կենսագործման նպատակին։

Հայտնի է, որ այդ թերությունները, որոնց մասին խոսվեց դեկտեմբերյան
պլենումում, տեղ են գտել նաև մեր հանրապետությունում։

Շատ մինիստրությունների, վարչությունների, արտադրական միավորում-
ների ու ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների և սովխոզ-
ների ղեկավարներ դեռևս վատ են օգտագործում եղած ռեզերվներն ու հնա-
րավորությունները, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումները աշ-
խատանքի արտադրողականությունը անշեղորեն բարձրացնելու, թողարկվող
արտադրանքի որակը բարելավելու, արտադրության կազմակերպման մակար-
դակը բարձրացնելու համար։

Մեզ մոտ դեռևս շատ են այն ձեռնարկություններն ու կառույցները, կոլ-
տնտեսությունները և սովխոզները, որոնք սիստեմատիկաբար չեն կատարում
սահմանված պլաններն ու ստանձնած սոցիալիստական պարտավորություննե-
րը։ Այդ ամենը, բնականաբար, արգելակում է հանրապետության ժողովրդա-
կան տնտեսության զարգացման տեմպերը։

Մենք շատ բան պետք է անենք առևտրի, կենցաղի սպասարկման, առող-
ջապահական հիմնարկությունների ու ձեռնարկությունների աշխատանքը լըր-
ջորեն բարելավելու համար։

Կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի և նրա քաղ-
բյուրոյի պահանջներին համապատասխան, մենք մեր ջանքերն ուղղում ենք
առաջին հերթին կուսակցական կազմակերպությունների դերի բարձրացմանը,
նրանց քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի բարելավմանը, ղե-
կավար կադրերի նկատմամբ պահանջկոտության ուժեղացմանը և հանձնա-
րարված գործերի համար նրանց պատասխանատվության բարձրացմանը,
հաստատապես ու հետևողականորեն ամրապնդում կուսակցական և պետական
կարգապահությունը կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների
բոլոր օղակներում։

Այսօր հանրապետության կոմունիստական կուսակցության, բոլոր կոմու-
նիստների, աշխատանքային կոլեկտիվների համար չկա ավելի կարևոր և
առաջնահերթ խնդիր, քան հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա պլանային
առաջադրանքների կատարման և գերակատարման անպայման ապահովումը։
Հայաստանի կոմունիստական կուսակցությունն իր պարտքն ու պարտա-
կանությունն է համարում համաժողովրդական սոցիալիստական մրցության
շարժումը հմտորեն ուղղել ամենից առաջ հանրային արտադրության արդյու-
նավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման նպատա-
կին՝ արտադրության մեջ նորագույն տեխնիկայի և առաջադիմական տեխնո-
լոգիայի լայն արմատավորման, մեքենաների ու սարքավորումների առավելա-
գույն օգտագործման, նոր կարողությունների արագ գործարկման և յուրաց-
ման միջոցով։

Թույլ տվեք, ընկերնե՛ր, հաստատ վստահություն հայտնել, որ, ի պատաս-
խան երկրին ավելի շատ, ավելի լավորակ, ավելի պակաս ծախսումներով
արտադրանք տալու՝ կուսակցության կոչի, մեր հանրապետության բանվոր
դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը իրենց
բոլոր ուժերը, գիտելիքները, ստեղծագործական եռանդը կնվիրեն հնգամյա
պլանի կատարման գործին, հայրենիքի բարգավաճման, նրա տնտեսական և
պաշտպանական հզորության հետագա աճին, կոմունիստական շինարարության
նոր հաղթանակների նվաճմանը։



Թանկագին Անդրեյ Անդրեևի՛չ։
Մենք շնորհակալություն ենք հայտնում Ձեզ մեզ մոտ գալու և մեր հան-
րապետությանը ժողովուրդների բարեկամության շքանշան հանձնելու համար,
Հայաստանի կոմկուսի, հայ ժողովրդի, հանրապետության բոլոր աշխատա-
վորների հասցեին ասված Ձեր ջերմ ու սրտագին խոսքերի համար։
Մեր ժողովուրդը ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արտաքին
գործերի մինիստր ընկեր Անդրեյ Անդրեևիչ Գրոմիկոյին ճանաչում է որպես
մեր կուսակցության և պետության ականավոր գործիչներից մեկի։ Երկար
տարիներ գտնվելով դիվանագիտական ղեկավար աշխատանքում, Դուք հե-
տևողականորեն և սկզբունքորեն վարում եք մեր կուսակցության և պետության
արտաքին քաղաքականությունը, ստեղծագործաբար կենսագործում ՍՄԿԿ
Կենտրոնական կոմիտեի ցուցումները խաղաղության լենինյան ծրագրի իրա-
կանացման ուղղությամբ։
Ձեր բարեմաղթությունները Հայաստանի աշխատավորներին նոր սխ-
րանքների և մեծագործությունների կոգեշնչեն հանուն մեր սոցիալիստական
հայրենիքի։
Թույլ տվեք, թանկագին Անդրեյ Անդրեևի՛չ, հայ ժողովրդի, մեր հանրա-
պետության բոլոր աշխատավորների անունից Ձեզ մաղթել քաջառողջություն և
նոր, մեծ հաջողություններ Ձեր պատասխանատու ու բեղմնավոր գործունեու-
թյան մեջ՝ ի բարօրություն և ի երջանկություն սովետական մարդկանց։
Մենք Ձեզ խնդրում ենք մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեին,
ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը և Մինիստրների սովետին, ՍՄԿԿ
Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին հաղորդել հայ
ժողովրդի, Սովետական Հայաստանի կոմունիստների, բոլոր աշխատավորների
խոր ու սրտագին շնորհակալությունը հայրենիքի բարձր պարգևի համար,
այն հսկայական ու մշտական հոգատարության համար, որ նրանք ցուցաբե-
րում են մեր հանրապետության նկատմամբ։ (Ծափահարություններ)։
Թույլ տվեք, ընկերնե՛ր, Հայաստանի կոմունիստական կուսակցության
Կենտրոնական կոմիտեի, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի և Մինիստրների
սովետի անունից, մեր հանդիսավոր նիստի մասնակիցների անունից ՍՄԿԿ լե-
նինյան Կենտրոնական կոմիտեին, նրա քաղբյուրոյին, անձամբ Կենտկոմի
գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևին հավաստիացնել, որ Հա-
յաստանի կոմունիստական կուսակցությունը՝ Սովետական Միության մեծ
կոմունիստական կուսակցության մարտական ու փորձված ջոկատներից մեկը,
հայ ժողովուրդը, քառակի շքանշանակիր Սովետական Հայաստանի բոլոր
աշխատավորները սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում այ-
սուհետև ևս կգտնվեն մեր երկրում կոմունիզմի կառուցման ծրագրի իրակա-
նացման պայքարի ավանգարդում։ (Երկարատև ծափահարություններ)։
Կեցցե՜ մեր մեծ հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապե-
տությունների Միությունը, խաղաղության և ժողովուրդների բարեկամության
պատվարը։
Թո՛ղ հավերժ ապրի ու ծաղկի ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը։
Կեցցե՜ քառակի շքանշանակիր Հայկական Սովետական Սոցիալիստական
Հանրապետությունը։
Փա՜ռք Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը՝ կոմու-
նիզմի համար մղվող պայքարում սովետական ժողովրդի ոգեշնչողին ու կազ-
մակերպչին։ (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ, ՍՍՀ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ

Մենք, Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետությանը
Ժողովուրդների բարեկամության շքանշանի հանձնմանը նվիրված՝ Հայաստա-
նի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի և Հայկական
ՍՍՀ Գերագույն սովետի հանդիսավոր նիստի մասնակիցներս, Սովետական
Հայաստանի կոմունիստների, բոլոր աշխատավորների անունից բոցավառ
ողջույն ենք հղում ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեին, ՍՍՀ Միու-
թյան Գերագույն սովետի նախագահությանը և սովետական կառավարու-
թյանը:

Այսօրվանից Սովետական Հայաստանի պետական դրոշի վրա, Լենինի
երկու շքանշանների և Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանի կողքին,
վառ կերպով շողում է Ժողովուրդների բարեկամության շքանշանը:

Հայկական ՍՍՀ-ի պարգևատրումը Ժողովուրդների բարեկամության
շքանշանով հայ ժողովրդի, հանրապետության բոլոր աշխատավորների նր-
կատմամբ ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության մշտական հո-
գատարության և ուշադրության նոր, հիանալի դրսևորումն է:

Հայ ժողովուրդը խորապես գիտակցում է, որ սոցիալտնտեսական և
կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում հանրապետության
մեծ հաջողությունները ձեռք են բերվել սովետական ժողովուրդների միա-
նական ընտանիքում, մեր երկրի բոլոր ժողովուրդների և ամենից առաջ ռուս
մեծ ժողովրդի եղբայրական օգնությամբ, Սովետական Միության փառա-
պանծ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ:

Այժմ մեր հանրապետության բոլոր աշխատավորները, ինչպես և ամբողջ
սովետական ժողովուրդը, հաջողությամբ կենսագործում են ՍՄԿԿ XXIV հա-
մագումարի պատմական որոշումները:

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության արդյունա-
բերության և գյուղատնտեսության աշխատավորները կատարեցին հնգամյա-
կի երրորդ՝ վճռական տարվա պլանները և ստանձնած սոցիալիստական
պարտավորությունները:

Հետագա զարգացում ստացան հանրապետության ժողովրդական տնտե-
սության բոլոր ճյուղերը, գիտությունն ու կուլտուրան: Հնգամյակի երրորդ
տարվա արդյունքները բարենպաստ պայմաններ ստեղծեցին 1974 թվակա-
նին է՛լ ավելի հաջող աշխատելու, ամբողջ իններորդ հնգամյա պլանը կա-
տարելու համար: Սովետական Հայաստանի աշխատավորները հսկայական
ոգևորությամբ ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թվականի դեկտեմբերյան
պլենումի որոշումները, պլենումում մեր կուսակցության Կենտկոմի գլխավոր
քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևի խորապես բովանդակալից ելույթը, որոնցում
ամփոփված են սովետական ժողովրդի ստեղծարար վիթխարի աշխատանքի
արդյունքները, սահմանված են մեր առջև կանգնած հոյակապ խնդիրները:

Կուսակցությանը, սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի
դիմումը, համամիութենական սոցիալիստական մրցության մասին ՍՄԿԿ
Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի
որոշումները Սովետական Հայաստանի աշխատավորների մեջ առաջ բերե-
ցին աշխատանքային և քաղաքական նոր, հուժկու խանդավառություն: Աշ-
խատանքային բոլոր կոլեկտիվներում նոր թափ է ստանում սոցիալիստական
մրցությունը հետևյալ լոզունգով՝ երկրին տալ ավելի շատ, ավելի լավորակ
արտադրանք՝ ավելի պակաս ծախսումներով:

Մեր հանրապետության կոմունիստներն ու աշխատավորները ջերմորեն
պաշտպանում և հավանություն են տալիս սկզբունքային ու հետևողական
այն պայքարին, որ մեր կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեն և
անձամբ ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևը մղում են կոմունիստական շինարա-
րության վիթխարի պլանների կենսագործման, ՍՄԿԿ XXIV համագումարի
ընդունած խաղաղության ծրագրի իրականացման համար:

Հայրենիքի բարձր պարգևը՝ Ժողովուրդների բարեկամության շքանշանը,
շատ բան է պարտավորեցնում մեր հանրապետության կոմունիստներին, բան-
վոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը և մտավորականությա-
նը: Կուսակցության և կառավարության հոգատարությանը Սովետական
Հայաստանի աշխատավորները կպատասխանեն՝ է՛լ ավելի համախմբելով
իրենց շարքերը փառապանծ կոմունիստական կուսակցության, նրա լենինյան
Կենտրոնական կոմիտեի շուրջը:

Այս նշանակալի օրը Հայկական ՍՍՀ-ի աշխատավորները ՍՄԿԿ Կենտ-
րոնական կոմիտեին, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությանը և սովե-
տական կառավարությանը հանդիսավոր կերպով հավաստիացնում են, որ
իրենց բոլոր ուժերն ու գիտելիքները կնվիրեն ՍՄԿԿ XXIV համագումարի
հոյակապ կանխագծումների կենսագործման պայքարին, անխոնջ եռանդով ու
հետևողականությամբ կամրապնդեն սովետական ժողովուրդների անխախտ
եղբայրությունը:

Կեցցե՜ ՍՍՀՄ ժողովուրդների լենինյան բարեկամությունը՝ մեր մեծ սո-
ցիալիստական հայրենիքի հզորության հիմքը:

Փա՜ռք Սովետական Միության կոմունիստական կուսակցությանը՝ մեր
բոլոր հաղթանակների ոգեշնչողին ու կազմակերպչին:

# ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ ԼՈՒԾԵՆՔ ՈՐՈՇԻՉ ՏԱՐՎԱ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ընթանալով լենինյան կուրսով, անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ XXIV համագումարի կանխագծած հոյակապ ծրագիրը, հաջողությամբ իրագործում է ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի պլանը:

Անցյալ տարի դեկտեմբերին տեղի ունեցած ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը հանրագումարի բերեց իններորդ հնգամյակի վճռական տարվա ժողովրդատնտեսական պլանի կատարման արդյունքները, քննարկեց ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1974 թվականի պետական պլանն ու պետական բյուջեն, հիմնականում հավանություն տվեց դրանց ու ներկայացրեց ՍՍՀՄ ութերորդ գումարման Գերագույն սովետի յոթերորդ սեսիայի քննարկմանը: Մեր երկրի պետական բարձրագույն օրգանը հաստատեց այդ փաստաթղթերը և դրանց տվեց օրենքի ուժ:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում մեծ ճառով հանդես եկավ կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը: Նա իր ելույթում խորը և բազմակողմանիորեն բնութագրեց կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի ստեղծագործական գործունեությունն ընթացիկ հնգամյակում, մասնավորապես վճռական տարում: Ընկեր Բրեժնևը առաջ քաշեց 1974 թվականի ժողովրդական տնտեսության զարգացման պլանի կատարման, աշխատավորների բարեկեցության ու կուլտուրայի հետագա վերելքի ապահովման դրույթները, նշեց հնգամյակի խնդիրների լուծման կոնկրետ միջոցները:

Սովետական ժողովրդի հերոսական գործերում 1973 թվականը կմտնի որպես հարվածային աշխատանքի տարի, որը բեղմնավոր եղավ կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում: «Բայց չէ որ տարին հեշտությամբ չսկսվեց,— ասում է Լ. Ի. Բրեժնևը՝ սովետական ժողովրդին ուղղած իր նոր տարվա շնորհավորանքում,— իրենց զգալ էին տալիս նախորդ՝ 1972 թվականի տարերային աղետների՝ ամենքիս հիշողության մեջ մնացած ծանր հետևանքները», որոնք քիչ վնաս չհասցրին գյուղատնտեսությանը, բարդացրին ամբողջ հնգամյակի առաջադրանքների կատարման գործը: Բայց մեր երկրի աշխատավորները, կոմունիստներն ու անկուսակցականները, հարազատ կուսակցության կոչով ծավալեցին սոցիալիստական մրցություն, հանդես բերեցին կազմակերպվածություն և ստեղծագործական նախաձեռնություն, մոբիլիզացրին բոլոր հնարավորություններն ու միջոցները և ոչ միայն հաջողությամբ կատարեցին վճռական տարվա հիմնական պլանային առաջադրանքները, այլև զգալիորեն գերակատարեցին դրանք:

Հիանալի ու ոգեշնչող են սովետական մարդկանց անցյալ տարվա ձեռք բերած հաջողությունները: ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ծավալը, տարեկան առաջադրանքով նախատեսված 5,8 տոկոսի փոխարեն, ավելացավ



7,4 տոկոսով: Պլանից ավելի թողարկվեց և իրացվեց ավելի քան 7,3 մլրդ ռուբլու արտադրանք: Հնգամյակի երեք տարում արդյունաբերության արտադրանքի ծավալն ընդհանուր առմամբ ավելացավ 23,1 տոկոսով, ընդ որում, «Ա» խմբինը՝ 24,1, «Բ» խմբինը՝ 20,3 տոկոսով: Անցյալ տարի մեր երկրում արտադրվեց ավելի քան 915 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա, պողպատ՝ 131, գլանվածք՝ 91,4, հանքային պարարտանյութեր՝ 72,3 մլն տոննա, արդյունահանվեց նավթ՝ 421, ածուխ՝ 668 մլն տոննա: Որոշակի են նվաճումները նաև թեթև ու սննդի արդյունաբերության, շինարարության ու տրանսպորտի առաջընթացի բնագավառներում: Զգալիորեն կատարելագործվեցին արտադրության տեխնոլոգիան, սարքերը, մեխանիզմներն ու հոսքային գծերը, որոնց շնորհիվ բարձրացավ աշխատանքի արտադրողականությունն ու բարելավվեց թողարկվող արտադրանքի որակը: Արդյունաբերական արտադրանքի ամբողջ աճի ավելի քան չորս հինգերորդականը ստացվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին:

Գյուղատնտեսության ինտենսիվացման՝ կուսակցության քաղաքականության շնորհիվ, գյուղում սոցիալիստական մրցության լայն ծավալման միջոցով, անցյալ տարի նշանակալից նվաճումներ ձեռք բերեցին գյուղի աշխատավորները, երկրում ստացվեց հացահատիկի և բամբակի ռեկորդային բերք: Հացահատիկի համախառն բերքը կազմեց 222,5 մլն տոննա, կամ 13,6 մլրդ փութ: Դա աննախադեպ ցուցանիշ է: Պետության շտեմարանները լցվեց 90 մլն տոննա կամ 5,5 մլրդ փութ հացահատիկ: Մթերվեց ավելի քան 7,6 մլն տոննա բամբակ: Ավելացան շաքարի ճակնդեղի, արևածաղկի, կարտոֆիլի և մի շարք այլ գյուղատնտեսական կուլտուրաների, ինչպես նաև անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները:

Հետևողականորեն իրագործվում են գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման միջոցառումները: Ընթացիկ հնգամյակի անցած երեք տարում ֆինանսավորման բոլոր աղբյուրներից գյուղատնտեսության զարգացմանը հատկացվել է 72 մլրդ ռուբլի, որը 2,5 մլրդ ռուբլով ավելի է, քան նախատեսված էր հնգամյա պլանով: Այդ տարիներին հնգամյա պլանի համաձայն գյուղատնտեսությանը մատակարարվել է 962 հազար տրակտոր, 581 հազար բեռնատար և մասնագիտացված ավտոմեքենա, 8,3 մլրդ ռուբլու գյուղատնտեսական մեքենաներ, 162 մլն տոննա հանքային պարարտանյութեր:

Սովետական Միության էկոնոմիկայի զարգացման շնորհիվ անշեղորեն բարձրանում է աշխատավորների կուլտուր-կենցաղային մակարդակը, բարելավվում նրանց նյութական բարեկեցությունը, որը կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը իրենց գործունեության գլխավոր խնդիրն են համարում: Միայն անցյալ տարի բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող ռեալ եկամուտն աճեց 5, իսկ հնգամյակի սկզբից՝ 13,5 տոկոսով: Վերջին ժամանակաշրջանում բարձրացել է յուրաքանչյուր երրորդ բանվորի ու ծառայողի աշխատավարձը, 23 մլն մարդու եկամուտներն ավելացել են կրթաթոշակների, կենսաթոշակների, նպաստների աճի և այլ միջոցառումների շնորհիվ: Անցյալ տարի երկրում կառուցվել է 109 մլն քմ բնակելի տարածություն, որը հնարավորություն է տվել բարելավելու ավելի քան 11,5 մլն մարդու բնակարանային պայմանները: Բնակչությանը վաճառելու համար թողարկվել են 130 մլրդ ռուբլու լայն սպառման ապրանքներ:

Անցած տարին նշանավորվեց համաշխարհային ասպարեզում կատարված դրական կարևոր տեղաշարժերով, մեր լենինյան կուսակցության, սոցիալիս-

տական հայրենիքի միջազգային հեղինակության բարձրացմամբ: Սովետական մարդիկ, ողջ առաջադեմ մարդկությունը բարձր են գնահատում խաղաղության և ժողովուրդների անվտանգության գործում այն հսկայական ավանդը, որ մուծում են լենինյան կուսակցությունը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, անձամբ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը, ջերմորեն պաշտպանում ու հավանություն են տալիս ՍՄԿԿ-ի ու սովետական պետության խաղաղասիրական արտաքին քաղաքականությանը:

Մեր լայնարձակ հայրենիքի հետ համընթաց են քայլում Սովետական Հայաստանի աշխատավորները: 1973 թվականի դեկտեմբերին տեղի ունեցավ ՀԿԿ Կենտկոմի պլենումը, որը հանգամանորեն քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի արդյունքները: Պլենումը լիովին հավանություն տվեց դեկտեմբերյան պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ելույթում շարադրված դրույթներին և հետևություններին: Նշվեց, որ ընկեր Բրեժնևի ելույթը, Կենտկոմի պլենումի որոշումները հանրապետության կուսկազմակերպությունների, բոլոր կոմունիստների մարտական ծրագիրն են ժողովրդական տնտեսության հետագա զարգացման ասպարեզում կուսակցության առաջադրած խնդիրների լուծման համար մղվող պայքարում:

ՀԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1973 թ.) պլենումը վերլուծեց հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա արդյունքները: Պլենումում նշվեց, որ մեր հանրապետության աշխատավորները, կուսկազմակերպությունների ղեկավարությամբ, մտնելով համամիութենական սոցիալիստական մրցության մեջ, քաղաքական և աշխատանքային վերելքի պայմաններում որոշակի հաջողությունների են հասել 1973 թ. պլանների կատարման գործում և ապահովել Սովետական Հայաստանի էկոնոմիկայի հետագա առաջընթացը: ՀԿԿ Կենտկոմի պլենումին հաջորդեց ՀՍՍՀ ութերորդ գումարման Գերագույն սովետի վեցերորդ սեսիան, որը քննարկեց հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման 1974 թ. պետական պլանը, պետական բյուջեն և օրենքներ ընդունեց դրանց մասին:

Մեր հանրապետության ազգային եկամուտն անցյալ տարի ավելացավ 3,7 տոկոսով: Նրա բացարձակ աճը հնգամյակի երեք տարիներում կազմեց 440 մլն ռուբլի: Արդյունաբերական արտադրանքի ծավալը 1973 թ. աճեց 5,7, իսկ երեք տարում՝ 20,4 տոկոսով, այդ թվում «Ա» խմբինը՝ 19, «Բ» խմբինը՝ 21 տոկոսով: Միայն անցյալ տարի լրացուցիչ իրացվեց 64 մլն ռուբլու արդյունաբերական արտադրանք:

Անցյալ տարի մեր հանրապետությունում ավելի բարձր տեմպերով են զարգացել էլեկտրաէներգետիկան, գունավոր մետալուրգիան, մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերությունը: Ապահովվել են արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների մեծ մասի տարեկան պլանով նախատեսված արտադրության ծավալները: Իսկ դրանց մի շարք տեսակների, այդ թվում քիմիական մանրաթելերի, սինթետիկ ամոնիակի, էլեկտրալամպերի, սարքերի ու ավտոմատացման միջոցների, մսի, յուղի, պանրի արտադրությունը հասել է հնգամյա պլանով նախատեսված մակարդակին: Միայն անցյալ տարի կառուցվել է 990 հազար քմ բնակելի տարածություն:

Կուսակցության և կառավարության գործադրած ջանքերի շնորհիվ նկատելի կերպով ամրապնդվել է գյուղատնտեսության նյութա-տեխնիկական բազան, հողագործության ու անասնապահության զարգացումը տեղի է ունենում ինտենսիվացման ճանապարհով: Ընթացիկ հնգամյակի երեք տարիներին գյուղատնտեսության զարգացման նպատակին հատկացվել է 430 մլն ռուբլի կապիտալ ներդրումներ, այդ թվում 1973 թ.՝ 160 մլն ռուբլի: Գյուղատնտեսությանը մատակարարվել է 4350 տրակտոր, 400 կոմբայն, 4450 բեռնատար ավտոմեքենա, 817 հազար տոննա հանքային պարարտանյութ: Ոռոգելի հողատարածությունները ավելացել են մոտ 30 հազար հեկտարով:

Այս ամենի շնորհիվ անցյալ տարի զգալիորեն բարձրացել են գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և անասնապահության մթերատվությունը: Կոլտնտեսությունները, սովխոզները և պետական մյուս տնտեսությունները կատարել ու գերակատարել են գյուղատնտեսական մթերքների մեծ մասի արտադրության և պետությանը դրանց վաճառքի պլանային առաջադրանքներն ու սոցիալիստական պարտավորությունները: Հանրապետությունում արտադրվել է 286 հազար տոննա հացահատիկ, որի միջին բերքը հեկտարից կազմել է 16,5 ցենտներ: Հնգամյա պլանով նախատեսվածից ավելի է գնվել 29 հազար տոննա հացահատիկ, 65 հազար տոննա բանջարեղեն:

Կատարվել են հնգամյա պլանով 1973 թ. համար նախատեսված տրանսպորտի, կապի զարգացման առաջադրանքները: Ֆինանսական բոլոր աղբյուրներից հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացմանն ուղղված կապիտալ ներդրումների գումարը անցյալ տարի կազմել էր 840 մլն, իսկ հնգամյակի երեք տարիներին՝ 2.530 մլն ռուբլի: Վերոհիշյալ հասումների շնորհիվ հնարավորություն ստեղծվեց իրագործելու աշխատավորների բարեկեցությունը բարձրացնելու մի շարք միջոցառումներ: Հնգամյակի երեք տարիներին բանվորների ու ծառայողների միջին ամսական աշխատավարձը աճել է 8,6, իսկ կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 13,8 տոկոսով: Երեք տարվա ընթացքում բարձրացել են ավելի քան 235 հազար մարդու աշխատավարձը, կրթաթոշակներն ու կենսաթոշակները:

Արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, գյուղատնտեսության, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման բնագավառի այս հաջողությունները օրինական հպարտությամբ են համակում սովետական յուրաքանչյուր մարդու, քանի որ այդ ամենը ձեռք է բերված մեր երկրի բանվորների, գյուղացիների և մտավորականների, հիրավի, ոսկե ձեռքերի, ճարտար մտքի, ստեղծագործական ջանքերի շնորհիվ: Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը բարձր գնահատեցին առաջավոր կոլեկտիվների, լավագույն մարդկանց՝ արտադրության առաջավորների, տաղանդավոր գիտնականների ծառայությունը: Անցյալ տարի մեր հանրապետությունից չորս մարդ արժանացան սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման, իսկ հարյուրավոր բանվորներ, կոլտնտեսականներ, մտավորականներ պարգևատրվեցին Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով:

Հենց այս տարվա սկզբից տոնական խանդավառ օրեր ապրեցին Սովետական Հայաստանի աշխատավորները. մեր հանրապետությանը հանձնվեց հայրենիքի բարձր պարգևը՝ Ժողովուրդների բարեկամության շքանշանը, որին նա արժանացել է ՍՍՀՄ կազմավորման 50-ամյա տարելիցի կապակցությամբ՝ Սովետական Միության ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համագործակցության ամրապնդման ասպարեզում մատուցած մեծ ծառայությունների համար:

Ընթացիկ հնգամյակի նվաճումները պետք է ամրապնդվեն չորրորդ՝ որո-

շիչ տարում։ 1974 թ. ՍՍՀՄ ազգային եկամուտը կաճի 6,5 տոկոսով, 1971—
1973 թթ. միջին տարեկանի 5 տոկոսի դիմաց։ Արդյունաբերական արտա-
դրանքը անցյալ տարվա համեմատությամբ կաճի 6,6 տոկոսով, այդ թվում
«Ա» խմբինը՝ 6,6, «Բ» խմբինը՝ 7,5 տոկոսով։ Գյուղատնտեսության համա-
խառն արտադրանքը պետք է հասնի 100 մլրդ ռուբլու, որը անցյալ տարվա
մակարդակը կգերազանցի 6,4 տոկոսով։ Մեծ ծրագիր է նախատեսված բնակ-
չության կենսամակարդակի բարձրացման բնագավառում։ Այսպես, բանվոր-
ների ու ծառայողների ամսական միջին աշխատավարձը կբարձրանա 3,6,
կոլտնտեսականների աշխատանքի վարձատրությունը՝ 6,1 տոկոսով։

Հայկական ՍՍՀ 1974 թ. պլանը մշակվել է մեր հանրապետության ժողո-
վրրդական տնտեսության զարգացման այն հիմնական ուղղություններին հա-
մապատասխան, որոնք ՍՄԿԿ XXIV համագումարի՝ հնգամյա պլանի դիրեկ-
տիվներով նախատեսված են ընթացիկ տարվա համար։ Այդ պլանը սերտորեն
կապված է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման համապետական
պլանի հետ։

Այս տարի հանրապետության ազգային եկամուտը կաճի 9,8 տոկոսով՝
1971—1973 թվականների միջին տարեկան 6 տոկոսի դիմաց, իսկ բացարձակ
աճը կկազմի 255 մլն ռուբլի, անցած երեք տարիների 147 մլն-ի դիմաց։ Ար-
դյունաբերական արտադրանքի արտադրությունը նախատեսված է 1973 թ.
համեմատությամբ ավելացնել 10,9 տոկոսով, այդ թվում «Ա» խմբինը՝ 11,8,
«Բ» խմբինը՝ 9,6 տոկոսով։ Արտադրության ծավալի բացարձակ աճը կկազմի
355 մլն ռուբլի, 1973 թ. 175 մլն-ի դիմաց։ Ծրագրված է 200 հազար կվտ
հզորությամբ էներգետիկ բլոկի գործարկումը Հրազդանի պետական շրջանա-
յին էլեկտրակայանում։ Ֆինանսավորման բոլոր աղբյուրներից մեր հանրա-
պետության ժողովրդական տնտեսությանը կհատկացվի 938,5 մլն ռուբլի, որը,
նախորդ տարվա համեմատությամբ, 9,3 տոկոսով ավելի է։

Արտադրական ճյուղերի կոմպլեքսային մեքենայացման, ոռոգելի ու ջրա-
մատակարարման ցանցի ընդարձակման շնորհիվ հնարավորություն կստեղծ-
վի գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի ծավալը՝ 1973 թ.
համեմատությամբ, ավելացնել 18,1 տոկոսով։

Սակայն, չնայած այս ամենին, ինչպես նշված է կուսակցությանը, սովե-
տական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի մեջ, տնտեսության
զարգացման գործում դեռևս կան մի շարք թերություններ և չլուծված պրոբ-
լեմներ։ Ոչ քիչ թվով ձեռնարկություններ, կառույցներ, կոլտնտեսություններ
և սովխոզներ չեն կատարում պլանային առաջադրանքները. այս հանգամանքը
բացասաբար է անդրադառնում մեր ողջ էկոնոմիկայի առաջընթացի վրա։

ՀԿԿ Կենտկոմի անցյալ տարվա նոյեմբերյան պլենումում նշվեց, որ հան-
րապետության 98 արդյունաբերական ձեռնարկություններ, կամ ձեռնարկու-
թյունների 14 տոկոսը, չեն կատարել 1973 թ. առաջին տասն ամսվա արդյու-
նաբերական արտադրանքի իրացման պլանը։ Եվ դա, առաջին հերթին, հետե-
վանք է այն բանի, որ կուսկազմակերպություններն ու տնտեսավարները մի-
ջոցներ չեն ձեռնարկել արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու,
եղած սարքավորումները լրիվ կարողությամբ օգտագործելու, հումքը, վառե-
լիքը խնայողաբար ծախսելու, աշխատանքային կարգապահությունը բարձ-
րացնելու համար։

Պետական պլանները սիստեմատիկորեն ձախողել են այնպիսի խոշոր
ձեռնարկություններ, ինչպիսիք են Երևանի նուրբ բրդյա մահուդի, Ալավերդու



չեռնամետալուրգիական կոմբինատները, Երևանի «Պոլիվինիլացետատ» ու Լե-
նինականի հղկող հաստոցների գործարանները և այլն։ Չեն կատարվել ար-
տադրանքի այնպիսի կարևորագույն տեսակների պլանները, ինչպիսիք են գլո-
ված պղնձի, սինթետիկ կաուչուկի, ացետատային ցելյուլոզի, ծծմբաթթվի,
բրդյա նուրբ գործվածքների, կուլտուր-կենցաղային նշանակության և տնտե-
սական գործածության ապրանքների թողարկման տարեկան պլանները։

Գյուղատնտեսության արտադրության պլանային առաջադրանքների կա-
տարման ընթացքը ցույց է տալիս, որ անհրաժեշտ պայքար չի տարվում հան-
րային արտադրության ինտենսիվացումը բարձրացնելու համար։ Բազմաթիվ
տնտեսություններում դեռևս անբավարար են օգտագործվում հողը, ջուրը,
տեխնիկան, պարարտանյութերը։ Արտադրության մեջ անբավարար են ներ-
դրվում գիտության նվաճումներն ու առաջավորների փորձը, հետևողական
պայքար չի տարվում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու և
կարգապահությունը ամրապնդելու համար։

Ժողովրդական տնտեսության զարգացման ասպարեզում գոյություն ու-
նեցող թերությունները (որոնք բացահայտ խանգարում են հնգամյակի պլանի
կատարմանը) վերացնելու համար անհրաժեշտ է էկոնոմիկայի ղեկավարման
մեխանիզմը կատարելագործել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների և ան-
ցած երեք տարում կուտակված փորձի հիման վրա։ Խոսքը վերաբերում է էկո-
նոմիկայի կառավարման կազմակերպման կառուցվածքին, պլանավորման
սիստեմին ու մեթոդներին, կապիտալ ներդրումների բաշխմանը, տնտեսական
խթանների ուժեղացմանը։ Խնդիրն այն է, որ տնտեսական պլանները յուրա-
քանչյուր աշխատավորի, ամեն մի կոլեկտիվի համար շահավետ լինեն այն-
պես, ինչպես և պետության համար, որ կոլեկտիվները վերցնեն լարված պլան-
ներ, օգտագործեն բոլոր ռեզերվները, պատշաճ որակով և քանակով թողարկեն
արտադրատեսակները, խնայեն հումքն ու նյութերը, բարձրացնեն աշխատանքի
արտադրողականությունը։

Էկոնոմիկայի զարգացման հետագա հաջողությունները, յուրաքանչյուր
ձեռնարկության և հիմնարկության կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների
հաջող լուծումը պահանջում են, որպեսզի պատշաճ կարգ ու կանոն սահմանվեն
կուսակցական ու պետական բոլոր օղակներում, բարձրացվեն կադրերի անձ-
նական պատասխանատվությունն ու փոխադարձ պահանջկոտությունը, էկո-
նոմիկայի կուսակցական ու տնտեսական ղեկավարման մակարդակը։

Պետք է ավելի հաստատակամորեն պայքարել աշխատանքում իսկական
կուսակցական ոճ, տնտեսական գործունեության բոլոր ոլորտներում կուսակ-
ցական մոտեցում հաստատելու համար։ Կուսկազմակերպությունները, մի-
նիստրություններն ու գերատեսչությունները, տնտեսական ղեկավարները
պետք է պատշաճ հետևություններ անեն ՍՄԿԿ Կենտկոմի 1973 թ. դեկտեմ-
բերյան, ՀԿԿ Կենտկոմի նոյեմբերյան և դեկտեմբերյան պլենումների որոշում-
ներից, կուսակցական վերաբերմունք հանդես բերեն էկոնոմիկայի ղեկավար-
ման գործում։

Ընթացիկ հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա պլանն արդեն գործողու-
թյան մեջ է։ 1974 թ. շեմքին ոտք դնելու առաջին օրերին հրապարակվեց ՍՄԿԿ
Կենտկոմի դիմումը՝ ուղղված կուսակցությանը, սովետական ժողովրդին։ Ընդ-
գծելով հնգամյակի առաջադրանքները կատարելու գործում սովետական ժո-
ղովրդի ձեռք բերած հաջողությունները՝ կուսակցության Կենտրոնական կոմի-
տեն Սովետական Միության բոլոր աշխատավորներին կոչ է անում մոբիլի-

գացնել իրենց եռանդն ու ջանքերը՝ 1974 թ. առաջադրանքները հաջողությամբ
կատարելու և գերակատարելու համար: Իսկ դա «որոշիչ նշանակություն կու-
նենա ոչ միայն այս հնգամյակի հաջող կատարման համար, այլև կարևոր
քայլ կլինի եկող հնգամյակում տնտեսական պոտենցիալի հետագա աճի ու
ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձ-
րացման ամուր հիմք ստեղծելու համար» (ՍՄԿԿ Կենտկոմի Դիմումից):

Մեր լայնարձակ սոցիալիստական հայրենիքի բոլոր անկյուններում աշ-
խատավորական լայն զանգվածները, մեծ ու փոքր կոլեկտիվները, ջերմորեն
արձագանքելով հարազատ կուսակցության Կենտկոմի կոչին, ամենուրեք հան-
դիպական պլաններ են ընդունում, սոցիալիստական մրցության մեջ մտնում
այս տարվա պլանները կատարելու և գերակատարելու համար: Մեր հանրա-
պետությունում այդպիսի մրցության նախաձեռնողները հանդիսացան Երևանի
Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, ալյումինի գործարանները,
Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան քիմիական կոմբինատը, Ղափանի
պղնձամետալուրգիական կոմբինատի հարստացուցիչ, Լենինականի Ս. Լուկա-
շինի անվան մանվածքային ֆաբրիկաների և այլ ձեռնարկությունների կոլեկ-
տիվներ, Արտաշատի շրջանի Ն. Դվին, Հրազդանի շրջանի Մեղրաձոր գյուղերի
կոլտնտեսությունները և ուրիշ տնտեսություններ:

Հավանություն տալով աշխատավորական կոլեկտիվների նախաձեռնու-
թյունը՝ ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ՀԱՄԿԽ-ը, ՀամԼԿԵՄ
Կենտկոմը որոշումներ են ընդունել 1974 թ. ժողովրդատնտեսական պլանը
ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության
և տրանսպորտի աշխատողների, հողագործության և անասնապահության
մթերքների արտադրությունն ու մթերումներն ավելացնելու համար՝ գյուղա-
տնտեսական աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցու-
թյուն ծավալելու մասին:

Այդ կարևորագույն փաստաթղթերում սահմանված է կուսակցական, սո-
վետական, արհմիութենական, կոմերիտական, տնտեսական կազմակերպու-
թյունների գործունեության կոնկրետ ծրագիրը՝ սոցիալիստական մրցությունը
ծավալելու և գլխավորելու բնագավառում: Իններորդ հնգամյակի վճռական
տարում սոցիալիստական մրցությունը ծավալվում է հանրային արտադրու-
թյան արդյունավետությունը բարձրացնելու, առկա ռեզերվները լիովին օգտա-
գործելու, հայրենիքին ավելի շատ ու լավորակ, նյութական, ֆինանսական ու
մարդկային աշխատանքի նվազ ծախսումներով արտադրանք տալու նշանա-
բանով:

Համամիութենական սոցիալիստական մրցությունը պետք է ուղղվի ար-
տադրության ծավալի մեծացմանը, աշխատանքի արտադրողականության
բարձրացմանը, արդի գիտատեխնիկական մակարդակին համապատասխանող
մեքենաների ու սարքավորումների ստեղծմանը, ժողովրդական սպառման ապ-
րանքների, գյուղատնտեսական բոլոր տեսակի մթերքների արտադրության
ավելացմանը: Այդ խնդիրները լուծելու համար հարկավոր է բազմապատկել
մեր երկրի բանվորների ու կոլտնտեսականների, բոլոր աշխատավորների ջան-
քերն ու եռանդը, արագացնել գիտատեխնիկական առաջընթացը, առավել ռա-
ցիոնալ օգտագործել նյութական ռեսուրսները, կիրառել աշխատանքի և մրցու-
թյան կազմակերպման առաջադիմական եղանակներ նյութական բարիքների
արտադրության բոլոր ոլորտներում:

Հնգամյակի որոշիչ տարվա տեխնիկա-տնտեսական ծրագրի իրականաց-



ման գործում կարևոր դեր կարող է խաղալ արտադրության ներքին ռեզերվնե-
րի առավել լրիվ օգտագործման հիման վրա հանդիպական պլանների մշակ-
ման վերաբերյալ ձեռնարկությունների կոլեկտիվների հայրենասիրական շարժ-
ման պաշտպանությունը: Հետևաբար, կուսկազմակերպությունների առաջնա-
հերթ պարտքն է՝ ճշտորեն, լենինյան սկզբունքներով կազմակերպել սոցիա-
լիստական մրցությունը, գլխավորել մասսաների արտադրական ու քաղաքա-
կան ակտիվությունը, նրանց պայքարի հանել՝ ստանձնած սոցիալիստական
պարտավորություններն անթերի կատարելու համար: Կոմունիստների խնդիրն
է՝ լինել այդ հզոր շարժման առաջավոր դիրքերում, միշտ լինել այնտեղ, որ-
տեղ ավելի դժվար է, և գործի հաջողության համար համառ մաքառումներ են
պահանջվում, ժողովրդին, նրա շահերի ու երջանկության համար մղվող պայ-
քարին նվիրաբերել իրենց ուժը, եռանդը, գիտելիքներն ու ունակությունները:

Կուսակցական կազմակերպական-գաղափարական աշխատանքը պետք է
ուղղված լինի նոր մարդու դաստիարակության նպատակին: Սովետական մար-
դու լավագույն հատկությունները՝ անհուն նվիրվածությունը հայրենիքին,
պրոլետարական ինտերնացիոնալիզմը, կոմունիստական վերաբերմունքը աշ-
խատանքի նկատմամբ, պետք է պատվաստել յուրաքանչյուրի հոգում: Հար-
կավոր է անողոք լինել պորտաբույծների, գործալիքների, խոտանարարների,
դրամաշորթների, հանրային սեփականությանը ձեռք մեկնողների նկատմամբ:

Բացառիկ բարձր է մեր կուսակցության՝ որպես աշխատավորական մի-
լիոնավոր զանգվածների ղեկավարի հեղինակությունը: «Կուսակցությունը այդ-
պիսի հեղինակություն է վաստակել հանուն ժողովրդի շահերի իր անխոնջ
պայքարով, այն բանով, որ կարողացել է մշակել կոմունիստական շինարա-
րության արդի փուլի համար ճիշտ կուրս, որը բանվոր դասակարգը, գյուղա-
ցիությունը և ինտելիգենցիան ընդունեցին որպես իրենց կենսական գործը,
աչքի ընկնող հաջողություններ է ձեռք բերել խաղաղության ամրապնդման
գործում: Կուսակցության բարձր հեղինակությունը մեր ամենաարժեքավոր
հարստությունն է, ընկերներ: Մենք դրա մեջ տեսնում ենք ո՛չ միայն այն ան-
սահման նվիրվածության արդարացի գնահատականը, որով կուսակցությունը
ծառայել ու ծառայում է ժողովրդին: Կուսակցության հեղինակությունը, դրա
հետ մեկտեղ, մեր հզոր, հիրավի ամենահաղթ զենքն է, որն օգնում է համա-
խմբել ամենալայն մասսաներին և նրանց մոբիլիզացնել երկրի առջև ծառացած
խնդիրները լուծելու համար, նրանց դարձնել համապետական շահերի գիտա-
կից մարտիկներ»— ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան
պլենումում (տե՛ս «Պրավդա», 1973 թ., դեկտեմբերի 16):

ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի, ՍՍՀՄ ութերորդ գումարման
Գերագույն սովետի յոթերորդ սեսիայի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը
մեր երկրի բոլոր աշխատավորներն ընդունեցին ջերմ ոգևորությամբ և այժմ
պայքարի են ելել՝ դրանց կենսագործման, նորանոր հաղթանակներ նվաճելու
համար: Սովետական մարդիկ գործով են պատասխանում լենինյան կուսակ-
ցության Կենտկոմի կոչին:

Հանրապետության ամեն մի կուսկազմակերպություն, յուրաքանչյուր կո-
լեկտիվ իր պատվի գործը պետք է համարի անթերի կատարելու ստանձնած
սոցիալիստական պարտավորությունը, դրանով իսկ ապահովելու հնգամյակի
որոշիչ տարվա հոյակապ ծրագրի իրականացումը:

## ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Կ. Լ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**
ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

*Ինտերնացիոնալիզմը, որպես մարդկային մտածողության ձև և արգասիք, հասարակական կեցության արտացոլումն է։ Միանգամայն բնական է, որ լինելով բանվոր դասակարգի սոցիալ-պատմական հատկությունը, ինտերնացիոնալիզմն այսօր դարձել է մեր երկրի բոլոր աշխատավորների գաղափարախոսությունը, քաղաքականությունը, պրակտիկան, վերածվել սովետական մարդու առօրյա գործունեության նորմայի, ավելին՝ դարձել է հոգեբանություն, խոր ներթափանցելով զգացմունքների աշխարհը։ Հենց հասարակական կեցությունն է որոշում ինտերնացիոնալիզմի այդ առանցքային դերը մեր օրերում, զարգացած սոցիալիզմի դարաշրջանում։ Սոցիալիզմի ժամանակ,— նշել է Վ. Ի. Լենինը,— աշխատավոր մասսաները չեն համաձայնի մեկուսացման զուտ տնտեսական դրդապատճառներով (տե՛ս Երկեր, հ. 22, էջ 457)։*

*Ուստի և ինտերնացիոնալ դաստիարակության մարզում ՍՄԿԿ գործունեությունը հենվում է մեր հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների, կյանքի բոլոր կողմերի միասնության վրա, սովետական մարդկանց սոցիալ-տնտեսական, գաղափարա-քաղաքական և կուլտուր-բարոյական ընդհանրության վրա։*

*Այսպիսով, օբյեկտիվ օրինաչափությունների շնորհիվ թշնամական ոչ մի գաղափարախոսություն չի կարող քիչ թե շատ էականորեն ազդել սովետական մարդկանց հասարակական գիտակցության զարգացման ընթացքի վրա։ Մարքս-լենինյան ինտերնացիոնալիստական գաղափարախոսության՝ նման մենաշնորհային դրությունն ապահովում է նրա լիակատար հաջողության օբյեկտիվ հիմքը։ Այս փաստը շատ կարևոր է որպես կուսակցական կազմակերպությունների աշխատանքի մեկնակետ, քանի որ այն հավատ է ներշնչում վերջնական արդյունքների նկատմամբ։*

*Ինտերնացիոնալիստական գաղափարախոսությունը, միաժամանակ, մեր երկրում հակադրվում է նացիոնալիզմի վերապրուկներին։ Մեզ մոտ դեռևս կան*



*բուրժուական և մանրբուրժուական բարոյականության մնացուկներ, չի վերացել կրոնական գաղափարախոսությունը։ Այս բոլոր երևույթները, որոնք բորբոքվում են գլխավորապես իմպերիալիստական կատաղի հակակոմունիզմի կողմից, երբեմն թափանցում են մեր հասարակության հոգևոր կյանքի այս կամ այն ոլորտը, դրսևորվում քաղաքականապես տհաս, հետամնաց առանձին մարդկանց գիտակցության, հոգեբանության, բարոյականության մեջ։ Այս դրույթի հավաստումը շատ կարևոր է նաև որպես կուսկազմակերպությունների աշխատանքի մեկնակետերից մեկը, որը նրան հաղորդում է որոշակի նպատակասլացություն։*

*Միանգամայն ակներև է, որ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի հետագա փաստաթղթերում, ՍՍՀ Միության կազմավորման 50-ամյակին նվիրված հանդիսությունների ժամանակ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Բրեժնևի ելույթում ինտերնացիոնալ դաստիարակության առավել բարելավումը համարվել է կուսակցության կենտրոնական խնդիրներից մեկը... «Կուսակցությունը,— ընդգծեց Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— այսուհետև ևս բոլոր աշխատավորներին կդաստիարակի սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, նացիոնալիզմի ու շովինիզմի, ազգային սահմանափակության ու սնապարծության դրսևորումների նկատմամբ անհաշտության ոգով՝ ինչ ձևով էլ որ դրանք արտահայտվեն, բոլոր ազգերի և ազգությունների հանդեպ խոր հարգանքի ոգով (էջ 101)։*

* * *

*Քաղաքակրթության իսկական ցուցանիշը ո՛չ միայն և նույնիսկ ո՛չ այնքան հարստության ու կրթության մակարդակն է, արտադրության հզորությունն ու մեծությունը, որքան տվյալ երկրի դաստիարակած մարդու կերպարը։ Այդ կերպարը միարժեք չէ, սոցիալական, քաղաքական, գաղափարախոսական, էսթետիկական և էթիկական արժեքների մի բարդ ամբողջություն է նա և, եթե մենք հպարտությամբ ենք ընդունում այն փաստը, որ կոմունիստական կուսակցության գործունեության կարևորագույն արդյունքներից մեկը նոր մարդու, սովետական մարդու դաստիարակությունն է, ապա հպարտանում ենք նրանով, որ այդ մարդն իր մեջ, ասես, կենտրոնացնում է այդ արժեքների ողջ դրականն ու վեհը՝ մարդկության վերընթաց շարժման տեսակետից։ Ամենևին պատահական չէ, որ կուսակցության համագումարը խնդիր դրեց՝ դաստիարակել բազմակողմանի զարգացած մարդ, որն ունակ լինի՝ որպես արտադրաուժ զարգացնելու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման դարաշրջանի հասարակական արտադրությունը, որպես հասարակության անդամ ունակ լինի կառավարելու հասարակական պրոցեսները և ռացիոնալ օգտվելու արտադրության բարիքներից։*

*Ուշագրավ է, որ արտադրության և դաստիարակության պրոբլեմները դրվել և լուծվում են որպես կոմունիստական շինարարության գործի հաջողությունն ապահովող միասնական կոմպլեքս. այդ բարդ կոմպլեքսում կարմիր թելի պես անցնում է* ինտերնացիոնալ *հասկացությունը՝ որպես կուսակցության քաղաքականություն, նոր կյանքի կառուցման պրակտիկա, կուսակցության և կյանքի առաջադրած խնդիրների լուծման ուղի՝ այնպիսի մի բազմազգ երկրում, ինչպիսին մեր պետությունն է. գնալով ավելի ու ավելի է ինտերնացիոնալացվում արտադրությունը, ավելի է ծավալվում աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակությունը։ Միասնական կոմպլեքսի այս երկու կող-*

մերը փոխպայմանավորված են. առանց ողջ արտադրության ինտերնացիոնալացման հետագա խորացման, առանց մեր հանրապետությունների տնտեսական փոխադարձ կապերի սերտացման, այսպես կոչված, զուտ գաղափարախոսական միջոցներով, կամ հակառակը, արդյունավետ չի լինի ինտերնացիոնալ դաստիարակության գործը։

Այսպիսով, ինտերնացիոնալ դաստիարակության պրոցեսն ինքնին մի բարդ կոմպլեքս է, որի հաջող զարգացումը պայմանավորված է կյանքի բոլոր ոլորտներում կուսակցության գործունեությամբ— սոցիալ քաղաքական, գաղափարախոսական, տնտեսական, բարոյա-էթիկական և էսթետիկական։ Մեր հանրապետության կուսկազմակերպությունները ջանում են ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը լուծելիս հանդես բերել կոմպլեքսային մոտեցում։

Կուսակցական կոմիտեներն աշխատանքը պլանավորում են այնպես, որ այն ընդգրկի մարդու կյանքի բոլոր կողմերն ու փուլերը— ընտանիք, ուսման պրոցես, արտադրություն։ Հարկ չկա ապացուցելու այս երեք օղակների կարևորությունը։ Գլխավորն այն է, որ սովետական մարդը մանկուց իսկ համակվի միասնական սոցիալիստական հայրենիքին, միասնական սովետական ժողովրդին պատկանելու գիտակցությամբ։ Այդ գիտակցությունը ծնվում է ընտանիքում՝ փոքր հասակից, ամրապնդվում դպրոցում ու բուհում, դրսևորվում աշխատանքային կոլեկտիվներում։ ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների համաձայն, հանրապետության դպրոցներում իրականացվող ընդհանուր միջնակարգ կրթության նպատակն է՝ դաստիարակել ո՛չ միայն կրթված մարդիկ, այլև քաղաքականապես գրագետ, գաղափարապես համոզված անդամներ՝ համակված հայրենիքի նկատմամբ սիրո և հպարտության, ինտերնացիոնալիզմի, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ոգով։

Այս նպատակին է ծառայում Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի և հանրապետության Մինիստրների սովետի՝ վերջերս ընդունած որոշումը «Հանրապետության հանրակրթական դպրոցներում ռուսաց լեզվի դասավանդման հետագա բարելավման մասին»։ Ռուսերենի՝ ազգերի հաղորդակցման լեզվի, իմացությունը ինտերնացիոնալ դաստիարակության բազմաթիվ պրոբլեմների լուծման բանալին է։ Աճել են ռուսաց լեզուն ուսումնասիրելու պահանջը, ձգտումը. հայ ժողովրդի համար այն վաղուց դարձել է ազատության, բարեկամության, խաղաղ ստեղծագործության խորհրդանիշ։ Սակայն այդ լեզվի դասավանդման արդի մակարդակը դեռևս անբավարար է։ Սույն որոշումը կոչված է վերացնելու թերությունները, դասավանդման մակարդակը համապատասխանեցնելու մեր օրերի պահանջներին։

Գաղափարախոսական արդյունավետ աշխատանքի համար Հայաստանի կոմկուսի Կենտկոմը հոգում է, որ ժամանակին և անհրաժեշտ քանակությամբ հայերեն հրատարակվեն մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունները, ՍՄԿԿ Կենտկոմի և կոմունիստական կուսակցության ու սովետական պետության ղեկավարների գործունեությունն արտացոլող փաստաթղթերը։ Արդեն ձեռնամուխ ենք եղել Վ. Ի. Լենինի Երկերի լիակատար ժողովածուի հրատարակմանը, որի առաջին հատորները լույս կտեսնեն ընթացիկ տարում։

Կուսակցական կազմակերպություններն ամրապնդում և զարգացնում են ՍՍՀՄ 50-ամյակի նախապատրաստության և անցկացման ժամանակաշրջանում ինտերնացիոնալ դաստիարակության ոլորտի հասումները։ Այդ աշխատանքում մեծ տեղ է հատկացվում բանվոր դասակարգի, բոլոր հանրապետությունների աշխատավորների հեղափոխական, մարտական ու աշխատանքա-



յին ավանդույթների, սոցիալիզմի առավելությունների, սովետական ապրելակերպի ակտիվ պրոպագանդմանը։ Դրա վկայությունն են բավարար քանակությամբ համոզիչ փաստերը. ցանկացած միութենական հանրապետության, ինչպես և Հայկական ՍՍՀ օրինակը սովետական ժողովրդի ընտրած ուղու ճշտության վառ ապացույցն է։

Քաղաքական լուսավորության ցանցում մեծ ուշադրություն է նվիրվում ազգային հարցի լենինյան տեսության և կուսակցության քաղաքականության հարցերի ուսումնասիրմանը և աշխատավորների շրջանում դրանց լայն պրոպագանդմանը։ Ամենուր գործում են այդ հարցերին նվիրված տեսական սեմինարները, ժողովրդական համալսարանները, ինտերնացիոնալ բարեկամության ակումբները, ինտերնացիոնալ դաստիարակության դպրոցները, խմբերը, խմբակները։ Բազմաթիվ կուսակցական կոմիտեներում, ինչպես, օրինակ, Շամշադինի, Թալինի, Թումանյանի, Իջևանի, Գորիսի և այլ շրջկոմներում, Կիրովականի, Դիլիջանի քաղկոմներում, Երևան քաղաքի Շահումյանի, Սովետականի շրջկոմներում ինտերնացիոնալ դաստիարակության գործում կուտակված է որոշակի դրական փորձ։ Անդրադառնանք դրանցից մեկի՝ Լենինականի քաղկոմի և քաղաքի կուսակցական կազմակերպությունների գործունեությանը։

Կուսակցության Լենինականի քաղկոմը կարևոր նշանակություն է տալիս քաղաքի կուսկազմակերպություններում ինտերնացիոնալ դաստիարակության գործի պրակտիկ փորձի իմաստավորմանը, դրա ընդհանրացմանն ու տարածմանը։ Վերջին երկու տարում կուսակցության քաղկոմը մի քանի անգամ բյուրոյում քննարկել է ինտերնացիոնալ դաստիարակության բարելավման հարցերը թեթև արդյունաբերության, մեքենաշինական ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպություններում, ուսանող երիտասարդության շրջանում, հանրակրթական դպրոցներում։ Քաղկոմի պլենումներում, ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների լույսի տակ, քննարկվել են աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերը, քաղաքի կուսկազմակերպությունների խնդիրները աշխատավորների գաղափարա-քաղաքական և ինտերնացիոնալ դաստիարակության մարզում։ Ուսումնասիրելով և ընդհանրացնելով կուսկազմակերպությունների աշխատանքի փորձը՝ կուսակցության քաղկոմը, փաստորեն, կուտակում է գիտա-պրակտիկ և մեթոդական հարուստ նյութ, որն օգնում է մշակելու ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության դաստիարակման մեթոդիկան, հնարավորություն ընձեռում հաշվի առնելու այդ աշխատանքի յուրահատկություններն արդյունաբերական ձեռնարկություններում, ուսումնական հաստատություններում, տարբեր պրոֆիլի հիմնարկություններում։

Մարքսիզմ-լենինիզմի համալսարանի ծրագրերում, տեսական և պրոբլեմային սեմինարներում, քաղաքական լուսավորության դպրոցներում ուսումնասիրվում են ազգային հարցի մասին մարքս-լենինյան ուսմունքը, լենինյան ազգային քաղաքականության հիմունքները։ Պրոպագանդիստների և գաղափարախոսական աշխատողների լայն շրջանի համար այդ թեմաների շուրջ կազմակերպվում են գիտական ու տեսական կոնֆերանսներ։

Կուսակցության քաղկոմի գործունեության մեջ մեծ տեղ են գրավում ինտերնացիոնալիստական դաստիարակության կազմակերպումն ու ղեկավարումը— այն գիտակցության սերմանումը, որ անձնական գործունեությունը, յուրաքանչյուր աշխատավորի անձնական ավանդն ընդհանուր գործում ինտեր-

նացիոնալիզմի գերագույն դրսևորումն է։ Սովետական բանվորի գործունեությունն ինտերնացիոնալ է իր բնույթով. այդպիսին է նաև նրա աշխատանքի արդյունքը։ Բայց միշտ չէ, որ այդ գիտակցությունն ուղեկցում է նրա գործունեությանը։ Աշխատավորներին ընդհանուր գործի հաղթանակի համար իրենց կատարածի ինտերնացիոնալ բնույթի պարզաբանումը, ինչպես մատնանշում էր Վ. Ի. Լենինը, անչափ ուժեղացնում է նրանց գործունեության գիտակցական, ստեղծագործական խթանները։

Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կուսակցական կոմիտեն կատարում է այդպիսի լայն աշխատանք՝ կիրառելով բանավոր, տպագիր պրոպագանդայի, դիտողական ագիտացիայի բոլոր միջոցները։ Կոմբինատում ավելի քան 1200 բանվորներ ու ծառայողներ մեր երկրի 18 ազգությունների ներկայացուցիչներ են։ Այստեղ մտածված են կազմակերպվում մասսայական ու հասարակական միջոցառումները, որոնց իրականացմանը մասնակցում է արհմիութենական ու կոմերիտական լայն ակտիվը։ Արդեն երրորդ տարին է, ինչ կոմբինատում գործում է «Ժողովուրդների բարեկամության» համալսարանը, որի խորհուրդը նամակագրական լայն կապեր ունի մեր երկրի բոլոր հանրապետությունների հետ, որի շնորհիվ ստեղծվել է սեփական՝ համալսարանական հարուստ գրադարան, ուր ժողովված են միութենական հանրապետությունների աշխատավորների կյանքն արտացոլող հետաքրքրական նյութեր, նկարազարդ ալբոմներ։ Վերջերս կազմակերպվել էր թեմատիկ երեկույթ՝ «Մեր աշխատանքը քեզ, հայրենի՛ք», որտեղ ելույթ ունեցան ինտերնացիոնալ կոմպլեկտների ու բրիգադաների ներկայացուցիչները։ Նրանք պատմեցին, թե ինչպես է բարեկամությունն օգնում՝ ավելի լավ աշխատելու և հաղթահարելու դժվարությունները։ Կոմբինատի աշխատավորները բազմաթիվ բարեկամներ ունեն միութենական հանրապետություններում և արտասահմանում։

Տարբեր ազգությունների բանվորների համատեղ աշխատանքը, գաղափարական-դաստիարակչական պատշաճ գործունեությունը կոմբինատում ստեղծել են մի համերաշխ աշխատանքային ընտանիք։ Բոլոր բանվորներին միավորում է այն գիտակցությունը, որ իրենք կոլեկտիվի իրավահավասար անդամներն են, իրենց ձեռնարկության իրավահավասար տերերը, որ ամեն մեկի արժանիքը որոշվում է ոչ թե ազգային պատկանելությամբ, այլ ընդհանուր գործում ներդրած աշխատանքային ավանդով։ Եվ դա տալիս է իր արդյունքը։ 1973 թվականի բոլոր եռամսյակներում տեքստիլագործներն իրենց ձեռքում են պահել հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության և թեթև արդյունաբերության աշխատողների արհմիությունների կոմիտեի փոխանցիկ դրոշը։ Կոլեկտիվի ընդհանուր ժողովում տեքստիլագործներն ընդունեցին հանդիպական պլան, որով նրանք պարտավորվեցին 1974 թ. երկրին տալ մեկ միլիոն երկու հարյուր հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

Եղբայրական հանրապետությունների կոլեկտիվների հետ ամենօրյա համագործակցության կարգավորմանը մեծ ուշադրություն է նվիրում երկաթուղային հանգույցի կուսակցական կոմիտեն։ Սոցիալիստական մրցության պարտավորություններով նրանք կապված են Քութայիսիի, Սամտրեդիի, Կիրովաբադի երկաթուղայինների հետ. աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության մարզում կոմիտեն մեծ նշանակություն է տալիս աշխատանքի առաջավոր մեթոդների փոխանակմանը։ Հաճախ կազմակերպվում են հանդիպումներ, որտեղ երկաթուղայինները փոխանակում են աշխատանքի փորձը, օգնում իրար։



Լենինական, Քութայիսի, Կիրովաբադ և Տարտու քաղաքների աշխատավորների սոցիալիստական մրցությունը եղբայրական համագործակցության կոնկրետ արտահայտությունն է, լենինյան ինտերնացիոնալիզմը գործողության մեջ։ Անցյալ տարի մենք նշեցինք այդ արդյունավետ համագործակցության 25-ամյակը։ Այդ մրցությունում հաղթանակեց, ամենից առաջ, լենինյան ազգային իմաստուն քաղաքականությունը։

Սոցիալիստական մրցությունը, փոխայցելությունները, նամակագրությունը դարձել են ինտերնացիոնալ կապերի ամրապնդման, առաջավոր փորձի ուսումնասիրման և ընդհանրացման լավագույն միջոց։ Ամեն տարի քաղաքները եղբայրաբար սոցիալիստական փոխպարտավորություններ են վերցնում, համատեղ ամփոփում դրանց կատարումը, միմյանց իրազեկ դարձնում նշանակալի բոլոր իրադարձություններին։ Լենինականում ստեղծվեց Բարեկամության զբոսայգի, որտեղ ծառեր տնկեցին մեր բարեկամները։ Հայկական հողում աճում են ադրբեջանցու, վրացու, էստոնացու ձեռքով տնկված ծառերը. քաղաքի կենտրոնում բարձրացված աշխատանքային փառքի դրոշին մոտեցան հայը, վրացին, ադրբեջանցին, էստոնացին։ Պայմանական սիմվոլիկա չէ այս ամենը։ Նրանց բոլորին միավորում է մի ընդհանուր նպատակ— հոգևոր ուժերի ողջ նվիրումով աշխատել հանուն հայրենիքի բարօրության, պատվով կատարել հնգամյակի վճռական տարվա առաջադրանքները, պայմաններ ստեղծել որոշիչ տարվա, ինչպես և ամբողջ հնգամյակի առաջադրանքների կատարման համար։

Ինտերնացիոնալ դաստիարակությանը մեծ նշանակություն են տալիս քաղաքի բուհերի, միջնակարգ ուսումնական հաստատությունների, հանրակրթական դպրոցների կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները։ Նալբանդյանի անվան մանկավարժական ինստիտուտն ավանդական սերտ կապեր ունի Քութայիսիի, Կիրովաբադի, Նիկոլաևի, Պյատիգորսկի մանկավարժական ինստիտուտների հետ։

Սովորող երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակության գործը գլխավորում և կոորդինացնում է կոմերիտմիության քաղաքային կոմիտեն։ Բազմակողմանի աշխատանք է կատարում քաղկոմին կից ստեղծված ինտերնացիոնալ բարեկամության ակումբը, որը ղեկավարում է քաղաքի 63 ակումբներ, այդ թվում 13-ը՝ արդյունաբերական ձեռնարկություններում, 13-ը՝ ուսումնական հաստատություններում, 37-ը՝ միջնակարգ դպրոցներում։ Ակումբների անդամների ընդհանուր թիվը հասնում է 1700 մարդու։ Կոմերիտմիության քաղկոմի ԻԲԱ-ի միջոցառումներից կարելի է նշել երիտասարդության համաքաղաքային փառատոնը։ Դրա ծրագրում եղել են՝ լատինաամերիկյան երիտասարդության պայքարի հետ համերաշխության համաքաղաքային երեկույթ, մարզական օր, պատանի նկարիչների աշխատանքների՝ «Աշխարհը իմ աչքերով» ցուցահանդեսը, կինոփառատոն, բարեկամության երեկո, որին ներկա էին միութենական հանրապետությունների երիտասարդության ներկայացուցիչները։

Լենինականի աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործում նպատակասլաց աշխատանք են կատարում քաղաքային «Բանվոր» թերթը և տեղական ռադիոհաղորդումների խմբագրությունը։

Այսպիսով, ինչպես Լենինականում, այնպես էլ ողջ հանրապետությունում, ձեռնարկվում են բազում միջոցառումներ։ Գլխավորը, սակայն, ոչ թե քանակն է, այլ որակը, դրանց արդյունավետությունը։ Եվ այդ ձեռք է բերվում

ոչ թե մեկ կամ մի քանի տարվա աշխատանքով, այլ կոմունիստական կուսակցության երկարատև, սիստեմատիկ գործունեությամբ։ Գնահատելով մեր հանրապետության անցած կեսդարյա ուղին՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Բրեժնևն ասաց. «Իրենց հանրապետության նկատմամբ հայրենասիրական բարձր ոգին հայերի, ինչպես որ սովետական մյուս բոլոր ժողովուրդների մեջ, զուգորդվում է առավել լայն առումով հայրենասիրական ոգու հետ՝ նվիրվածությամբ ու սիրով մեր ընդհանուր մեծ սոցիալիստական հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության... հանդեպ... Սովետական Հայաստանի ժողովուրդը՝ կոմունիստներն ու անկուսակցականները, բանվորությունը, գյուղացիությունն ու ինտելիգենցիան, հայրենասիրության ոգին սքանչելիորեն զուգորդում են սովետական մարդու մի այլ, ոչ պակաս արժեքավոր, հատկության՝ ինտերնացիոնալիզմի հետ» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 251)։

Գոհունակությամբ ընկալելով այս բարձր գնահատականը, հանրապետության կուսկազմակերպությունները ձգտում են առավել բարելավել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործը, վերացնել դրանում դեռևս գոյություն ունեցող լուրջ թերությունները։ Գաղտնիք չէ, որ դեռ ցածր է կուսակցական շատ կոմիտեների աշխատանքի որակը, միջոցառումները կազմակերպվում են անսիստեմ, չի վերացված ֆորմալիզմն այդ գործում։ Բանավոր ու տպագիր պրոպագանդայի ոլորտում գոյություն ունի մակերեսային մոտեցում— ժողովուրդների բարեկամության ու ինտերնացիոնալ դաստիարակության դրսևորում են համարվում միայն պատվիրակությունների փոխայցելությունները (որոնք, ի դեպ, հաճախ վերջանում են աղմկոտ, անչափ ճոխ հյուրասիրություններով՝ պետության հաշվին), տասնօրյակները, մշակույթի օրերը, հանդիպումները, երեկոները... Մեր մամուլը, բանավոր պրոպագանդայով ու ագիտացիայով զբաղվողները դեռևս չեն կարողանում լիովին բացահայտել ու ցույց տալ ինտերնացիոնալիզմի՝ սոցիալական կապի այդ յուրահատուկ տեսակի հարցերը, թույլ են պրոպագանդում դրա դրսևորումներն ընդհանուր գործում եղած աշխատանքային ավանդում, սոցիալիստական համակեցության կանոնների պահպանման, սոցիալիստական բարոյականության սկզբունքների, ՍՍՀՄ քաղաքացու պարտականությունների կատարման ասպարեզում, կենցաղում և կյանքում։

* * *

«Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման հիսնամյակի մասին» զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն ասաց. «...ամեն մի ազգության կոմունիստներից Լենինը միշտ էլ հստակ ու սկզբունքային դիրք է պահանջել ազգային հարցում, այդտեղ թույլ չտալով ոչ մի զիջողություն ու ներողամտություն։ Լենինը միշտ էլ անխնա պայքար է մղել կոմունիստների շարքերում նացիոնալիզմի ու մեծապետական շովինիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ»։

Մեր օրերում ևս աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործը չի կարող հաջողությամբ լուծվել առանց նացիոնալիզմի, ազգային սահմանափակության ու սնապարծության դեմ մղվող հարձակողական ակտիվ պայքարի։ Հանրապետության կուսկազմակերպություններն իրենց աշխատանքում հաշվի են առնում առավել ծավալվող մշակութային կապերը արտասահմանյան երկրների հետ. ինչպես հայտնի է, ծանր ճակատագրի բերումով, աշ-



խարհի բազմաթիվ երկրներում ցրված են մոտ մեկ և կես միլիոն հայեր։ Մեծ մասամբ Սովետական Հայաստանը պաշտպանող սփյուռքահայերի քաղաքական կուսակցությունների և հոսանքների կողքին, դեռևս գործում է հակահեղափոխական «դաշնակցություն» կուսակցությունը, որը 1920 թ. վտարվել է հանրապետությունից։ Այն մղում է հակասովետական, նացիոնալիստական քայքայիչ պրոպագանդա, քարոզում հայ ազգի բացառիկությունը, ձգտում է սեպ խրել մեր երկրի ժողովուրդների բարեկամության մեջ։ Բուրժուական գաղափարախոսության ներթափանցման և, մասնավորապես, դաշնակցական նացիոնալիստական, հակասովետական կատաղի պրոպագանդայի դեմ մղվող պայքարը հանրապետության կուսկազմակերպությունների գործունեության կարևորագույն մասն է։ Այդ աշխատանքը կատարվում է մեր մամուլի, բանավոր պրոպագանդայի ու ագիտացիայի միջոցով։

Բուրժուական նացիոնալիզմի էությունն այն է, որ աղավաղված է արտացոլում սոցիալական իրականությունը— մարդկանց ազգային կապերը կտրվում են սոցիալական հարաբերությունների ողջ կոմպլեքսից, և հասարակության զարգացման ոլորտում ազգի դերը համարվում է միակ վճռականն ու բացարձակը։ Գաղափարախոսական այս բազիսի վրա աճում են բուրժուական, ինչպես և դաշնակցական թունոտ հակակոմունիզմի սերմերը. այդ հակակոմունիզմը ձգտում է պառակտել ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամությունը, հայտարարելով, թե մեր երկրում ազգերը դարձել են բեռ, և որ կոմունիստները, իբր, պայքարում են ազգերի դեմ։ Նրանք ձևացնում են, թե չեն տեսնում և չեն հասկանում մեր կյանքի իսկական պրոցեսները և ՍՄԿԿ ազգային քաղաքականությունը։ Սոցիալական առաջադիմության համար բեռ են ոչ թե ազգերը, այլ նացիոնալիզմի վերապրուկները, որոնց դեմ և պայքարում են կոմունիստները։ Բոլոր ազգերն ու ժողովուրդները մեր երկրում հպարտանում են, որ պատկանում են մարդկանց պատմական նոր հանրությանը՝ սովետական միասնական ժողովրդին, համազգային հպարտությամբ են տոգորվում իրենց սոցիալիստական հայրենիքի նվաճումների համար։

Նացիոնալիզմի վերապրուկները, ազգային սահմանափակության ու սնապարծության դրսևորումները կարող են ունենալ նաև դրսի սադրանքների հետ չկապված պատճառներ։ Նման երևույթներ տեղի են ունենում կուլտուրական և տնտեսական շինարարության մեջ «իրենց» և «ուրիշների» ծառայությունների սուբյեկտիվ, միակողմանի գնահատման հետևանքով, երբ հաջողությունների համար օրինական ազգային հպարտությունը նենգափոխվում է ինքնահիացումով, ամեն ինչ վերագրվում է իրեն, լռության մատնելով կամ նսեմացնելով փոխօգնության, եղբայրական համագործակցության դերը։

Նման երևույթներից է և այն, երբ գիտության, կուլտուրայի, գրականության, արվեստի, սպորտի այս կամ այն գործչի գնահատման, մեծարման հիմնական սկզբունքը համարվում է միայն ազգային պատկանելությունը, անկախ նրանից՝ տվյալ անձը առնչություն ունի՞ արդյոք տվյալ հանրապետության հետ, թե՞ ոչ։ Հետևելով այդ կեղծ սկզբունքին, հանրապետության մամուլում կամ հեռուստատեսության էկրաններից երբեմն մեծարվում են կուլտուրայի, գրականության և արվեստի սփյուռքահայ գործիչներ, առանց հաշվի առնելու նրանց քաղաքական, գաղափարախոսական հայացքները, դասակարգային դիրքը, նույնիսկ այն, թե նրանց ստեղծագործությունն առնչություն ունի՞ արդյոք ազգային մշակույթի հետ։

Նման երևույթները նույնպես վտանգավոր են և կարող են լրջորեն վնասել աշխատավորների, հատկապես երիտասարդության ինտերնացիոնալ դաստիարակությանը։ Կուսակցության XXIV համագումարից հետո խիստ ուժեղացավ պայքարը նման երևույթների դեմ։ 1973 թ. ամռանը Երևանի Գ. Սունդուկյանի անվան ակադեմիական թատրոնում բեմադրվեց Գ. Տեր-Գրիգորյանի «Հաջի Փայլակ» պիեսը։ Հանդիսատեսների կողմից ջերմորեն ընդունվող այս սուր հրապարակախոսական ներկայացման մեջ ծաղրվում են ազգային սնապարծության ու սահմանափակության արտահայտությունները։

Առանձին մարդիկ, ինտերնացիոնալիզմն ընդունելով որպես քաղաքական սկզբունք, կենցաղում, անձնական կյանքում դեռ լիովին չեն ազատագրվել նացիոնալիզմի նախապաշարմունքներից։ Ոմանք էլ ինտերնացիոնալիզմը պահանջում են ուրիշներից, իսկ իրենք փակում են աչքերը և չեն պայքարում ազգային սահմանափակության դրսևորումների դեմ սեփական միջավայրում։ Հանրապետության կուսկազմակերպություններն իրենց ամենօրյա աշխատանքում ձգտում են հասնել այն բանին, որ սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքները դառնան ո՛չ միայն մարդկանց աշխարհայացքի բաղկացուցիչ մաս, այլև վերածվեն սեփական խոր համոզմունքների, դառնան յուրաքանչյուր քաղաքացու բարոյական կերպարի օրգանական մասը։ Բայց այդ ևս անհնար է առանց կապիտալիզմի բոլոր վերապրուկների, կոմունիստական բարոյականության հակոտնյաների դեմ մղվող համակողմանի պայքարի։ 1973 թ. ապրիլին Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմի պլենումում քննադատվեց որոշ կուսկազմակերպությունների գործունեությունը. ներգործուն պայքար կազմակերպվեց սոցիալիստական սեփականությունը հափշտակողների, կաշառակերության, բյուրոկրատիզմի, քննադատությունն ու ինքնաքննադատությունը ճնշողների դեմ։ Բարոյական արատավոր սկզբունքներ ունեցող մարդը չի կարող ինտերնացիոնալիստ լինել։ Կապիտալիզմի բոլոր վերապրուկները փոխկապված են և ազդում են միմյանց վրա։

Ինտերնացիոնալ դաստիարակությանը լուրջ վնաս կարող է հասցնել սուբյեկտիվիստական, հակապատմական մոտեցումը անցյալի կուլտուրական ժառանգությանը, որի հետևանքով երբեմն առանձին գործիչներ, հասարակական երևույթներ, արվեստի ստեղծագործություններ ու գրական երկեր չեն դիտվում դասակարգային, մարքս-լենինյան դիրքերից։ Իսկ ոչ-դասակարգայինից շատ հեշտ է գլորվել այն դիրքերը, ուր միակ չափանիշը ազգայինն է։

Մենք միշտ հիշում ենք Լ. Ի. Բրեժնևի այն խոսքերը, որ ասաց նա, այցելելով Մատենադարան. «Եվ իրոք, ընկերներ, այսօր անհավատալի է թվում, որ հին կուլտուրայի տեր մի ժողովուրդ, որը տակավին IV դարում ստեղծել է իր դպրությունը, հեղափոխությունից առաջ ավելի քան 90 տոկոսով անգրագետ էր։ Եվ ահա այդ ժողովուրդը, հասարակ հայ աշխատավորները, հովիվներն ու հողագործները, որմնադիրներն ու արհեստավորները սերնդե-սերունդ փոխանցել են հին մատյանների ու ձեռագրերի էջերը։ Նրանք այդ էջերը պահպանել են որպես ամենաթանկագին մասունք։ Բայց նրանք նույնիսկ չէին էլ կարողանում դրանք կարդալ» (Լենինյան կուրսով, հ. 3, էջ 230)։

Կոմունիստները, մարքսիստ-լենինյանները այսպես են կարողանում գնահատել հասարակ ժողովրդի սերը իր հին կուլտուրայի հանդեպ։ Եվ ժողովուրդը հպարտ է նրանով, որ սոցիալիզմն իրեն տվեց համատարած գրագիտու-



թյուն, զարգացրեց ինտելեկտը, անցյալի կուլտուրական ժառանգությունը դարձրեց իր իսկական սեփականությունը։ Եվ նա՝ այդ հովվի ու որմնադրի ժառանգը, դաստիարակված մարքսիզմ-լենինիզմի ոգով, այսօր անցյալից վերցնում է ողջ առաջադիմականը, դեմոկրատականը, ժողովրդականը, որ կա այդ կուլտուրայի մեջ և օգնում է իրեն՝ կառուցելու նոր կյանք։

Բայց երբեմն պատահում են առանձին մարդիկ, որ ցուցաբերում են ոչ դասակարգային մոտեցում, պրոպագանդում են իրենց ձեռքն ընկած ամեն բան։ Առանձին հրապարակումներում իդեալականացվում է անցյալը, որոշ հեղինակներ չեն կարողանում անցյալի ժառանգության դեմոկրատական բովանդակությունը զատորոշել պահպանողականությունից։

1972 թ. փետրվարին «Սովետական Հայաստան» թերթը խիստ քննադատեց դոցենտ Ց. Սիմոնյանի «Հայկական դպրոցի և մանկավարժական մտքի պատմության ուրվագծեր» գիրքը։ Հեղինակին չի հաջողվել գրքում բացահայտել դաստիարակության դասակարգային էությունը տարբեր դարաշրջաններում. ավելին, նա իդեալականացնում է անցյալը, առանց որևէ հիմքի հայտարարելով, թե V դարում Հայաստանի պետական դպրոցներում իշխանների ու գյուղացիների երեխաները սովորում էին միասին, թե այդ դպրոցներն իրենց հիմնադրման օրից կրել են աշխարհիկ, դեմոկրատական բնույթ, և թե դպրոցի դռները բաց են եղել հասարակության բոլոր խավերի առաջ և ոչ մի խտրականություն չի եղել։

Պատմական անցյալի նկատմամբ ոչ դասակարգային մոտեցման օրինակ է Հ. Փափազյանի «Հայ-իրանական ռազմական համագործակցությունը 1726—1736 թթ. և քաղաքական իրադրությունը Արևելյան Հայաստանում Նադիր շահի ժամանակ» հոդվածը, որը տպագրվել է «Բանբեր Երևանի համալսարանի» հանդեսի 1972 թ. № 2-ում։ Հակառակ պատմական ճշմարտության, հեղինակը նկարագրում է շահի իդեալական պատկերը իբրև ո՛չ միայն ֆեոդալական վերնախավի, այլև հայ ժողովրդի բարերար, հայտարարում, թե հայ աշխատավորները շահի նկատմամբ տածում էին «ավելի, քան վստահություն»։ Բացի դրանից նա թույլ է տալիս պատմական փաստերի նենգափոխում, կամայականորեն մեկնաբանում հայերի ռուսական օրիենտացիայի ձևավորման վճռական ժամանակաշրջաններից մեկը։

Ինտերնացիոնալիզմը մեզ համար շեշտված դասակարգային հասկացություն է. դա կրոնական սեր չէ դեպի իր մերձավորը, և ոչ բոլոր մարդկանց փոխադարձ սեր՝ անկախ դասակարգային դիրքերից։ Մեր դասակարգային թշնամիներն ու հակառակորդները, ինչպես երևում է, լավ են ըմբռնել այդ ճշմարտությունը։ Ըմբռնել են նաև այն, որ նացիոնալիզմը, որպես պրոլետարական ինտերնացիոնալիզմի հակոտնյա, մեր հասարակությունում զուրկ է ամեն մի սոցիալական հողից և վաղուց արդեն ի վիճակի չէ քիչ թե շատ էականորեն ազդելու սովետական մարդկանց հասարակական գիտակցության զարգացման ընթացքի վրա։ Եվ մեր երկրում նացիոնալիստական վերապրուկներն ուռճացնելու իր փորձերում բուրժուական պրոպագանդան որոնում է ուրիշ, դրանք բորբոքող այլ դյուրավառ նյութեր։ Այդ ամենի հետևանքով հրապարակի վրա նորից տեսնում ենք հին, մորուքավոր, այսպես կոչված՝ «վերդասակարգային» կոսմոպոլիտիզմը, որը հակադրվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմին և առաջին հայացքից թվում է նացիոնալիզմի հակոտնյա։ Այն ամենից հաճախ դրսևորվում է գիտության, արվեստի մեջ, երիտա-

սարքության հետ տարվող աշխատանքում։ Իրականում, երբ այն ստուգում ենք լակմուսով, անմիջապես ներկվում է բուրժուական դասակարգային գաղափարախոսության գույնով, և կոչված է կատարելու նույն դերը, ինչ նացիոնալիզմը, այսինքն՝ ծառայելու սոցիալիզմի, կոմունիստական գաղափարախոսության քայքայմանը։

Քողարկվելով մոդեռնիզմի տեսությամբ ու պրակտիկայով, արվեստի բնագավառի կոսմոպոլիտները մարտնչում են լենինյան կուսակցականության, դասակարգայնության ու ժողովրդայնության, սոցիալիստական ռեալիզմի և ստեղծագործական աշխատանքի կուսակցական ղեկավարման դեմ։ 1973 թ. գարնանը գաղափարախոսական աշխատողների ակտիվում այդ հայացքներն արժանացան սկզբունքային կուսակցական գնահատականի, կուսկազմակերպությունների նպատակը դարձավ պայքարել նման երևույթների դեմ՝ ստեղծագործական և գիտական ինտելիգենցիայի շրջանում։

Հայկական ՍՍՀ և Հայաստանի կոմկուսակցության 50-ամյակի կապակցությամբ Երևանում կայացած հանդիսություններում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Բրեժնևն ասաց. «Սովետական Հայաստանի պատմական փորձը կրկին ու կրկին համոզում է, որ ազգի իսկական ծաղկումը ձեռք է բերվում ոչ թե ազգային պարփակման ու մեկուսացման ուղիներով, այլ սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների եղբայրական ընտանիքում՝ փոխադարձաբար միմյանց հարստացնող ներդաշնակ զարգացման շնորհիվ»։

Հայ ժողովուրդը, Հայաստանի բոլոր աշխատավորները անչափ բարձր են գնահատում սոցիալիստական ազգերի ու ժողովուրդների մեծ բարեկամությունը, լի են՝ սովետական ժողովրդի միասնական ընտանիքում, կոմունիստների լենինյան կուսակցության ղեկավարությամբ, դեպի կոմունիզմ ընթանալու ձգտումով ու վճռականությամբ։

# ԲԱՆԻՄԱՑՈՒԹՅԱՄԲ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՕԲՅԵԿՏԻՎ ՕՐԵՆՔՆԵՐԸ

**Մ. Հ. ԱՆՏՈՆՅԱՆ**

Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՍՄԿԿ XXIV համագումարը հատկապես շեշտեց էկոնոմիկայի կառավարման սիստեմի հետագա կատարելագործման խիստ անհրաժեշտությունը։ Խոսքն ըստ էության այն մասին է, թե մենք ինչպես ավելի ճիշտ վարենք հասարակության գործունեությունը տնտեսական ու սոցիալական զարգացումն արագացնելու նպատակով, ապահովենք առկա հնարավորությունների առավել լիակատար օգտագործումը, հարյուր հազարավոր կոլեկտիվները, տասնյակ միլիոնավոր աշխատավորներին ավելի սերտորեն միավորենք կուսակցության քաղաքականության գլխավոր նպատակների շուրջը։ Ուստի, ինչպես նշեց XXIV համագումարը, կառավարման հարցերը վերաբերում են ոչ միայն ղեկավարներին և մասնագետներին, այլ կուսակցական, սովետական, տնտեսական բոլոր կազմակերպություններին, աշխատավորների ողջ կոլեկտիվներին։ Հետևաբար, կառավարման սիստեմի օղակների հետագա բարելավումը, ռացիոնալ կատարելագործումը սոցիալ-տնտեսական բնագավառներում կուսակցության ամբողջ գործունեության կարևոր բաղկացուցիչ մասն է։*

Կառավարման սիստեմի կատարելագործման եղանակներից մեկը, սոցիալական և տնտեսական օրենքների օգտագործման մեխանիզմի ըստ ամենայնի բարելավումն է։ Կուսակցության XXIV համագումարի դիրեկտիվներում պահանջվում է կառավարման բնագավառում «...ուշադրությունը կենտրոնացնել ժողովրդական տնտեսության պլանային կառավարման պրակտիկայում տնտեսական օբյեկտիվ օրենքների օգտագործման առավել արդյունավետ ձևերի ու մեթոդների մշակման վրա...» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 325)։ Պետք է ասել, որ օրենքների օգտագործման մեխանիզմի հարցը մեր սոցիոլոգիական և տնտեսագիտական գրականության մեջ, չնայած նրա խիստ ակտուալությանը, դեռևս անբավարար է մշակված։

Սոցիալական և տնտեսական օրենքները, որոնք գործում են օբյեկտիվորեն, անկախ մարդկանց գիտակցությունից ու կամքից, արտահայտում են տնտեսական և սոցիալ-քաղաքական պրոցեսների ներքին, անհրաժեշտ, կայուն, կրկնվող, էական կապն ու հարաբերությունները, որոշակի կարգը։ Իսկ այդ պրոցեսների ինտենսիվությունը, բարձր արդյունավետությունը, զարգացման տեմպերը կախված են մարդկանց ակտիվ գործունեությունից, հասա-

ցակության կառավարման պրոցեսում օբյեկտիվ օրենքների ճիշտ ճանաչումից և բանիմաց օգտագործումից։

Հասարակության գիտական կառավարման համար բավական չէ միայն սոցիալական զարգացման օրենքների ճանաչումը։ Անհրաժեշտ է նաև իմանալ այդ օրենքների ճիշտ օգտագործման մեխանիզմը։ Առանց դրանց հասարակության գիտական կառավարման մասին խոսք չի կարող լինել։ Ավելին, հասարակության զարգացման օրենքների ճիշտ օգտագործումը կառավարման սուբյեկտիվ գործոնի ամենակարևորագույն ֆունկցիան է։

Վերոհիշյալից կարելի է եզրակացնել, որ օրենքների ճանաչման պրոցեսի սուբյեկտիվ գործոնի բովանդակությունն ու դերը չի կարելի նույնացնել այդ նույն օրենքների օգտագործման սուբյեկտիվ գործոնի բովանդակության ու դերի հետ։ Եթե ճանաչման սուբյեկտիվ գործոնն իր մեջ ընդգրկում է, ամենից առաջ, օրենքների ճանաչման մակարդակը, նրանց էությունն ու գործողության մեխանիզմը, ապա օրենքների օգտագործման սուբյեկտիվ գործոնը պատասխանում է այն հարցին, թե սուբյեկտիվ գործոնը որչափով է մարդկանց գործունեությունը համապատասխանեցնում հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների պահանջներին։

Մի բան է հաշվի առնել օբյեկտիվ օրենքի գործողությունը, նրա օբյեկտիվ բնույթը, այլ է, երբ մարդիկ իրենց առջև խնդիր են դնում օգտագործել այդ օրենքն այս կամ այն որոշակի նպատակի հասնելու համար (իհարկե, դրանց միջև եղած սահմանը պայմանական է)։

Իսկ որպիսի՞նն է օբյեկտիվ օրենքների օգտագործման մեխանիզմը հասարակության կառավարման պրոցեսում։

Ամենից առաջ, շեշտենք մի կարևոր հանգամանք։ Սոցիալական օրենքների օգտագործումը հասարակության գիտական կառավարման ասպարեզում խոշոր արվեստ է, որն առաջին հերթին պահանջում է, ելնելով օրենքի էության և պահանջմունքների ճանաչումից, ստեղծել նոր միջավայր, նոր օբյեկտիվ պայմաններ դրանց (օրենքների) օպտիմալ գործողության համար։ Իսկ քանի որ օրենքների գործողությունն իրականացվում է մարդկանց, սուբյեկտի գործունեության միջոցով, ուստի, օրենքների օգտագործման մեխանիզմ ասելով նկատի ունենք այնպիսի պայմանների ստեղծում (այդ թվում նաև տնտեսական), որոնց առկայության դեպքում ժողովրդական մասսաները գործում են օպտիմալ արդյունավետ, այլ ոչ ուրիշ կերպ։ Եթե տվյալ պայմանները չեն փոխվում, եթե չեն ստեղծվում նոր պայմաններ, նոր միջավայր, ապա անհնար է օրենքների օգտագործումը։

ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ ժողովրդական տնտեսության. ողջ հասարակության ղեկավարումը կատարելագործելու իր աշխատանքում կուսակցությունն իրականացնում է արտադրության վրա ներգործելու, տնտեսական լծակների օգտագործման հետ կենտրոնական մարմինների դիրեկտիվ առաջադրանքների ճիշտ զուգորդման կուրս։ Այդ լծակները՝ տնտհաշվարկը, գները, շահույթը, վարկը, նյութական խրախուսման ձևերը և այլն, կոչված են ապահովելու այնպիսի տնտեսական պայմաններ, որոնք նպաստեն արտադրական կոլեկտիվների, միլիոնավոր աշխատավորների արդյունավետ գործունեությանը, երաշխավորեն նրանց աշխատանքի արդյունքների հիմնավորված գնահատականը։ Աշխատանքի և սպառման չափը ճշգրիտ որոշելու անհրաժեշտությունը պահանջում է հմտորեն օգտագործել նշված լծակները, նոր պայմանները, կատարելագործել ապրանքա-դրամական հարաբերությունները։



Այդ բոլորը նշանակում է տնտեսական օրենքների օպտիմալ, առավելագույն օգտագործում։

Մարդկանց, հիմնարկությունների, կառավարման օրգանների միջև ստեղծված նոր պայմանների ու հարաբերությունների գիտակցական վերարտադրման ցայտուն օրինակ է տնտեսական նոր ռեֆորմը։ Վերջինիս կառուցվածքն ունի երեք հիմնական տարր. նախ, աշխատողների նյութական շահագրգռության վաղուց գոյություն ունեցող տենդենցի հետագա ուժեղացումն ու զարգացումը, որը խիստ բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը. երկրորդ, ձեռնարկությունների տնտհաշվարկի հետագա զարգացումն ու կատարելագործումը. երրորդ, ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնության մակարդակի բարձրացումը։

Նոր պայմանների կառուցվածքի այդ բոլոր տարրերը չի կարելի համարել վերջնական։ Փորձը ցույց է տալիս, որ դրանք հետագա կատարելագործման, զարգացման, հարստացման կարիք ունեն, ինչպես և հասարակության կառավարման ողջ սիստեմը։

Այսպիսով, կուսակցությունը ելնում է այն բանից, որ հասարակության կազմակերպման ու կառավարման մեխանիզմը պետք է հարատև զարգանա և կատարելագործվի, քանի որ շարունակ զարգանում է հասարակության կյանքը՝ նրա տնտեսական, սոցիալ-քաղաքական հարաբերություններն ու գաղափարա-կուլտուրական կյանքը։ Այդ բնագավառներում կատարվող փոփոխությունները անխուսափելիորեն պահանջում են համապատասխան փոփոխություններ կառավարման ձևերի, եղանակների և միջոցների բնագավառում։ Այս ամենը նորանոր հարցեր են հարուցում հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների հմուտ օգտագործման մեխանիզմի ոլորտում, շեշտելով, որ այդ մեխանիզմն ինչ-որ անշարժ, անփոփոխ, քարացած երևույթ չէ։

Այս առումով, պետք է հաշվի առնել տեսական երեք դրույթներ, որոնք վերաբերում են օրենքների օգտագործման այս կամ այն աստիճանին։

Նախ, սոցիալական օրենքների յուրահատուկ օգտագործում է և այն, որ հասարակության անդամները, չճանաչելով օրենքների էությունը, լրիվ ենթարկվում են դրանց, անկախ այն բանից գիտակցում են նրանք այդ, թե ոչ։ Այս դեպքում մարդիկ օբյեկտիվորեն գործում են ըստ օրենքների պահանջմունքների։ Այս կամ այն ձևով ու աստիճանով օրենքների այդ տիպի օգտագործումը տեղի է ունեցել մինչ սոցիալիստական հասարակության զարգացման բոլոր էտապներում։ Այս պայմաններում հասարակության, ընդհանուր առմամբ, իսկական գիտական կառավարման մասին դժվար է խոսել։

Երկրորդ, ինչպես օրենքների ճանաչումը, այնպես էլ դրանց օգտագործումը ոչ թե ստատիկ, այլ խիստ դինամիկ պրոցես է։ Մինչ սոցիալիստական հասարակությունը, այդ թվում նաև կապիտալիզմը, չի վերացնում հասարակական զարգացման տարերայնությունը։ Կապիտալիզմի տնտեսական օրենքները գործում են տարերայնորեն. մարդիկ միայն էմպիրիկ կերպով են հաշվի առնում տնտեսական օրենքների առանձին կողմերն ու պահանջմունքները, բայց ոչ դրանց ամբողջությունը։

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելն արմատական փոփոխություն է հարուցում տարերայինի և գիտակցականի հարաբերակցության մեջ, վերջինիս օգտին։ Սոցիալիզմն ու կոմունիզմը կառուցվում են օբյեկտիվ օրենքների ճանաչմամբ և օգտագործմամբ։

Երրորդ, հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքների ճանաչողու-



4. «Լենինյան ուղով», № 2

*թյան և օգտագործման չափը, ատիճանը շարունակ աճում է, կատարելագործվում: Որքան խորն են մարդիկ ճանաչում օրենքները և հմուտ օգտագործում դրանք, այնքան ավելի արդյունավետ կարող են ներգործել սոցիալ-տնտեսական իրադարձությունների ընթացքի վրա և վարել դրանք:*

*Օբյեկտիվ օրենքների օգտագործման կոնկրետ մեխանիզմի պրոբլեմը հասարակության, նրա գիտական կառավարման համար հսկայական տեսական և պրակտիկ նշանակություն ունի: Հատկապես դա վերաբերում է մեր օրերին: Դա բացատրվում է նրանով, որ զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում անհամեմատ լայնանում է օբյեկտիվ օրենքների գործողության ոլորտը և առավել լրիվ չափով, քան առաջ, դրսևորվում են դրանց մեջ պարունակվող հասարակական պրոգրեսի արագացման նոր հնարավորություններ:*

*Սոցիալական և տնտեսական օրենքների ամբողջ սիստեմի գիտակցական և պլանաչափ օգտագործումը՝ հասարակության կառավարման սուբյեկտիվ գործոնի նոր ֆունկցիան է, որը գոյություն չուներ և չէր կարող գոյություն ունենալ մինչ սոցիալիզմը: Այդ նոր ֆունկցիայի իրագործումը հասարակության կառավարման օբյեկտիվ պայմանների և սուբյեկտիվ գործոնի շատ բարդ փոխներգործությունն է:*

*Տվյալ դեպքում կառավարման օբյեկտիվ պայման է հասարակության նյութական և գաղափարա-կուլտուրական կյանքի ամբողջությունը, դրա հնարավորություններն ու ներունակությունն իրենց զարգացման բոլոր օրենքներով: Իսկ բուն կառավարումը, դրա մեթոդները, ձևերը, եղանակները, որոնք իրագործվում են վարող սիստեմի կողմից նշված օբյեկտիվ պայմանների նկատմամբ, հանդես է գալիս որպես սուբյեկտիվ գործոն: Այդ վերջինը կյանքի է կոչված օբյեկտիվ օրենքներն օգտագործելու համար:*

*Սոցիալական կյանքի օրենքների ճանաչումն ու օգտագործումը՝ մարդկանց գիտակցական և կազմակերպված գործունեության ու գիտական կառավարման բարձր ձևն է:*

*Սոցիալիստական և կոմունիստական շինարարության կառավարման ընթացքում սոցիալիստական պետությունը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, օգտագործում է ինչպես հասարակության վերափոխման ընդհանուր, այնպես և սպեցիֆիկ, տնտեսական օրենքները: Սոցիալիստական սիստեմի զարգացման փորձը ավելի ու ավելի պարզորոշ վկայում է, որ «...սոցիալիզմի հաջող կառուցման համար անհրաժեշտ է ելնել սոցիալիստական շինարարության ընդհանուր օրինաչափություններից, ինչպես նաև հաշվի առնել յուրաքանչյուր երկրի կոնկրետ առանձնահատկությունները» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 253):*

*Բացի ընդհանուր օրինաչափություններից (որոնց մասին տվյալ հոդվածում հնարավորություն չունենք մանրամասն խոսելու), գոյություն ունեն նաև սպեցիֆիկ, տնտեսական օրենքներ, որոնք հաշվի են առնվում ու օգտագործվում հասարակության կառավարման պրոցեսում: Այդպիսիք են, օրինակ, կոմունիստական ֆորմացիայի հիմնական տնտեսական, ըստ աշխատանքի բաժանման, հասարակության պլանաչափ, համամասնական զարգացման օրենքները և այլն:*

*Սոցիալիզմի պայմաններում գործ ունենք օբյեկտիվ օրենքների օգտագործման սկզբունքորեն բոլորովին նոր սուբյեկտի հետ: Եթե կապիտալիզմի օրոք ինչպես օրենքների օգտագործումը, այնպես և այդ օգտագործման սուբյեկտը կրում են շատ սահմանափակ բնույթ, քանի որ այդ բոլորը կատարվում է շահագործող դասակարգի օգտին և միայն նրա ուժերով, ապա բոլորովին այլ է սոցիալիզմի պայմաններում: Այստեղ օրենքների օգտագործման և՛ սիստեմը և՛ նպատակները սկզբունքորեն ուրիշ են: Ի տարբերություն բուրժուական հասարակության, սոցիալիզմի օրոք հասարակության զարգացման օրենքների օգտագործման սիստեմի (սուբյեկտի) մեջ մտնում են. սոցիալիստական պետությունը, մարքս-լենինյան կուսակցությունը, ժողովրդական լայն մասսաներն իրենց հասարակական կազմակերպություններով: Կառավարման այդպիսի լայն ներկայացուցչական սիստեմը (սուբյեկտը)՝ ամբողջ հասարակության կոլեկտիվ բանականության արտահայտությունն է, բանականություն, որի նմանը չի եղել մինչսոցիալիստական հասարակական ամբողջ պատմության ընթացքում:*

*Սոցիալիզմի օրոք այդպիսի բանականության ձևավորման մասին հանճարեղորեն կանխատեսել է դեռ Կ. Մարքսը: Նա գտնում էր, որ ապագա սոցիալիստական հասարակության պայմաններում օբյեկտիվ օրենքները դադարում են կույր լինելուց, քանի որ մարդիկ, հասարակությունը գործում են՝ հաշվի առնելով օրենքների գործողությունը և պահանջմունքները: Այստեղ կոլեկտիվ բանականության յուրաքանչյուր օղակ, այդ թվում և լայն ժողովրդական մասսաները, մասնակցում են օրենքների ճանաչման ու օգտագործման պրոցեսին:*

*Լ. Ի. Բրեժնևը ՀամԼԿԵՄ XVI համագումարում արտասանած ճառում ընդգծեց, որ սխալ է մտածել, թե իբր տնտեսական օրենքների հետ գործ ունեն միայն մեծ գիտնականներն ու ղեկավարները: Այդ օրենքների ճիշտ հասկանալը գործելակերպի տրամաբանություն են թելադրում ոչ միայն կառավարչին, ինժեներին, գիտնականին, այլև յուրաքանչյուր շարքային բանվորին, կոլտնտեսականին:*

*Տնտեսական և այլ օբյեկտիվ օրենքների օգտագործման պրոցեսը սոցիալիզմի պայմաններում ժողովրդական մասսաների ստեղծագործության ցայտուն արտահայտությունն է: Ինքը սոցիալիզմը, կոմունիզմը՝ ժողովրդի կենդանի ստեղծագործությունն է, ժողովուրդ, որը կերտում է իր կյանքն ինքնուրույնաբար, իր փորձով լուծում հասարակության զարգացման բարդ հարցերը:*

*Օրենքների, հատկապես տնտեսական օրենքների օգտագործման ձևերը համապատասխանում են աշխատավորների և նրանց հասարակական կազմակերպությունների մասնակցության արտադրության, հասարակական գործերի կառավարմանը: Մասսաների ստեղծագործական ակտիվության այդպիսի ձևերը շատ են: Վերցնենք, օրինակ, նրանց մասնակցությունը մեր հասարակության բոլոր բնագավառների պլանավորման զարգացմանը, հետևապես, հասարակության պլանաչափ, համամասնական զարգացման օրենքի օգտագործմանը:*

*Այդ տեսակետից մեծ է աշխատավորների ամենամասսայական կազմակերպության՝ սովետական արհմիությունների դերն ու նշանակությունը, որն իր շարքերում ունի շուրջ 100 միլիոն մարդ և հանդիսանում է կառավարման, տնտեսավարման, կոմունիզմի դպրոց:*

*Արհմիությունների կարևորագույն դերը աշխատավորներին մոբիլիզացնելն է ո՛չ միայն արտադրանքի քանակական ցուցանիշների, այլև դրա բարձր որակի ապահովման նպատակով, աշխատամիջոցների, նյութական և աշխատանքային ռեսուրսների խիստ խնայողաբար օգտագործման, արտադրու-*

թյան մեջ գիտատեխնիկական նվաճումների արդյունավետ արմատավորման, աշխատանքի արտադրողականության ըստ ամենայնի բարձրացման միջոցով։ Այդ հարցերի լուծումն էական նշանակություն ունի հասարակության զարգացման պլանաչափ և այլ օրենքների ռացիոնալ օգտագործման, ինչպես նաև ժողովրդատնտեսական պլանների հաջող կատարման տեսակետից։ Այդ նպատակներին են ծառայում նաև մասսաների կողմից արտադրության կառավարմանը մասնակցելու այնպիսի գործուն միջոցները, որպիսիք են՝ բանվորական ժողովները, մշտական գործող արտադրական խորհրդակցությունները, գիտատեխնիկական, գյուտարարների և ռացիոնալիզատորների ընկերությունները, նորարարների խորհուրդները, հասարակական կոնստրուկտորական, տնտեսական, տեխնոլոգիական բյուրոները և այլն։

Վերջին տարիներին հատկապես կարևոր նշանակություն ստացան մշտական գործող արտադրական խորհրդակցությունները, որոնք ստեղծված և գործում են Միության մասշտաբով 70 հազար ձեռնարկություններում ու կառույցներում, ուր ակտիվ մասնակցում են 40 միլիոն մարդ։ Նրանք քննարկում են պլանների նախագծերը, դրանց կատարման արդյունքները, մշակում արտադրական նոր պլաններ, զբաղվում բնակարանային և կուլտուրական շինարարության, աշխատավարձի, աշխատանքի պայմանների բարելավման, պետական հիմնարկությունների աշխատանքի կատարելագործման, առևտրի, հասարակական սննդի հիմնարկությունների գործունեության և այլ հարցերով։

Էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի զարգացման ոլորտներում ժողովրդական մասսաների ակտիվ մասնակցության, ինչպես և նրանց հասարակական կառավարման գործին ներգրավելու հիմնական մեթոդներից մեկը եղել և մնում է սոցիալիստական մրցությունը։ Վերջինս սոցիալիզմի տնտեսական օրենքների օգտագործման կարևոր ձևերից մեկն է։ Հատկապես խոսքն այստեղ հիմնական տնտեսական, ըստ աշխատանքի բաշխման, ամեն ինչում խնայողաբար վերաբերվելու և այլ օրենքների մասին է։ Մեր երկրի աշխատավորները, լայնորեն ծավալելով համամիութենական սոցիալիստական մրցությունը, հաջողությամբ կատարեցին հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքները։

ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը 1974 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար համամիութենական սոցիալիստական մրցության մասին որոշման մեջ շեշտում են, որ երկրի էկոնոմիկայի հետագա զարգացման հզոր լծակը, ինչպես առաջ, մասսայական սոցիալիստական մրցությունն է, դրա հիման վրա աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության բարձրացումը։ Հնգամյակի չորրորդ տարում մրցությունը շարունակվում է հետևյալ լոզունգով՝ երկրին, ժողովրդին տալ ավելի շատ, ավելի լավորակ արտադրանք՝ առավել պակաս ծախսումներով։

Ժողովրդական մասսաների ակտիվ մասնակցությունը սոցիալիզմի տնտեսական օրենքների օգտագործմանը հսկայական չափով օգնում է յուրաքանչյուր աշխատավորին՝ ավելի արդյունավետ պայքարելու տնտեսական և սոցիալական առաջընթացի համար։ Ընդ որում, այդ պայքարում յուրաքանչյուր անհատ ավելի է բարձրացնում իր անձնական պատասխանատվությունը հանձնարարված գործի, առաջադրված պլանների կատարման նպատակով։

Ընթացիկ տարվա հունվարի 4-ին հրապարակված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը կուսակցությանը, սովետական ժողովրդին, ինչպես շեշտում է «Պրավդան», մոբիլիզացնող հսկայական ուժ ունեցող փաստաթուղթ է, որը կոմունիստներին, սովետական բոլոր մարդկանց կոչ է անում առավել հաջողությամբ կենսագործել ՍՄԿԿ XXIV համագումարի պատմական որոշումները, ավելի լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը՝ հանուն տնտեսության զարգացման պլանային առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու, արտադրանքի որակական ցուցանիշների էական բարձրացման։

«1974 թ. պլանի կատարումն ու գերակատարումը,— ասված է դիմումում, — որոշիչ նշանակություն կունենա ոչ միայն այս հնգամյակի հաջող ավարտման, այլև կարևոր մի քայլ կլինի, որը հաստատուն հիմքեր կստեղծի գալիք հնգամյակում տնտեսական պոտենցիալի հետագա աճման և ժողովրդի նյութական բարօրության ու կուլտուրական մակարդակի բարձրացման համար»։

Այս վիթխարի խնդիրների հաջող լուծման վճռական գործոնը՝ սոցիալիստական մրցության կենարար ներուժի առավելագույն օգտագործումն է։ Այս օգտագործումն ինքնին հանդիսանում է մեր հասարակության առաջընթացի կարևորագույն օրենքների լիակատար ըմբռնում և հաջող կիրառում։

«Սոցիալիստական մրցությունը, լինելով մասսաների կենդանի ստեղծագործությունը, պահանջում է ոչ միայն ակտիվորեն աջակցել և խրախուսել առաջավորներին, այլև ի հայտ բերել նրանց, ովքեր ետ են մնացել կամ բավարար բարեխղճությամբ չեն աշխատում։ Եվ դա հարկավոր է անել հրապարակայնորեն, ի լուր ամենքի, որպեսզի մարդիկ իմանան ոչ միայն նրանց մասին, ովքեր աշխատում են ուժերի լիակատար նվիրումով, այլև նրանց մասին, ովքեր աշխատում են առանց եռանդի, առանց լարվածության» (Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ կազմավորման ճիսնամյակի մասին, 1973, էջ 59)։

Աշխատավոր մասսաների կողմից տնտեսական օրենքների սիստեմի բանիմաց օգտագործման վճռական միջոցներից մեկն է էկոնոմիկայի, հասարակության ամբողջ բազմազան կյանքի արդյունավետության, ինտենսիվության ըստ ամենայնի բարձրացումը։

«Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման հիսնամյակի մասին» իր զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը, ելնելով XXIV համագումարի որոշումներից, շեշտում էր. «Այժմ գլխավոր խնդիրն է շեշտակիորեն փոխել կողմնորոշումը, շեշտը դնել տնտեսության վարման ինտենսիվ մեթոդների վրա, դրանով իսկ ապահովել էկոնոմիկայի արդյունավետության լուրջ բարձրացումը։ Խոսքն այն մասին է, որ տնտեսական աճը ավելի ու ավելի մեծ չափով տեղի ունենա աշխատանքի արտադրողականության բարձրացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցով, գործող արտադրական կարողությունների առավել լրիվ օգտագործման միջոցով, տնտեսության մեջ ներդրված յուրաքանչյուր ռուբլու, օգտագործվող մետաղի, վառելիքի, ցեմենտի, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննայի փոխհատուցումը բարձրացնելու միջոցով» (էջ 57)։

Էկոնոմիկայի, ամբողջ հասարակության գործունեության արդյունավետության բարձրացումը վճռական նշանակություն ունի նոր հնգամյակի բարդ խնդիրները լուծելու համար։ Կուսակցությունը մշակել է նաև այդ գլխավոր խնդրի լուծման հիմնական մեթոդները։ Դրանցից ամենագլխավորը՝ պլանավորման և կառավարման ամբողջ սիստեմի կատարելագործումն է։ Երկրորդ, տնտեսական այնպիսի պայմանների ստեղծումն է, որոնք մինիստրություններին ու ձեռնարկություններին կստիպեն ստանձնելու լարված պլան, մոբիլի-

զացնելու ռեզերվները, աշխատելու ավելի մեծ արդյունավետությամբ, մշտապես բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, որը Վ. Ի. Լենինի խոսքերով, «վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար»։

Ուրիշ խոսքով ասած, նշված գլխավոր խնդրի լուծման կարևոր գործոններից մեկը տնտեսական օրենքների ճիշտ օգտագործումն է։

Հատկապես աշխատանքի արտադրողականության անշեղ աճի օրենքի ճիշտ օգտագործումը խոշոր նշանակություն ունի այդ գլխավոր խնդրի լուծման համար։ Ընթացիկ հնգամյա պլանում այդ և տնտեսական մյուս օրենքները բազմակողմանիորեն օգտագործվում են։ Բավական է ասել, որ հնգամյա պլանը նախատեսում է աշխատանքի արտադրողականության աճման տեմպերի արագացում ժողովրդական տնտեսության բոլոր հիմնական ճյուղերում։ Հայտնի է, որ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին արտադրանքի աճի բաժինն իններորդ հնգամյակում արդյունաբերության մեջ կկազմի 87 տոկոս, 1966—1970 թթ. 73 տոկոսի դիմաց, շինարարության մեջ՝ 95, նախորդ հնգամյակի 58 տոկոսի դիմաց։ Ինչ վերաբերում է գյուղատնտեսությանը, ապա այստեղ արտադրանքի ամբողջ աճը ձեռք կբերվի աշխատողների թվի կրճատման պայմաններում։

Սոցիալիստական հասարակությունում ստեղծված են անհրաժեշտ պայմաններ հասարակության կառավարման, օբյեկտիվ օրենքների օգտագործման, մեր առաջընթացի տեմպերի արագացման գործում աշխատավոր մասսաների սոցիալական ակտիվության բարձրացման համար։

Ամենից առաջ անհրաժեշտ է կոմունիստական գիտակցությամբ տոգորել սովետական մարդկանց, հանձնարարված գործի համար անձնական պատասխանատվության զգացմունք ներարկել։ Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ կոմունիզմը ստեղծվում է գործարաններում ու ֆաբրիկաներում, դաշտերում ու ֆերմաներում, գիտական ինստիտուտներում ու կոնստրուկտորական բյուրոներում, ժողովրդական մասսաների գիտակից աշխատանքով։ Կուսակցությունը շարունակ ակտիվացնում է աշխատավորների ստեղծագործությունը, զարգացնում ինքնագործունեությունը և բարձրացնում նրանց դերը արտադրության, ամբողջ հասարակության կառավարման ասպարեզում։

Կոմունիզմի կառուցումը տարերային պրոցես չէ, ժողովրդական մասսաները գիտակցորեն են մասնակցում նոր հիմունքներով հասարակական ամբողջ կյանքը վերակառուցելու վիթխարի գործին։ Որքան բարձր լինի մասսաների գիտակցականության մակարդակը, այնքան հաջող առաջ կընթանա մեր ամբողջ գործը, այնքան արագ կլինեն հասարակության զարգացման տեմպերը։

Օբյեկտիվ օրենքների օգտագործմանը մասսաների ակտիվ մասնակցության մյուս անհրաժեշտ պայմանը սոցիալիստական դեմոկրատիայի հետագա ծավալումն է, նրա զարգացումն ու կատարելագործումը։ ՍՄԿԿ XXIV համագումարը շեշտեց, որ կուսակցությունը անդուլ կերպով հոգում է այն մասին, որ մեր սոցիալիստական դեմոկրատիան շարունակ զարգանա, որ յուրաքանչյուրն իրեն զգա համաժողովրդական գործով շահագրգռված և դրա համար պատասխանատվության իր բաժինը կրող քաղաքացի։

«Ժողովրդական տնտեսության կազմակերպման և կառավարման արդյունավետությունը բարձրացնելու կարևոր պայման է սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացումը, արտադրության կառավարմանը աշխատավորների մասնակցության ընդլայնումը։ Դա ապահովում է մեր տնտեսական գործունեության կարևորագույն սկզբունքի իրականացումը՝ հասարակության, կոլեկտիվի շահերի զուգորդումը յուրաքանչյուր աշխատավորի շահերի հետ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 229)։

Սոցիալիստական դեմոկրատիայի այդպիսի զարգացումը մեծ նշանակություն ունի մասսաների կողմից օբյեկտիվ օրենքների օգտագործման համար։ Միաժամանակ դեմոկրատիայի զարգացումն ու կատարելագործումը՝ հասարակության յուրաքանչյուր անդամի կազմակերպվածության, գիտակցականության, հասարակության առաջ նրա պատասխանատվության ըստ ամենայնի բարձրացումն է։

Ժողովրդական մասսաների կողմից հասարակության զարգացման օրենքների ակտիվ օգտագործման հույժ կարևոր պայմաններից մեկն էլ այն է, թե ինչ չափով է այդ օգտագործումը համընկնում նրանց նյութական և բարոյական շահերին։

ՍՄԿԿ XXIV համագումարը նշեց, որ կուսակցության քաղաքականությունը անհրաժեշտ արդյունք է տալիս այն ժամանակ, երբ ճշգրիտ կերպով է հաշվի առնում թե՛ ամբողջ ժողովրդի և թե՛ նրա բաղկացուցիչ մասերի՝ դասակարգերի ու սոցիալական խմբերի շահերը, դրանք ուղղում մի ընդհանուր հունի մեջ։

Այսպիսով, կոմունիստական կուսակցությունը սովորեցնում է, որ սոցիալական և տնտեսական օրենքների ավելի ու ավելի լիակատար տիրապետումը հնարավորություն է տալիս գործադրել նոր կարողություններ և օգտագործել զարգացած սոցիալիստական հասարակության մեծագույն առավելությունները, զգալիորեն բարձրացնել արտադրության արդյունավետությունը և այդ հիման վրա կենսագործել սոցիալ-տնտեսական միջոցառումների լայն ծրագիր։

Կուսակցությունն անում է ամեն ինչ, որպեսզի հասարակության գործունեությունը կազմակերպի օպտիմալ կերպով, ապահովի սոցիալիստական սիստեմի հնարավորությունների լիակատար օգտագործումը։ Ահա թե ինչու հասարակության կառավարման, ինչպես և սոցիալական ու տնտեսական օրենքների օգտագործման հարցերը գտնվում են կուսակցության, ողջ սովետական ժողովրդի ուշադրության կենտրոնում։

# ԿԱՐԵՎՈՐԱԳՈՒՅՆ ՊՐՈԲԼԵՄԻ ԼՈՒԾՄԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

**Ռ. Հ. ՎԱՆԵՍՅԱՆ**

*Անդասակարգ կոմունիստական հասարակարգի կառուցման գլխավոր տընտեսական խնդիրը կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն է, որի իրականացումը հնարավորություն կընձեռի մեր հասարակությանը՝ լուծելու մի շարք տնտեսական, սոցիալական և կուլտուրական արմատական խնդիրներ, այդ թվում՝ ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինումը և ձեռքի ծանր աշխատանքի վերացումը, աշխատավոր մասսաների նյութական պայմանների և կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացումը և, վերջապես, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարումը:*

*Մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև հակադրությունը ծագել է դեռևս ստրկատիրական հասարակարգում և առավել սրվել կապիտալիզմի օրոք: Կասկածից վեր է, որ այդ հակադրությունը, առաջին հերթին, պայմանավորված է արտադրության միջոցների նկատմամբ մասնավոր սեփականության, հետևապես նաև արտադրության եղանակի բնույթով: Իսկ արտադրության կապիտալիստական եղանակը ոչ թե հաղթահարում, այլ ավելի է խորացնում մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած անդունդը: Այդ կապակցությամբ Կ. Մարքսը նշել է, որ արտադրության կապիտալիստական եղանակի բնորոշ գիծը հենց այն է, որ իրարից բաժանում է աշխատանքի տարբեր տեսակները, հետևաբար՝ նաև մտավոր ու ֆիզիկական աշխատանքը կամ աշխատանքի այն տեսակները, որոնցում գերակշռում է այս կամ այն կողմը՝ բաժանելով այն տարբեր մարդկանց միջև (տե՛ս* К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 26, ч. I, стр. 422*):*

*Թեև գիտության ու տեխնիկայի ժամանակակից վիթխարի նվաճումները, ավտոմատիկայի ու կիբեռնետիկայի զարգացումը օբյեկտիվորեն կարող են և պետք է դառնան մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած հակադրության վերացման տեխնիկական հիմք, սակայն այդ հնարավորությունը կապիտալիզմի պայմաններում մնում է անիրականանալի: Իսկ ինչո՞ւ: Որովհետև տեխնիկական առաջադիմության սոցիալական բովանդակությունը և նրա զարգացման ուղղությունն ամբողջովին կախված են տվյալ արտադրաեղանակից, նրա հիմքի վրա բարձրացող հասարակական հարաբերություններից, մինչդեռ արդի կապիտալիստական արտադրաեղանակի մեջ արմատական փոփոխություններ տեղի չեն ունեցել: Ավելին, կապիտալիստական արտադրաեղանակը ծնում է նորանոր հակասություններ, դրանցից է՝ գիտատեխնիկա-*



*կան հեղափոխության ստեղծած անսահման հնարավորությունների և այն խոշընդոտների միջև եղած հակասությունները, որ հարուցում է կապիտալիզմը՝ ամբողջ հասարակության օգտին դրանք օգտագործելու համար: «Մոնոպոլիաները,— նշված է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում,— գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները լայնորեն օգտագործում են իրենց դիրքերն ամրապնդելու, արտադրության զարգացման արդյունավետությունը բարձրացնելու ու տեմպերն արագացնելու, աշխատավորության շահագործումը և ճընշումը սաստկացնելու համար» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 19):*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը հիմք ստեղծեց մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած հակադրությունների վերացման համար, որոնք հիմնականում հաղթահարվեցին սոցիալիզմի կառուցման ընթացքում: Սակայն դրանց միջև եղած էական տարբերությունները դեռևս պահպանվում են և կվերանան կոմունիզմի բարձրագույն փուլում:*

*Սոցիալիզմի ժամանակ մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած տարբերությունների սահմանման, բնույթի որոշման, դասակարգման հարցերում մեր գրականության մեջ կան տարբեր կարծիքներ: Այստեղ միայն անհրաժեշտ ենք համարում անդրադառնալ այն տեսակետին, ըստ որի մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած գլխավոր ու հիմնական տարբերությունը համարվում է բանվորների և ինժեներա-տեխնիկական անձնակազմի կուլտուր-տեխնիկական մակարդակների միջև եղած տարբերությունը:*

*Դժվար չէ նկատել, որ հարցի այսօրինակ դրվածքը ստվերի տակ է թողնում պրոբլեմի լուծման գլխավոր պայմանի՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման նշանակությունը, անտեսում ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի վիթխարի դերը այդ կարևորագույն պրոբլեմի լուծման գործում: Այն էլ այն դեպքում, երբ մարքսիզմ-լենինիզմի կլասիկները նման կարգի տարբերությունների առկայությունը սոցիալիզմի ժամանակ պայմանավորել են, առաջին հերթին, արտադրաուժերի զարգացման համապատասխան մակարդակով և արտադրահարաբերություններով:*

*Վ. Ի. Լենինը այդ տարբերությունների հիմնական պատճառը տեսնում էր տնտեսության, արտադրաուժերի զարգացման բնագավառում, նշելով, որ դրանց հաղթահարման համար «...հարկավոր է հսկայական քայլ առաջ արտադրաուժերի զարգացման մեջ» (Երկեր, հ. 29, էջ 516): Այդպիսի հսկայական քայլ է մեր երկրում ստեղծվող կոմունիզմի նյութատեխնիկական բազան:*

*Ամեն մի նոր հասարակարգի նյութատեխնիկական բազայի ստեղծումն ու զարգացումը հիմնականում պայմանավորված են նախ՝ հին հասարակարգից ժառանգած արտադրաուժերի զարգացման մակարդակով, և երկրորդ՝ այդ նոր հասարակարգում տիրապետող տնտեսական-հասարակական կարգի բնույթով, այլ կերպ ասած՝ արտադրամիջոցների նկատմամբ եղած սեփականության ձևերով: Վերջինը մեր երկրի համար նպաստավոր էր, իսկ առաջինն աննպաստ, որովհետև նորաստեղծ սովետական իշխանությունը ցարական Ռուսաստանից ժառանգություն էր ստացել արտադրաուժերի զարգացման բավականին ցածր մակարդակ: Այդ մասին պատկերացում կազմելու համար բավական է հիշել Վ. Ի. Լենինի հետևյալ բնորոշումը. «...Ռուսաստանը,— գրել է նա 1913 թ.,— մնում է անհավատալիորեն, չտեսնված կերպով հետամնաց երկիր, աղքատ ու կիսավայրենի, որը սարքավորված է ժամանակակից արտադրության միջոցներով չորս անգամ ավելի վատ, քան Անգլիան, հինգ անգամ ավելի վատ,*

քան Գերմանիան, տասն անգամ ավելի վատ, քան Ամերիկան» (Երկեր, հ. 19, էջ 353—354)։ Ռուսաստանի այդ դարավոր հետամնացությունը փաստորեն հաղթահարվեց երկու տասնամյակում, երբ սովետական ժողովուրդը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, իրականացրեց սոցիալիզմի կառուցման լենինյան պլանը, որը միաժամանակ նշանակում էր սոցիալիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծում։

Դեռևս «Գերմանական գաղափարախոսություն» աշխատության մեջ հիմնավորելով կոմունիզմի սկզբունքները, Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը գտնում էին, որ կոմունիզմը մինչ այդ եղած բոլոր շարժումներից տարբերվում է նրանով, որ հեղաշրջում է մտցնում նախկին արտադրահարաբերությունների հիմքում... որ կոմունիզմի հաստատումն ըստ էության ունի տնտեսական բնույթ... (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 3, стр. 70—71)։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն ինչ-որ սուբյեկտիվ ցանկություն չէ, այլ օբյեկտիվ պատմական պրոցես, որը կատարվում է սոցիալիստական արտադրության զարգացման, արտադրաուժերի և արտադրահարաբերությունների նվաճումների հիման վրա։ Շեշտելով այս իրողությունը, միաժամանակ, պետք է նշել, որ այդ պրոցեսը չի կատարվում տարերայնորեն։ Ընդհակառակը, այն գիտակցված և պլանաչափ զարգացող պրոցես է, որը տեղի է ունենում հասարակության զարգացման օրենքների խոր իմացությամբ և ճիշտ օգտագործմամբ։ Ճանաչելով այդ օրենքները և առանձնացնելով հասարակության նյութական ու հոգևոր հասունացած պահանջները՝ սոցիալիստական պետությունն իրականացնում է միասնական տնտեսական-տեխնիկական քաղաքականություն, պլանաչափ զարգացնում արտադրաուժերը՝ դրա համար ընտրելով ամենակարճ ու էֆեկտիվ ուղիները։

Կոմունիստական հասարակարգի, նրա նյութատեխնիկական բազայի ստեղծման կոնկրետ ուղիներն ու ձևերը մշակվեցին ՍՄԿԿ վերջին համագումարների որոշումներում։ Այդ տեսակետից չափազանց արժեքավոր է ՍՄԿԿ XXII համագումարում ընդունված ծրագիրը, որը, ելնելով մեր երկրում սոցիալիզմի կառուցման հարուստ փորձից, գիտականորեն սահմանեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման հիմնական ուղղությունները։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումն իրականացվում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի էլեկտրիֆիկացման ու քիմիացման, գիտության ու տեխնիկայի զարգացման, կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և աշխատանքի արտադրողականության անընդհատ աճի հիմքի վրա։

Ամենևին չանտեսելով մյուս ուղղությունների դերն ու նշանակությունը հետազոտվող պրոբլեմի լուծման գործում, հիմնականում ուշադրությունը կնվիրենք արտադրության կոմպլեքսային մեքենայացմանը և ավտոմատացմանը, որոնք առաջնակարգ տեղ են գրավում ինչպես կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, այնպես էլ մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարման գործում։

Կոմունիստական հասարակարգի կառուցման խնդիրների լուծման ժամանակ կուսակցությունն առաջնորդվել ու առաջնորդվում է Վ. Ի. Լենինի այն ցուցումով, որ «...հաղթում է նա, ով ունի **մեծագույն տեխնիկա**, կազմակերպվածություն, կարգապահություն և **լավագույն մեքենաներ**» (ընդգծումը մերն է.— Ռ. Վ.) (Երկեր, հ. 27, էջ 226)։

Սոցիալիզմից կոմունիզմին անցման շրջանում իրականացվող կոմպլեքսային մեքենայացումը և ավտոմատացումը կարելի է բաժանել երկու կարևոր էտապի։ Առաջին էտապը կապված է ձեռքի ծանր աշխատանքի վերացման հետ։ Երկրորդ էտապում այն կհանգեցնի բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարմանը։ Նկատենք, որ այդ երկու էտապները ոչ թե մեկուսացված են, այլ գտնվում են օրգանական միասնության մեջ, առաջինը երկրորդի նյութական հիմք է։

Վ. Ի. Լենինը նշել է, որ տեխնիկական առաջընթացի գլխավոր բովանդակությունը արտադրության մեքենայացումն է, ձեռքի աշխատանքի փոխարինումը մեքենաներով. «Ձեռքի աշխատանքը մեքենային աշխատանքով փոխարինելու մեջ ոչ մի «անհեթեթ» բան չկա. ընդհակառակը, հենց դրա մեջ է մարդկային տեխնիկայի ամբողջ պրոգրեսիվ աշխատանքը։ Որքան ավելի է զարգանում տեխնիկան, այնքան ավելի է արտամղվում մարդու ձեռքի աշխատանքը, մի շարք ավելի ու ավելի բարդ մեքենաներով փոխարինվելով» (Երկեր, հ. 1, էջ 115)։

Արտադրապրոցեսների մեքենայացման և ավտոմատացման պայմաններում լենինյան այս մտքերն ունեն կարևորագույն մեթոդոլոգիական նշանակություն տեխնիկական առաջընթացի և նրա հետևանքների հետազոտության համար, որոնք կիրառելի են ոչ միայն անցյալի, այլև ներկայի ու ապագայի վերաբերյալ։

Ուղեցույց ունենալով վերոհիշյալ դրույթները, մեր կուսակցությունը ձեռքի ծանր աշխատանքի վերացումը դիտել և դիտում է որպես առաջնահերթ պայման մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարման գործում։ Այսպես, կուսակցության XXIV համագումարը խնդիր դրեց՝ «Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման հիման վրա հետևողականորեն կրճատել ձեռքի և ծանր, ինչպես նաև չորակավորված աշխատանքի կիրառումը ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 319—320)։ Այդ խնդրի լուծումը հետապնդում է ոչ միայն տնտեսական, այլ նաև սոցիալական նպատակ, քանի որ նպաստում է դասակարգային և ներդասակարգային տարբերությունների հաղթահարմանը։

Անդրադառնալով ձեռքի ծանր ֆիզիկական աշխատանքի վերացման պրոբլեմին, կարծում ենք անհրաժեշտ է որոշակիորեն տարբերել ձեռքի այն աշխատանքը, որն անմիջականորեն ծախսվում է որոշակի իրերի, առարկաների պատրաստման վրա, և այն աշխատանքը, որը կապված է մեքենաների ու մեխանիզմների ղեկավարման հետ։ Ձեռքի ծանր ֆիզիկական աշխատանքի վերացումը դեռևս չի նշանակում, որ կվերանա ընդհանրապես ամեն տեսակի ձեռքի աշխատանքը։ Օրինակ, ավտոմատացումը կոչված է վերացնելու, և վերացնում է, ծանր ֆիզիկական աշխատանքը, բայց միաժամանակ ստեղծում է ձեռքի աշխատանքի նոր ձևեր, որպիսիք անմիջականորեն կապված են մտավոր աշխատանքի ֆունկցիաների հետ։ Համանման ձեռքի աշխատանք են կատարում ավտոմատների և ավտոմատ գծերի կարգավորողը, փականագործ-վերանորոգողը, էլեկտրամոնտյորը և այլն։ Աշխատանքի այդ նոր որակը բանվորից պահանջում է տեխնիկական խոր գիտելիքներ և բարձր որակավորում, որովհետև նրա աշխատանքային գործունեության մեջ սկսում են գերակշռել մտավոր աշխատանքի տարրերը։ Մտավոր ու ֆիզիկական աշխատանքի հարաբերակցության փոփոխումը հօգուտ առաջինի, կարելի է տեսնել Ա. Ջվորիկինի

կազմած աղյուսակից (տե՛ս А. Зворыкин, Наука, производства, труд, М., 1965, стр. 92), որը ցույց է տալիս, թե ինչպես աշխատանքի մեքենայացման և ավտոմատացման շնորհիվ բանվորներն ավելի ու ավելի շատ են զբաղվում մտավոր գործունեությամբ։

| Դետալի մշակման եղանակը | Ֆիզիկական աշխատանքի տեսակարար կշիռը | Մտավոր աշխատանքի տեսակարար կշիռը |
| --- | --- | --- |
| Դետալ Ա | | |
| Խառատային հաստոցի վրա անհատական մշակում | 89,0 | 11,0 |
| Ավտոմատ գծի վրա մշակում | 55,6 | 44,0 |
| Դետալ Բ | | |
| Խառատային հաստոցի վրա անհատական մշակում | 86,3 | 13,7 |
| Ավտոմատ գծի վրա մշակում | 35,8 | 64,2 |

Ձեռքի ծանր ֆիզիկական աշխատանքի տեսակարար կշիռը համեմատաբար ավելի բարձր է օժանդակ աշխատանքների բնագավառում, դա բացատրվում է այդ տեղամասերի մեքենայացման և ավտոմատացման անբավարար զարգացման աստիճանով։ Այդ երևույթը նկատելի է նաև մեր հանրապետությունում։ Բավական է նշել, որ եթե հանրապետության մեքենաշինության մեջ հիմնական արտադրապրոցեսները մեքենայացված են 60—70, ապա օժանդակ պրոցեսները՝ ընդամենը 20—30 տոկոսով։ Այդ է պատճառը, որ ՀԿԿ Կենտկոմի՝ XXV համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ լուրջ ուշադրություն է հատկացված այս հարցին։ Այնտեղ նշված է, որ հանրապետության արդյունաբերական մի շարք ձեռնարկություններում ցածր է արտադրապրոցեսների ավտոմատացման և արտադրամասերի կոմպլեքսային մեքենայացման մակարդակը։ Հանրապետության արդյունաբերության մեջ աշխատող բանվորների միայն կեսն է ընդգրկված մեքենայական աշխատանքում։ Դեռևս մեծ է օժանդակ արտադրամասերում զբաղված բանվորների տեսակարար կշիռը։ Այս իրողությունը զգալիորեն ձգձգում է սոցիալ-տնտեսական այնպիսի կարևոր խնդրի լուծումը, ինչպիսին ձեռքի ծանր աշխատանքի վերացումն է։

Վերջին տարիներս մեր հանրապետության արդյունաբերության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման, հոսքային գծերի ներդրման ասպարեզում որոշակի գործ է կատարվել։ Միայն նախորդ հնգամյակի (ութերորդ) ընթացքում ժողովրդական տնտեսության մեջ արմատավորվել են 40 ավտոմատ, 305 մեքենայացված հոսքային գծեր, ստեղծվել են 21 ավտոմատացված և 55 կոմպլեքսային-մեքենայացված աշխատամաս և արտադրամաս, գործարկվել են բարձր արտադրողական հարյուրավոր ագրեգատային հաստոցներ։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ աշխատատար պրոցեսների մեքենայացումը առավելագույն չափով նվազեցնում է ձեռքի աշխատանքը։ Այսպես, 1971 թ. Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում սառնարանների արտադրամասի ագրեգատների փորձարկման տեղամասում շահագործման հանձնվեցին կոնվեյերային երկու նոր գծեր՝ 180 մ



ընդհանուր երկարությամբ։ Նույն տարում № 9 արտադրամասի (գեներատորների) մեխանիկական տեղամասի համար պատրաստվեցին հոսքային չորս գծեր՝ մետաղի մնացորդների տեղափոխման նպատակով, որը հնարավորություն տվեց այդ աշխատանքով զբաղված մարդկանց թիվը կրճատել քառակի անգամ։ Մինչ այդ գեներատորների կափարիչների անցքերը շաղափելու համար բանվորը ստիպված էր նրա վրա գտնվող վեց անցքերը շաղափել առանձին-առանձին, որը պահանջում էր ֆիզիկական զգալի աշխատանք և ժամանակ։ Իսկ բազմաիլիկային շաղափող հարմարանքի տեղադրման շնորհիվ այժմ գործողությունը կատարվում է միանգամից, բանվորից պահանջելով համեմատաբար քիչ ֆիզիկական աշխատանք ու ժամանակ։

Ժամանակակից զարգացած արտադրությունը հրամայաբար պահանջում է, որ աշխատողը տիրապետի մի քանի գիտությունների՝ այդ թվում մեխանիկայի, ֆիզիկայի, քիմիայի, էլեկտրոնիկայի հիմունքներին, ունենա որոշակի տեսական և արտադրատեխնիկական գիտելիքների պաշար, քաջ ծանոթ լինի մեքենաների ավտոմատ համակարգի կառավարմանը, ավտոմատ սարքերի օգնությամբ կարողանա հսկել մեքենաների գործողությունները, ի վիճակի լինի նորոգել ու կարգավորել մեքենաներն ու սարքավորումները։ Այլ կերպ ասած ժամանակակից գիտատեխնիկական առաջընթացի ազդեցությունը կրած մի շարք արտադրական գործողություններում ֆիզիկական աշխատանքի կրճատման հաշվին սկսում են գերակշռել մտավոր աշխատանքի տարրերը։

Դա ավելի պարզորոշ կերևա, եթե բերենք որոշ տվյալներ պողպատագործի աշխատանքային օրից։ Նկատենք, որ նա աշխատում է ժամանակակից սարքավորումների վրա։ Ժամանակի 3 տոկոսը պողպատագործը ծախսում է վերլուծական աշխատանքներ կատարելու, 7-ը՝ աշխատանքային տեղի նախապատրաստման, 50-ը՝ արտադրապրոցեսների ընթացքի հսկման, 20-ը՝ տեխնոլոգիական պրոցեսների կատարման, 15-ը՝ աշխատանքային պրոցեսների անմիջական իրականացման, և 5 տոկոսը արտադրության հաշվարկների վրա (տե՛ս «Коммунист», 1962, № 3, էջ 54)։ Այս օրինակից պարզ երևում է, թե ինչպիսի որակական փոփոխություններ է կրել բանվորի աշխատանքը, մեծացել մտավոր աշխատանքի տեսակարար կշիռը՝ ի հաշիվ ձեռքի աշխատանքի կրճատման։

Սխալ կլիներ կարծել, թե արտադրապրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը արմատական փոփոխություններ են մտցնում միայն ֆիզիկական աշխատանքի բնագավառում։ Արդի գիտատեխնիկական առաջընթացը էական փոփոխություններ է մտցնում նաև մտավոր աշխատանքի բնույթի և բովանդակության մեջ, ենթադրում դրա մեքենայացում և ավտոմատացում։ Խոսքը, առաջին հերթին, վերաբերում է ինժեներատեխնիկական աշխատողների աշխատանքային գործունեությանը։ Ներկայումս արտադրապրոցեսներն այնքան են բարդացել, որ դրանք կառավարելու համար պահանջվում են մեծ թվով ինժեներա-տեխնիկական աշխատողներ, որոնց տեսակարար կշիռը շարունակ աճում է։ Այսպես, եթե արդյունաբերական արտադրական անձնակազմի տարեկան քանակական աճը մեր հանրապետությունում 1971 թ., 1940 թ. համեմատությամբ, ավելացել է 6,5 անգամ, իսկ բանվորինը՝ 7,4, ապա ինժեներա-տեխնիկական աշխատողներինը՝ 8,5 անգամ (Армения в единой семье народов СССР, Ереван, 1972, стр. 51)։

Ինժեներա-տեխնիկական աշխատողների թվի ավելացումը ինքնանպատակ չէ, այլ պայմանավորված է ժամանակակից արտադրության զարգացման

չափերով, մեքենայացման ու ավտոմատացման աստիճանով և ունի օրինաչափ բնույթ։ Մեր հանրապետությունում այդ աճը հիմնականում կատարվում է դիպլոմավոր ինժեներների և տեխնիկների հաշվին։ Բավական է նշել, որ հանրապետության արդյունաբերության մեջ աշխատում են 18 հազար դիպլոմավոր ինժեներներ և տեխնիկներ։ Քանակական աճի հետ միասին որակական փոփոխություններ է տեղի ունենում նրանց աշխատանքի պայմանների և բնույթի մեջ։ Մարդկային գործունեության այնպիսի բնագավառներ, ինչպիսիք են՝ գիտական, կոնստրուկտորական, պլանային, վարչական և այլն, արմատական տեխնոլոգիական փոփոխություններ են կրում։ Այդ գործում մեծ դեր են խաղում էլեկտրոնային հաշվիչ-լուծող մեքենաները։ Ահա թե ինչու նոր հնգամյա պլանը նախատեսում է հաշվիչ մեքենաների արտադրությունն ավելացնել 67 տոկոսով։

Ժամանակակից պրակտիկան ցույց է տալիս, որ ավտոմատացված արտադրությունը մարդուց պահանջում է տեխնիկական խոր գիտելիքներ, բազմակողմանի կրթություն, տեխնոլոգիական պրոցեսների պարզ պատկերացում, բարդ սարքավորումներն սպասարկելու կարողություն և այլն։ Սակայն դա չի նշանակում, որ հեռանկարում հնարավոր է լիովին վերացնել ֆիզիկական աշխատանքը։ Ժողովրդական տնտեսության զարգացումը մի այնպիսի պրոցես է, որն անհնար է պատկերացնել առանց նորանոր ձեռնարկությունների և արտադրության նոր ճյուղերի երևան գալու։ Հետևապես, պարզ է, որ միշտ առկա կլինի ֆիզիկական աշխատանքի անհրաժեշտությունը։ Կասկածից վեր է, որ զարգացած կոմունիզմի պայմաններում մարդը ազատված կլինի ծանր, հյուծող ֆիզիկական աշխատանքից, օրգանիզմի համար վտանգավոր աշխատանքային պայմաններից։ Սակայն անվիճելի է նաև այն, որ ուղեղը երբեք արտադրապրոցեսից դուրս չի մղի ձեռքերին։ «Ձեռքը... ոչ միայն աշխատանքի օրգան է,— գրել է Ֆ. Էնգելսը,— նա և նրա արդյունքն է։ Միայն շնորհիվ աշխատանքի... մարդու ձեռքը հասավ կատարելության այն բարձր աստիճանին, որի վրա նա կարողացավ, կարծես թե կախարդական ուժով, կյանքի կոչել Ռաֆայելի նկարները, Տորվալդսենի արձանները, Պագանինիի երաժշտությունը» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, էջ 93)։

Վերը շարադրվածից երևում է, որ մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարման և դրանց հետագա օրգանական միահյուսման գործում բավականին մեծ է մեքենաների ավտոմատ սիստեմի դերը։ Սակայն կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը, առանձին վերցրած, չի կարելի համարել այդ տարբերությունների հաղթահարման միակ օբյեկտիվ հիմքը, որովհետև գիտության և տեխնիկայի առաջընթացը, վերջին հաշվով, իր մարմնավորումն է գտնում հասարակության նյութատեխնիկական բազայի մեջ։ Ուստի միանգամայն հասկանալի է, թե ինչու կուսակցության XXIV համագումարը գիտատեխնիկական պրոգրեսը համարեց կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գլխավոր լծակը։ Հետևապես սխալված չենք լինի, եթե շեշտենք, որ մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների հաղթահարման հիմնական օբյեկտիվ պայմանը ներկայումս ստեղծվող կոմունիզմի նյութատեխնիկական բազան է։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՓՈԽՕԳՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԻ ԲԱՐՁՐԱՑՈՒՄԸ

**Մ. Պ. ՂԱՀՐԱՄԱՆՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

Սոցիալիստական երկրների տնտեսական փոխօգնությունը գնալով ավելի մեծ նշանակություն է ստանում։ «Սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացումը,— ասված է Լ. Ի. Բրեժնևի ՍՄԿԿ XXIV համագումարի հաշվետու զեկուցման մեջ,— նոր և բարդ պրոցես է։ Դա ենթադրում է նաև նոր, է՛լ ավելի լայն մոտեցում տնտեսական շատ հարցերի նկատմամբ, ոչ միայն տվյալ երկրի, այլև համագործակցության բոլոր մասնակիցների շահերին համապատասխանող առավել ռացիոնալ լուծումներ գտնելու կարողություն» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 11)։ Ուստի տնտեսական փոխօգնության երկրների բնակչության կենսամակարդակի բարձրացման հարցերի գիտական ուսումնասիրությունը դառնում է խիստ կարևոր։

ՏՓԽ-ի երկրների տնտեսական բարձր հզորությունը բարենպաստ պայմաններ է ստեղծում ժողովրդի կենսամակարդակի բարձրացման համար։

Որևէ երկրի կամ տնտեսական սիստեմի բնակչության կենսամակարդակի բնույթն ու զարգացման առանձնահատկությունները բացահայտելու համար պետք է ելնել այն իրողությունից, որ ինչպես բուն բնակչության կենսամակարդակը, այնպես էլ այն պայմանավորող բաշխման հարաբերությունները ստեղծում է ինքը՝ արտադրաեղանակը։

Հայտնի է, որ արտադրության կապիտալիստական եղանակի դեպքում նույնպես (բարենպաստ կոնյունկտուրայի պայմաններում, վերելքի տարիներին) տեղի է ունենում աշխատավորների կենսամակարդակի բարձրացում, սակայն այն հանդես չի գալիս իբրև օրինաչափություն, որովհետև կապիտալիստական հասարակարգի զարգացումը տեղի է ունենում հակամարտ հակասությունների պայմաններում։

Սոցիալիստական հասարակարգում բնակչության կենսամակարդակի սիստեմատիկ բարձրացումը և կառուցվածքային առաջադիմական փոփոխությունները պայմանավորվում են ոչ միայն սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի, այլև մյուս տնտեսական օրենքների գործողություններով։ Բնակչության կենսամակարդակի բարձրացումը դառնում է հասարակական արտադրության զարգացման ոչ միայն հետևանքը, այլև նրա հետագա կատարելագործման և արդյունավետության բարձրացման կարևոր պայմանը։

Բնակչության կենսամակարդակը բազմաթիվ և բազմապիսի սոցիալ-
տնտեսական հարաբերություններ արտահայտող բարդ կատեգորիա է, որը
բնութագրվում է բազմաքանակ ցուցանիշներով: Ուստի, այդ ցուցանիշների
ճիշտ ընտրությունը կարևոր է ինչպես հասարակական արտադրության պլա-
նավորման, այնպես էլ սոցիալիստական երկրների բնակչության կենսամա-
կարդակների ուսումնասիրման համար: Ներկայումս տնտեսագիտական գրա-
կանության մեջ սոցիալիստական երկրների բնակչության կենսամակարդակ-
ների ուսումնասիրման համար առաջարկվում են բազմաթիվ ցուցանիշներ:
Այսպես, օրինակ, սովետական տնտեսագետներ Պ. Լուկինը և Վ. Օստրոումովը
առաջարկում են 37 ցուցանիշ (П. Лукин и В. Остроумов. «Организация
статистики в странах—членов СЭВ, М., *1971* стр. *146*), իսկ Պ. Մստի-
սլավսկին (տե՛ս «Коммунист» ամսագիր № *11*, *1968*, էջ *21—23*) և բուլղա-
րացի տնտեսագետ Դ. Կոնյարովը՝ (տե՛ս Д. Коняров. «Потребности,
потребление и жизненный уровень при социализме», София, *1969*,
стр. *159—160*) ցուցանիշների չորս խումբ:
Պարզ է, որ այդ ցուցանիշների սիստեմը հետագա կատարելագործման
կարիք ունի: Մեր կարծիքով, այդ երկրների բնակչության կենսամակարդակ-
ների ուսումնասիրության ժամանակ նպատակահարմար է օգտագործել սին-
թետիկ ցուցանիշներ: Բնակչության կենսամակարդակի քանակական կողմերի
բնորոշման (բնութագրման) համար կարելի է օգտագործել ազգային եկամու-
տը (չնայած այդ ցուցանիշն ունի բացասական կողմեր), սպառման ֆոնդը,
բնակչության ռեալ աշխատավարձը և ռեալ եկամուտները, հասարակական
սպառման ֆոնդերը, աշխատանքային պայմանների և շրջապատի բարելավ-
ման վրա կատարվող ծախսերը, պետական և կոոպերատիվ առևտրի մանրա-
ծախ ապրանքաշրջանառությունը: Որակական կողմերի բնութագրման համար՝
նյութական բարիքների և ծառայությունների սպառումը, աշխատանքի պայ-
մանները և զբաղվածության աստիճանը, ազատ ժամանակի չափը և այլն:
Զարգացած սոցիալիստական հասարակարգի ներկա էտապում ՏՓԽ-ի եր-
կրներում առաջանում են ավելի բարդ և դժվարին տնտեսական ու սոցիալա-
կան խնդիրներ, քան նախորդ էտապներում: Այդ խնդիրների լուծման կարևոր
միջոցներից է ՏՓԽ-ի երկրների ինտեգրացիայի հետագա խորացումը: Դրա
վառ ապացույցն է ՏՓԽ-ի XXIII սեսիայի կողմից մշակված և XXV սեսիայի
կողմից ընդունված կոմպլեքսային ծրագիրը, որը նախատեսում է սոցիալիս-
տական երկրների ինտեգրացիայի միանգամայն նոր աստիճան՝ իր մեջ ընդ-
գրկելով թե՛ արտադրությունը և թե՛ փոխանակումն ու սպառումը: Այդ ծրա-
գիրն իր մեջ ընդգրկում է շուրջ երկու հարյուր կոնկրետ առաջարկություններ և
միջոցառումներ, որոնցում նախատեսվում է զարգացած սոցիալիստական հա-
սարակարգի ներկա էտապում ծագած տնտեսական ու սոցիալական պրոբլեմ-
ների լուծման պայմանները և էտապները: ՏՓԽ-ի XXVI (1972 թ.) և XXVII
(1973 թ.) սեսիաները ցույց տվեցին, որ այն հաջողությամբ իրագործվում է:
Վերջին տարիներին Տնտեսական փոխօգնության երկրների բազմակողմա-
նի և բազմապիսի համագործակցության շնորհիվ արագ վերելք ապրեցին այդ
երկրների ժողովրդական տնտեսությունները: Այսպես, 1965—1970 թթ. այդ
երկրների արդյունաբերական արտադրանքն աճեց 49 տոկոսով, այդ թվում
ՍՍՀՄ-ում՝ 50, Բուլղարիայում՝ 68, Լեհաստանում՝ 50, Ռումինիայում՝ 75 տո-
կոսով, նույն այդ ժամանակաշրջանում եվրոպական «ընդհանուր շուկայի» եր-
կրների արդյունաբերական արտադրանքն աճեց 35 տոկոսով, Անգլիայինը՝



13, ԱՄՆ-ինը՝ 17 տոկոսով (տե՛ս «Экономика стран социализма *1970* г.», М., *1971*, стр. *10*, *11*):

Դրա հետ մեկտեղ զգալիորեն բարելավվել են ՏՓԽ-ի երկրների արդյունաբերության միջճյուղային համամասնությունները: Առաջին հերթին անհրաժեշտ է նշել «Ա» և «Բ» խմբերի զարգացման տեմպերի զգալի մոտեցումը: Այսպես, եթե 1961—1965 թթ. այդ երկրներում «Ա» խմբի միջին տարեկան տեմպերը կազմել են 9, իսկ «Բ» խմբինը՝ 6,5 տոկոս, ապա 1966—1970 թթ. այն համապատասխանաբար կազմել է 8,8 և 7,7 տոկոս: Մի շարք երկրներում, օրինակ, ՍՍՀՄ-ում վերջին մի քանի տարիներին «Բ» խմբի միջին տարեկան աճը գերազանցում է «Ա» խմբի աճին (1970 թ. ՍՍՀՄ-ում այն կազմել է 8,5 և 8,2, իսկ ՉՍՍՀ-ում՝ 8,0 և 7,7 տոկոս): Նմանօրինակ տենդենց պահպանվելու է ՍՍՀՄ-ում նոր հնգամյակում: Այսպես, 1971—1975 թթ. սպառման առարկաների արտադրությունն աճելու է 44—48 տոկոսով, իսկ արտադրամիջոցներինը՝ 41—45 տոկոսով (տե՛ս նույն տեղը, էջ 12):

Այսպիսով, վերջին տարիներին ՏՓԽ-ի երկրների ողջ ժողովրդական տնտեսության աճի բարձր տեմպերի հետ մեկտեղ գործնական քայլեր են արված ավելի արագ զարգացնելու այնպիսի ճյուղերը, որոնք անմիջականորեն կապված են բնակչության կենսամակարդակի հետագա բարձրացման բազմազան խնդիրների լուծման հետ:

ՏՓԽ-ի երկրների հանրային արտադրության արդյունավետության բարձրացումը, դրանցից յուրաքանչյուրի ժողովրդական տնտեսության արագ տեմպերով զարգացումը զուգակցվում է ազգային եկամտի արագ աճով: Այսպես, 1965—1970 թթ. ՏՓԽ-ի երկրների ազգային եկամուտն աճեց 42 տոկոսով՝ «ընդհանուր շուկայի» երկրների 29 տոկոս աճի դիմաց: Միջին տարեկան աճի տեմպերը համապատասխանաբար կազմեցին 7,3 և 5,2 տոկոս:

Բնակչության մեկ շնչի հաշվով այդ նույն ժամանակաշրջանում ազգային եկամուտն աճել է ՍՍՀՄ-ում 38,0, Բուլղարիայում՝ 44,7 տոկոսով (տե՛ս նույն տեղը, էջ 8), Հունգարիայում՝ 36,2, ԳԴՀ-ում՝ 29, Ռումինիայում՝ 36,4, Լեհաստանում՝ 28,6 տոկոսով (տե՛ս «Народное хозяйство СССР в *1970* г.», статистический ежегодник, М., *1971*, стр. *65*): ՏՓԽ-ի երկրների ազգային եկամտի նմանօրինակ արագ աճը բարձրացրեց նրա տեսակարար կշիռը ամբողջ աշխարհում արտադրված ազգային եկամտի մեջ: Այսպես, 1965 թ. 24,3-ի համեմատ 1970 թ. այն կազմեց 26,8 տոկոս: Հատկանշական է, որ 1965—1970 թթ. աշխարհում արտադրված ազգային եկամտի հավելաճի շուրջ 35 տոկոսը բաժին է ընկնում այդ երկրներին (տե՛ս «Экономика стран социализма *1970* г.», М., *1971*, стр. *8*):

Տնտեսական հզորությանը զուգընթաց, գնալով վճռական է դառնում նաև սոցիալիստական երկրների ազդեցությունը համաշխարհային քաղաքականության վրա: Իրականանում է Վ. Ի. Լենինի այն կանխատեսումը, որ երբ սոցիալիզմը հաղթանակի մի շարք առաջավոր երկրներում, երբ աճի նրանց տնտեսական հզորությունը, նրանք կկարողանան «...վճռական ազդեցություն ունենալու ամբողջ համաշխարհային քաղաքականության վրա» (Երկեր, հ. 31, էջ 170): Վերջին տարիների համաշխարհային քաղաքականության փոփոխությունները վկայում են, որ զարգացումն ընթանում է հենց այդ ուղղությամբ, որ ամբողջ աշխարհի հեղափոխական, ազատագրական, հակաիմպերիալիստական ուժերի հետ նրանց դաշինքն այսօր վճռական գործոն է մարդկությանը համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի վտանգներից փրկելու

պայքարում: «Սոցիալիստական պետությունների դաշինքը,— վերջերս Բուլղարիայում արտասանած ճառում ասաց Լ. Ի. Բրեժնևը,— համաշխարհային սոցիալիզմի նոր հաջողությունների, հեղափոխական շարժման նոր հաղթանակների, աշխարհի կայուն խաղաղության պահպանման վճռական գործոնն է»:

Սոցիալիստական հասարակարգում արագ աճում է ոչ միայն ազգային եկամուտը, այլև նրա այն մասը, որն անմիջապես անցնում է բնակչության տրամադրության տակ և սպառվում կամ կուտակվում է ըստ նրանց հայեցողության: 1961—1965 թթ. ՏՓԽ-ի երկրներում սպառման ֆոնդը ավելացել է 28, իսկ 1966—1970 թթ.՝ 31 տոկոսով:

Ազգային եկամտի և նրա սպառման ֆոնդի անընդհատ ու արագ աճին նպաստել է նաև աշխատավորության ռեալ աշխատավարձի, բնակչության ռեալ եկամուտների և սոցիալ-կուլտուրական միջոցառումների վրա կատարվող ծախսերի սիստեմատիկ ավելացումը: Այսպես, 1960—1970 թթ. բանվոր ծառայողների ռեալ աշխատավարձն ավելացել է Հունգարիայում՝ 29, Ռումինիայում՝ 46, Բուլղարիայում՝ 43, Լեհաստանում՝ 19, ՉՍՍՀ-ում՝ 26 տոկոսով (1969 թ.) (տե՛ս «Статистический ежегодник стран—членов СЭВ 1971 г.», М., 1971, стр. 50):

Հատկապես արագ են աճել բնակչության ռեալ եկամուտները: Այսպես, բնակչության մեկ շնչի հաշվով 1966—1970 թթ. այն աճել է Բուլղարիայում՝ 33,5 (պլանային 30 տոկոսի դիմաց), Հունգարիայում՝ 34, Ռումինիայում և ԳԴՀ-ում՝ 22, ՍՍՀՄ-ում՝ 33 տոկոսով (պլանային 30 տոկոսի դիմաց), իսկ 1960—1970 թթ. ՄՍՀՄ-ում այն աճել է 58 տոկոսով:

Սոցիալիստական հասարակարգում տնտեսության արագ և անընդհատ զարգացումը, աշխատավորության եկամուտների սիստեմատիկ բարձրացումը նպաստեց նաև անձնական սպառման ավելացմանը, որն իր արտահայտությունն է գտել ՏՓԽ-ի երկրների մանրածախ ապրանքաշրջանառության աճի մեջ: Այսպես, 1950—1970 թվականներին Բուլղարիայում մանրածախ ապրանքաշրջանառությունը մեծացել է 4,2, Հունգարիայում՝ 5,6, ԳԴՀ-ում՝ 3,7, Լեհաստանում՝ 8,1, ՍՍՀՄ-ում՝ 3,7, ՉՍՍՀ-ում՝ շուրջ 3 անգամ, որն այդ երկրների բնակչության նյութական բարեկեցության արտահայտություններից է:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ 1960—1970 թթ. Տնտեսական փոխօգնության երկրների բնակչության սննդամթերքների (միս և մսամթերքների, կաթնամթերքների, շաքարի, յուղի, ձկան և ձվի) սպառումը ավելացել է մոտ 1,5 անգամ: Այս հանգամանքը արդյունք է ՏՓԽ-ի երկրների գյուղատնտեսության բնագավառում սկսած ինտեգրացիայի հետագա խորացման և կոմպլեքսային ծրագրի հաջող իրականացման:

Բնակչության կենսամակարդակի բարձրացումը մեծ չափով նպաստում է նաև այդ երկրների միջև կատարվող ապրանքափոխանակությանը: Հատկապես արտաքին առևտուրը, որի ընդհանուր ծավալում մեծ տեսակարար կշիռ ունեն գյուղատնտեսական մթերքները. դրանց հիմնական արտահանողներն են Բուլղարիան, Հունգարիան և Ռումինիան: Այսպես, 1970 թ. Բուլղարիան արտահանել է թարմ մրգեր, պտուղ և հատապտուղ՝ 245, բանջարեղեն՝ 201, խաղող՝ 117 հազար տոննա, իսկ Հունգարիան համապատասխանաբար՝ 327, 60,6 և 5,8 հազար տոննա:

Վերը նշված երեք երկրները բավարարում են ՏՓԽ-ի երկրների գյուղատնտեսական մի շարք մթերքների պահանջի 70—80 տոկոսը: Անհրաժեշտ է նշել, որ արտահանվող գյուղատնտեսական մթերքների ընդհանուր ծավալում



բարձրանում է մշակված (պահածոյացված) մթերքների տեսակարար կշիռը: Գյուղատնտեսական մթերքների պահածոների գլխավոր արտահանողները Բուլղարիան և Հունգարիան են: Այսպես, 1970 թ. Բուլղարիան արտահանել է 80,3 հազար տոննա միրգ, հատապտուղ, 178 հազար տոննա բանջարեղեն, իսկ Հունգարիան համապատասխանաբար՝ 59,3 և 138 հազար տոննա: Այդ պահածոների զգալի մասը գնում է ՍՍՀՄ-ը:

Ապրանքաշրջանառության ոլորտում մեծ է նաև ձկան և ձկնեղենի, գինիների, մսի և մսամթերքների տեսակարար կշիռը: Ձկան և ձկնեղենի գլխավոր մատակարարն է ՍՍՀՄ-ը, մսի և մսամթերքներինը՝ Բուլղարիան և Մոնղոլիան:

ՏՓԽ-ի երկրների արտաքին ապրանքաշրջանառության ընդհանուր ծավալում, միաժամանակ, գնալով ավելի է բարձրանում ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքների տեսակարար կշիռը, որը երևում է ստորև բերված աղյուսակի տվյալներից:

ՏՓԽ-Ի ԵՐԿՐՆԵՐԻ ԱՐՏԱՔԻՆ ԱՊՐԱՆՔԱՇՐՋԱՆԱՌՈՒԹՅԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԾԱՎԱԼՈՒՄ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ՏԵՍԱԿԱՐԱՐ ԿՇԻՌԸ 1950—1970 ԹԹ. ՏՈԿՈՍՆԵՐՈՎ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԾԱՎԱԼԻ ՆԿԱՏՄԱՄԲ[1]

| | Արտահանում | | | Ներմուծում | | |
|---|---|---|---|---|---|---|
| | 1950 | 1960 | 1970 | 1950 | 1960 | 1970 |
| Բուլղարիա | 1,5 | 17,9 | 14,9 | 4,7 | 7,6 | 5,5 |
| Հունգարիա | 20,3 | 17,3 | 21,1 | 1,5 | 5,1 | 7,6 |
| Մոնղոլիա | 0,9 | 0,3 | 6,0 | — | 36,2* | 32,9 |
| ԳԴՀ | — | 14,8 | 20,0 | — | 5,3 | 4,5 |
| Լեհաստան | 12,2 | 10,1 | 15,6 | 3,3 | 5,4 | 6,1 |
| Ռումինիա | 1,3 | 5,3 | 18,1 | 10,2 | 5,2 | 5,5 |
| ՍՍՀՄ | 4,9 | 2,9 | 2,7 | 7,4 | 17,2 | 13,3 |
| ՉՍՍՀ | 25,3 | 20,4 | 16,5 | 2,6 | 3,3 | 8,5 |

Բացի գյուղատնտեսական մթերքներից, լայն թափով ընդլայնվում է թեթև և տեքստիլ արդյունաբերության արտադրանքների (տրիկոտաժի, կոշիկի, կահույքի, կտորեղենի) փոխադարձ մատակարարումը, որոնց հիմնական արտադրողներն են ՉՍՍՀ-ն, ԳԴՀ-ն, Հունգարիան և Լեհաստանը: ՍՍՀՄ-ը գնում է ՏՓԽ-ի երկրներից արտահանվող այդ ապրանքների շուրջ 42 տոկոսը:

Բայց բնակչության կենսամակարդակը կախված է ոչ միայն ընթացիկ սպառման մակարդակից, այլև սպառողական նշանակության հասարակական հիմնական ֆոնդերի կուտակումից (բնակելի ֆոնդերից, բնակչությանը սպասարկող սոցիալ-կուլտուրական և կոմունալ-կենցաղային հիմնարկությունների շենքերից, մարդատար տրանսպորտային միջոցներից) և բնակչության անհատական գույքի կուտակման չափերից:

Տնտեսական փոխօգնության երկրներում աստիճանաբար բարելավվում են բնակչության բնակարանային պայմանները: Այդ մասին են վկայում վերջին 20 տարիների բնակարանային շինարարությանը հատկացվող կապիտալ ներդրումների ծավալի մեծացումը: Այսպես, 1950—1970 թթ. այն Բուլղարիայում աճել է 5, Մոնղոլիայում՝ 16, Լեհաստանում՝ 6,5, Ռումինիայում՝ 11, ՍՍՀՄ-ում՝ շուրջ 6 անգամ: Միայն 1970 թ. ՏՓԽ-ի երկրներում կառուցվել են 2.950 հա-

[1] Տե՛ս «Статистический ежегодник стран—членов СЭВ 1971 г.», М., 1971, стр. стр. 344, 345, 346, 347.
* 1965 թ.:

զար նոր բնակարան և անհատական բնակելի տներ, այդ թվում՝ Բուլղարիայում՝ 46, Հունգարիայում՝ 80, ԳԴՀ-ում՝ 74, Լեհաստանում՝ 194, Ռումինիայում՝ 163, ՍՍՀՄ-ում՝ 2.266, ՉՍՍՀ-ում՝ 115,4 հազար (տե՛ս «Экономика стран социализма 1970 г.», М., 1971, стр. 22):

Սոցիալիստական հասարակարգում կենտրոնացված են լուծվում նաև բնակչության բժշկական սպասարկման, ժողովրդական կրթության և սոցիալական ապահովագրության հարցերը: ՏՓԽ-ի երկրներում, 1960—1970 թթ. բնակչության բժշկական սպասարկման, սոցիալական ապահովագրության համար կատարվող ծախսերն ավելացել են, միջին հաշվով, 2,5—3 անգամ: Ներկայումս ՏՓԽ-ի երկրներում աշխատում են շուրջ 840 հազար բժիշկ, իսկ հիվանդանոցային մահճակալների թիվը հասնում է 3.540 հազարի: 1970 թ. 10 հազար բնակչին սպասարկում էին ՍՍՀՄ-ում՝ 27,6, Բուլղարիայում՝ 22,4, Հունգարիայում՝ 23,0, ԳԴՀ-ում՝ 19,3 (1969 թ.), Մոնղոլիայում՝ 18,0, Լեհաստանում՝ 19,3, Ռումինիայում՝ շուրջ 15,0, ՉՍՍՀ-ում՝ 22,8 բժիշկ:

Շարունակ բարելավվում են նաև աշխատավորության աշխատանքային պայմանները: Այս բոլորի շնորհիվ բնակչության կյանքի միջին տևողությունը ներկայումս շուրջ 70 տարի է:

Զգալի են նաև հաջողությունները բնակչության կրթական և կուլտուրական մակարդակների բարձրացման գործում: 1970 թ. ՏՓԽ-ի երկրների հանրակրթական դպրոցներում սովորում էր շուրջ 70 մլն աշակերտ, բարձրագույն և միջին մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ 5.533 հազար ուսանող: ՏՓԽ-ի երկրների բնակչության կուլտուրական մակարդակի բարձրացմանը մեծապես նպաստում է նաև այդ երկրների միջև կատարվող կուլտուրական փոխանակությունը (գրադարաններ, կինոթատրոններ և այլն):

Այսպիսով, իրականանում է Վ. Ի. Լենինի այն կանխատեսումը, որ արտադրության սոցիալիստական եղանակի պայմաններում հասարակական արտադրության պլանաչափ կազմակերպման ու զարգացման անմիջական նպատակը, հասարակության բոլոր անդամների լիակատար բարեկեցությունը և ազատ համակողմանի զարգացման ապահովումն է (տե՛ս Երկեր, հ. 6, էջ 53):

ՏՓԽ-ի երկրների բնակչության կենսամակարդակի բարձրացման զգալի տեղաշարժերի հետ միասին դեռևս առկա են չլուծված հարցեր. երբեմն խախտվում է համամասնությունը պարենային և արդյունաբերական ապրանքների, ինչպես նաև սպասարկումների ծավալի և բնակչության վճարունակ պահանջարկի միջև, բնակչության պահանջարկի կառուցվածքում ավելանում է բարձրորակ սպառողական ապրանքների և երկարատև օգտագործման առարկաների տեսակարար կշիռը, մինչդեռ ՏՓԽ-ի երկրների արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը առայժմ միշտ չէ, որ կարողանում է արագ համարվել այդպիսի փոփոխություններին: Այս հարցերին հատուկ ուշադրություն նվիրեց վերջերս Պրագայում կայացած ՏՓԽ-ի XXVII (1973 թ.) սեսիան: Վերջին տարիներին,— ասված է այդ սեսիայի որոշման մեջ,— ՏՓԽ-ի երկրները ձեռք են առել մի շարք միջոցառումներ, որոնց նպատակն է ավելի լրիվ բավարարել բնակչության պահանջները:

Սոցիալիստական համագործակցության հետագա զարգացումը, ՏՓԽ-ի երկրների տնտեսական ինտեգրացման հաջողությունները, նրանց էկոնոմիկայի հզորացումը հիմք կծառայեն բնակչության կենսամակարդակի առավել բարձրացման համար:

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՉԻՆ ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ ԳՈՐԾՈՎ

## ՎԵՐԸՆԹԱՑԻ ՈՒՂԻՈՎ

**Վ. Մ. ԹՈՎՄԱՍՅԱՆ**
ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար

Հոկտեմբերյանի շրջանի կուսկազմակերպությունը, աշխատավորները ջերմորեն ընդունեցին կուսակցությանն ու սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը: Ամենուրեք, կոլտնտեսություններում ու սովխոզներում, արդյունաբերական ձեռնարկություններում ու կառույցներում, ծանոթանալով այդ կարևոր փաստաթղթին, արտադրության մարդիկ իրենց պատրաստակամությունն են հայտնում 1974 թվականը նշանավորել աշխատանքային նվաճումներով: Նրանք խորապես են ըմբռնում դիմումում արտահայտված այն միտքը, որ «1974 թվականի պլանի կատարումն ու գերակատարումը որոշիչ նշանակություն կունենան ո՛չ միայն այս հնգամյակի հաջող ավարտման համար, այլև կարևոր քայլ կլինեն եկող հնգամյակում տնտեսական պոտենցիալի հետագա աճի և ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման ամուր հիմք ստեղծելու համար»:

Երբ մեր աշխատավորների նախընթաց գործունեությունը գնահատենք ՍՄԿԿ Կենտկոմի դիմումում առաջ քաշված այս խնդրի առումով, ապա կարող ենք վստահ ասել, որ նրանք, իրոք, մեծ քայլ են արել տնտեսական առաջընթացի ճանապարհին: Իններորդ հնգամյակի վճռական տարվա արդյունքներն այս իրողության կոնկրետ վկայությունն են: Շրջանի հողագործները և անասնապահները ո՛չ միայն պատվով են լուծել անցած տարվա խնդիրները, այլև լուրջ նախադրյալներ են ստեղծել հնգամյակի հաջորդ երկու տարվա առաջադրանքները կատարելու, հողագործական և անասնապահական մթերքների արտադրության նշանակալից աճ ապահովելու համար:

Հենց թեկուզ վերցնենք հացահատիկի արտադրության ավելացման ասպարեզում մեր մարդկանց կատարած աշխատանքը: Վերջին տարիներին զգալիորեն կրճատելով հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը և ներդնելով «Ավրորա», «Կովկաս», «Բեզոստայա—1» աշնանացան ցորենի սորտերը՝ մեր հողագործները կարողացան բերքատվության ցուցանիշով

գերազանցել նախորդ տարիների համախառն արտադրանքը։ Անցած տարի, 1971 թ. համեմատությամբ, 1000 հեկտարով նվազեց ցանքատարածությունը, բայց համախառն բերքը ավելացավ և հասավ 12 հազար տոննայի։ Մեկ հեկտարի բերքատվությունը, պլանով նախատեսված 31-ի փոխարեն, կազմեց 37,4 ցենտներ։

Շրջանի էկոնոմիկայում կարևոր տեղ է գրավում խորդենու արտադրությունը։ Տարեցտարի ավելացնում ենք այդ կուլտուրայի ցանքատարածությունը։ Իններորդ հնգամյակի դիրեկտիվներով նախատեսված է Հոկտեմբերյանի շրջանում խորդենու արտադրությունը 22 հազարից 1975 թ. հասցնել 36 հազար տոննայի։ Այդ բնագիծը հիմնականում նվաճելու ենք բերքատվության բարձրացման հաշվին։ Անցած տարի արդեն մեր տնտեսությունները պետությանը վաճառեցին ավելի քան 31.500 տոննա խորդենու կանաչ զանգված և նախապատրաստեցին 60 մլն կտրոն։ Վերջին միջոցառումները հնարավորություն կընձեռեն խորդենու համախառն արտադրությունն այս տարի հասցնել 34 հազար տոննայի։

Գոհացուցիչ էին նաև բանջարաբույծների արդյունքները։ Արտադրության մեջ արմատավորելով գյուղատնտեսության գիտության նվաճումներն ու առաջավոր փորձը, ներդնելով լոլիկի «Մասիս—202», «էջմիածին—260—261» և «Հոբելյանական» նոր սորտերը, կիրառելով սածիլները տորֆաբուսահողային թաղումներում աճեցնելու եղանակը՝ նրանք անցած տարի նախատեսված պլանից ավելի արտադրեցին 24 հազար տոննա բանջարեղեն։ Իսկ ահա այգեգործների սոցիալիստական մրցության արգասիքը. պլանից ավելի 6 հազար տոննա խաղող և 2500 տոննա պտուղ։

Անասնապահության բնագավառի հաջողությունները պիտի պայմանավորել հանրային հոտի արդյունավետ վերարտադրությամբ, ցեղի բարելավման խելացի կազմակերպմամբ, ֆերմաների աշխատատար պրոցեսների մեքենայացմամբ։ Այսօրվա դրությամբ 17 տնտեսություններում, օրինակ, գործում են էլեկտրակթի ապարատներ, բոլոր ֆերմաներում՝ ջրի ավտոմատ խմոցներ, գոմաղբի փոխադրիչներ, կեր մանրացնող մեքենաներ, պատահական չէ, որ շրջանի անասնապահները երկու ամիս շուտ կատարեցին կաթի, մսի, ձվի և բրդի արտադրության տարեկան առաջադրանքները, պետությանը վաճառեցին պլանով նախատեսվածից ավելի շատ մթերքներ։

Ձեռք բերված նվաճումները, անշուշտ, արդյունք են նաև այն բանի, որ կոլտնտեսությունների ու սովխոզների կուսկազմակերպությունները խելացիորեն են գլխավորել մասսաների աշխատանքային խանդավառությունը, արդյունավետ կազմակերպել սոցիալիստական մրցությունը, պայքարել 1973 թվականը, իրոք, վճռական տարի դարձնելու համար։ Ուրախալի է, որ կուսակցությունն ու կառավարությունը բարձր գնահատեցին մեր կոլտնտեսականների և բանվորների անձնվեր աշխատանքը։ 100-ից ավելի հողագործներ ու անասնապահներ պարգևատրվեցին կառավարական շքանշաններով ու մեդալներով, իսկ Նալբանդյանի կոլտնտեսության կոմերիտական-երիտասարդական օղակի օղակավարուհի, կոմունիստ Գեղեցիկ Կարապետյանն արժանացավ սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման։ Այգեշատի և Տանձուտի կոլտնտեսությունները նվաճեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշներ և առաջին կարգի դրամական մրցանակներ։

Այժմ, երբ իններորդ հնգամյակի որոշիչ տարին մեկնարկ է վերցրել և



կուսակցությունը նոր խնդիրներ է դրել գյուղի աշխատավորների առջև, էլ ավելի է բարձրանում կուսկազմակերպությունների պատասխանատվությունը պետական առաջադրանքները կատարելու ասպարեզում։ Չէ՞ որ ՍՄԿԿ Կենտկոմը մեծ հավատով վստահություն է հայտնում, որ «մեր պանծալի կոլտնտեսային գյուղացիությունը, սովխոզների աշխատողները, գյուղատնտեսության մասնագետները կամրապնդեն ձեռք բերած հաջողությունները և 1974 թվականին հայրենիքին կուրախացնեն լավ բերքով, գյուղատնտեսական արտադրանքի արտադրության ու մթերման ավելացմամբ, առավելագույն արդյունավետությամբ կօգտագործեն հողի յուրաքանչյուր հեկտարը, յուրաքանչյուր մեքենան, կերի յուրաքանչյուր ցենտները, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննան, բանվոր դասակարգի հետ միասին նոր քայլ կկատարեն գյուղատնտեսության հետագա ինտենսիվացման և նրա նյութատեխնիկական բազայի ամրապնդման ուղիով»։

Ի պատասխան այս վստահության ու խորին հավատի՝ շրջանի կոլտնտեսությունների ու սովխոզների կուսկազմակերպությունները պատրաստակամություն են հայտնում՝ կատարելագործել իրենց գործունեությունը, աշխատավորներին լայնորեն ներգրավել սոցիալիստական մրցության մեջ, գլխավորել իններորդ հնգամյակի որոշիչ տարվա խնդիրների լուծման համար նրանց ծավալած շարժումը, հասնել այն բանին, որ կոմունիստները լինեն այդ մրցության ու շարժման ավանգարդում։

Սոցիալիստական մրցությունն ըստ ամենայնի ծավալելու գործում կուսկազմակերպություններին նոր լիցք հաղորդեց «1974 թվականին հողագործական և անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները ավելացնելու համար գյուղատնտեսության աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշումը։ Ինչպես կուսակցությանն ու սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը, այնպես էլ համամիութենական սոցիալիստական մրցության մասին որոշումը լայնորեն քննարկվում են սկզբնական կուսկազմակերպություններում ու կոլեկտիվների ժողովներում, մշակվում են հնգամյակի որոշիչ տարվա կոնկրետ խնդիրները։

Կուսակցությանն ու սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումին շրջանում առաջինն արձագանքեցին Տանձուտ գյուղի կոլտնտեսության (նախագահ՝ Ս. Անտոնյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Ա. Այվազյան) աշխատավորները։ Նրանք մեծ ոգևորությամբ ծանոթացան այդ փաստաթղթին և պատրաստակամություն հայտնեցին 1974 թվականը դարձնել, իրոք, իններորդ հնգամյակի որոշիչ տարի, գյուղատնտեսական մթերքների առատության տարի։ Այդ ժողովում էլ տանձուտցիները որոշեցին ընթացիկ տարվա իրենց բնագծերը։ Նրանք մանրամասնորեն պարտավորվեցին ագրոտեխնիկական կոմպլեքս միջոցառումներ իրականացնելու, եղած հնարավորություններն արդյունավետ օգտագործելու միջոցով խաղողի այգիների ամեն մի հեկտարի բերքատվությունը հասցնել 120 ց (իսկ համախառն բերքը՝ 1800 տոննայի), բանջարեղենինը՝ 400, հացահատիկինը՝ 50, խորդենունը՝ 350 ցենտների։ Ամեն մի կովից 4000 կգ կաթ ստանալու խոստում տվեցին անասնապահները։

Կուսկազմակերպությունը ևս որոշել է իր անելիքները, նրա առաջին և գլխավոր հոգսը սոցիալիստական մրցության կազմակերպումն է, կոմունիստների, կոլտնտեսային աշխատավորների ակտիվության և նախաձեռնության զարգացումը։ Այս օրերին կուսկազմակերպությունն ավելի է ուժեղացրել

արտադրության մարդկանց շրջանում կատարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը, մոբիլիզացնում է նրանց ուժերը՝ հանրային հոտի անկորուստ ձմեռումն ապահովելու, անասնապահական մթերքների արտադրության ու վաճառքի առաջին եռամսյակի պլանները ժամկետից շուտ կատարելու և գարնանացանը հաջողությամբ նախապատրաստելու համար։

Բարձր ակտիվության պայմաններում անցավ Շենավան գյուղի կոլտնտեսականների ժողովը։ Այստեղ № 1 բրիգադի բրիգադավար Մ. Խաչատրյանն ասաց, որ իր ղեկավարած կոլեկտիվն այս տարի կաշխատի նոր եռանդով, պլանով նախատեսված 32-ի դիմաց ամեն մի հեկտարից կստանա 45—50 ցենտներ հացահատիկ, 300-ի դիմաց՝ 350 ցենտներ բանջարեղենի, 200-ի դիմաց՝ 400 ցենտներ բոստանային կուլտուրաների բերք։

Բարձր պարտավորություններ կատարելու պատրաստակամությամբ հանդես են եկել նաև շրջանի մեծ ու փոքր ուրիշ շատ կոլեկտիվներ, արտադրության առաջավորներ։ Այսպես, օրինակ, Նոր Արմավիրի Սպանդարյանի անվան կոլտնտեսության հողագործներն ու անասնապահները պարտավորվել են այս տարի պետությանը պլանից ավելի վաճառել բանջարեղեն՝ 500, խորդենի՝ 150 տոննա, կաթ՝ 500, միս՝ 50 ցենտներ, ձու՝ 50 հազար հատ։ Նոր Ամասիայի կոլտնտեսության աշխատավորները խոստացել են, պլանի համեմատությամբ, 50—100 տոկոսով բարձրացնել գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը և ամեն մի հեկտարից հավաքել 400 ցենտներ բանջարեղեն, 300 ցենտներ բոստանային կուլտուրաներ, 500 ցենտներ խորդենու կանաչ զանգված։ Իսկ Յ. Հովհաննիսյանի ղեկավարած բրիգադը հեկտարից 550 ցենտներ խորդենու բերք ստանալու խոստում է տվել։ Բարձր բնագծեր են նշել իրենց համար նաև կոլտնտեսության անասնապահները։

Շրջանի բոլոր տնտեսությունների կոլեկտիվների ձգտումը մեկ է՝ գյուղատնտեսական արտադրության զարգացման ճանապարհին ավելի ամրացնել վերընթացի հիմքերը։ Դրա վկայությունն իններորդ հնգամյակի չորրորդ տարվա սոցիալիստական պարտավորություններն են։ Շրջանի գյուղատնտեսության աշխատողները խոստացել են հողագործական և անասնապահական մթերքների համախառն արտադրանքը հասցնել 230 հազար տոննայի, պետությանը վաճառել խաղող՝ 40 հազար, պտուղ՝ 15 հազար, խորդենու կանաչ զանգված՝ 34 հազար տոննա, հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը հեկտարից հասցնել 40 ցենտների, ապահովել անասնապահական մթերքների արտադրության 15 տոկոս աճ։

Անցած տարվա արդյունքներն ու այս տարվա բարձր պարտավորությունները ցույց են տալիս, որ մեր շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները լայն հնարավորություններ ունեն հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա խնդիրներն իրականացնելու համար։ Այժմ անչափ կարևոր է ուշադիր վերլուծել ու ընդհանրացնել կուտակված փորձը, անհրաժեշտ հետևություններ անել դրանից, որոնել ու գործողության մեջ դնել նոր ռեզերվներ, նախատեսել գյուղատնտեսության ղեկավարման բարելավմանը, մասսաների ստեղծագործական նախաձեռնության հետագա զարգացմանն ուղղված կազմակերպական ու դաստիարակչական աշխատանքի կատարելագործման կոնկրետ ուղիներ։ Այդ խնդիրներին էր նվիրված Հոկտեմբերյանի շրջանային կուսակցական ակտիվի ժողովը, որը քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի արդյունքների և շրջանի կուսկազմակերպությունների անելիքների մասին հարցը։

Մշակելով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում առաջ քաշված խնդիրների իրականացման միջոցառումներ՝ շրջանի կոմունիստներն առաջնորդվում են ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի ելույթում շարադրված սկզբունքային դրույթներով ու հետևություններով։ Մասնավորապես մեծ ուշադրություն ենք նվիրում սոցիալիստական մրցության զարգացման հարցերին, որը համարվում է ժողովրդա-տնտեսական պլանների հաջող կատարման համար աշխատավորներին մոբիլիզացնելու հուժկու միջոց և աշխատանքի ու սոցիալիստական սեփականության նկատմամբ մարդկանց կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու զորեղ գործիք։

Շրջանի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները եռանդուն կերպով ձեռնամուխ են եղել հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա պլանների կատարմանը։ Այս օրերին կոլտնտեսություններում ու սովխոզներում 500 կգ ավելի շատ կաթ է արտադրվում, քան նախորդ տարվա նույն ժամանակի յուրաքանչյուր օրը։ Նոր Արմավիրի Սպանդարյանի անվան կոլտնտեսության անասնապահներն արդեն կատարել են առաջին եռամսյակում պետությանը 8 տոննա միս վաճառելու առաջադրանքը։ Մեխանիզատորներն արագ թափով և բարձր որակով են կատարում գյուղատնտեսական մեքենաների և գործիքների նորոգումը։ Սկսվել է ինչպես հացահատիկի, այնպես էլ առվույտի ցանքադաշտերի և պտղատու ծառերի ձյան վրա պարարտացման աշխատանքը, որը մեր այս տարվա հաջողությունների գրավականներից մեկն է։

Կենսագործելով կուսակցության XXIV համագումարի որոշումները, ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի և սոցիալիստական մրցության վերաբերյալ որոշման պահանջներով՝ Հոկտեմբերյանի շրջանի գյուղատնտեսության բնագավառի աշխատողները, սոցիալիստական մրցության գործարար ծավալմամբ, ձեռք կբերեն նոր հաջողություններ, պատվով կկատարեն ու կգերակատարեն հնգամյակի չորրորդ, որոշիչ տարվա առաջադրանքները, ուժ ու եռանդ չեն խնայի մեր հայրենիքի տնտեսական հզորության հետագա ամրապնդման և ժողովրդի բարեկեցության բարձրացման համար։

# ԼԱՎ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐ, ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐ

**Մ. Փ. ԶԱՔԱՐՅԱՆ**
ՀԿԿ Երևանի Օրջոնիկիձեի շրջկոմի քարտուղար

Սովետական Միության ժողովրդական տնտեսության զարգացման իններորդ հնգամյակի երրորդ՝ վճռական տարին անցավ ՍՄԿԿ XXIV համագումարի գաղափարների ու որոշումների անմիջական ազդեցության տակ։ Մեր հաջողությունները հաստատեցին Հայաստանի կոմունիստների, բոլոր աշխատավորների կամքը՝ մինչև վերջ կատարելու կուսակցության կանխագծումները։ Նրանք ջերմորեն հավանություն տվեցին ու պաշտպանեցին ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում ՍՄԿԿ Կենտկոմի, Կենտկոմի քաղբյուրոյի և անձամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի պրակտիկ գործունեությունը։

Սովետական մեծ ընտանիքի հետ միասին մեր շրջանի աշխատավորներն իրենց լավ գործերով, հայրենանվեր աշխատանքով օրեցօր բազմապատկում են երկրի նյութական և հոգևոր հարստությունները, էլ ավելի մեծ նվիրումով իրականացնում ընթացիկ հնգամյակի պլանային առաջադրանքները, ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Ոգեշունչ աշխատանքի վառ վկայությունն են անցած վճռական տարվա տնտեսական արդյունքները, համամիութենական սոցիալիստական մրցության մեջ ձեռք բերած փայլուն հաջողությունները։

Դեռևս չէր ավարտվել 1973 թվականը, սակայն շրջանի բազմաթիվ արդյունաբերական ձեռնարկություններ, տրանսպորտի, շինարարական ու առևտրի կազմակերպություններ զեկուցում էին կուսակցության շրջանային կոմիտեին, որ իրենք արդեն կատարել են հնգամյակի վճռական տարվա ծրագրերը և 10—12 օր շուտ սկսել աշխատել 1974 թ. հաշվին։ Բավական է ասել, որ 37 արդյունաբերական ձեռնարկություններից 34-ը կատարեցին ու գերակատարեցին իրենց տարեկան առաջադրանքները։ Նրանք տարեկան պլանից դուրս երկրին տվեցին 9 մլն 117 հազար ռուբլու արտադրանք։

ՍՄԿԿ XXIV համագումարը իններորդ հնգամյակի հիմնական խնդիրը համարեց ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի նշանակալի վերելքը՝ սոցիալիստական արտադրության զարգացման արագ տեմպերի, նրա արդյունավետության ապահովման, գիտատեխնիկական առաջադիմության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա։ Ճիշտ հասկանալով կուսակցության պահանջը՝ շրջանի կուսկազմակերպությունները իրենց գործունեությունը հիմնականում նպատակամղեցին այդ խնդիրների իրա-



գործմանը։ Նրանք կոլեկտիվների սոցիալիստական պարտավորություններում առաջնակարգ տեղ տվեցին նաև գիտատեխնիկական առաջընթացի արագացման, արտադրության արդյունավետության բարձրացման հարցերին։ Հատկանշական է, որ 1973 թ. շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում արտադրանքի իրացման ծավալը, նախորդ տարվա համեմատությամբ, աճեց 8,5 տոկոսով և այդ աճն ամբողջությամբ ապահովվեց աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Տնտեսական հաջողությունները, ինչ խոսք, սոցիալիստական մրցության խելացի կազմակերպման, բանվորների ու ինժեներա-տեխնիկական աշխատողների, բոլոր կոմունիստների ակտիվության զարգացման արգասիք են։ Մրցության ընթացքում ծնվում են հայրենասիրական նոր նախաձեռնություններ, որոնք ուղղված են կուսակցության կողմից կոլեկտիվների առջև դրված խնդիրների լուծմանը, արտադրական վերելքին։

Մեր շրջանում բազմաթիվ են արտադրության այն առաջամարտիկները, որոնք ճիշտ են ընկալում իրենց տեղն ու դերը հնգամյակի առաջադրանքների կատարման գործում։ Քաջ տիրապետելով իրենց մասնագիտությանը՝ նրանք որոնում են նոր ուղիներ՝ արտադրանքի թողարկումն ավելացնելու, դրա որակական ցուցանիշները բարելավելու, արտադրանքի վրա կատարվող ծախսումները նվազեցնելու համար։

Հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարում լուրջ, սակայն իրագործելի խնդիրներ են դրված նաև մեր շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների առջև։ Ջերմորեն արձագանքելով կուսակցության ու սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումին և «1974 թվականի ժողովրդատնտեսական պլանը ժամկետից շուտ կատարելու համար արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի աշխատողների համամիութենական սոցիալիստական մրցության մասին» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշմանը՝ նրանք վերանայեցին իրենց բնագծերը, ստանձնեցին պլանները գերազանցող պարտավորություններ։

Պետք է ասել, որ 1973 թ. վճռական տարում մեր ձեռնարկությունները հասան հնգամյակի պլանով 1974 թ. համար սահմանված կոնտրոլ թվերին։ Շարունակելով իրենց հաղթարշավը՝ կոլեկտիվները որոշիչ տարվա համար սահմանեցին 3 մլն 824 հազար ռուբլով ավելի բարձր պլան, քան նախատեսված է կոնտրոլ թվերով։ Նրանք մասնավորապես պարտավորվեցին, արտադրության ներքին ռեզերվների հայտաբերման, հիմնական արտադրական ֆոնդերի արդյունավետ օգտագործման, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, աշխատանքի գիտական կազմակերպման ու տեխնիկայի նվաճումներն արտադրության մեջ ներդնելու շնորհիվ, արդյունաբերական արտադրանքի թողարկման և իրացման տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 25-ին, պլանից դուրս իրացնել 4 մլն ռուբլու արտադրանք։ Ընդ որում, արտադրանքի ծավալի աճի 90 տոկոսը կստացվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Սոցիալիստական մրցությամբ նախատեսվում է ամբողջ շրջանում աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը գերակատարել 3,5 տոկոսով, ներդնել 300 ռացիոնալիզատորական առաջարկություն՝ 600 հազար ռուբլու տարեկան արդյունավետությամբ, արտադրանքի ինքնարժեքի արտապլանային իջեցումից ստանալ 0,6 մլն ռուբլու խնայողություն, տնտեսել 600 կվտ-ժամ էլեկտրաէներգիա, 370 տոննա սև, 2 տոննա գունավոր մետաղ, 3,5 տոննա մանվածք և շատ այլ նյութեր։

Այժմ շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների կուսկազմակերպությունները իրենց գործունեությունը ուղղել են սոցիալիստական մրցության լայն ծավալմանը, աշխատանքի գիտական կազմակերպման բարելավմանը։ Իսկ այդ ամենի նպատակն այն է, որպեսզի 1974 թ. վերջում շրջանը կարողանա հասնել հնգամյակի վերջին տարվա մակարդակին։ Մենք ունենք ռեալ հնարավորություններ այդ խնդիրն իրագործելու համար։

Անշուշտ, մեր առջև դրված առաջադրանքների կատարումը կախված է այն բանից, թե ինչպես կմոբիլիզացնենք շրջանի աշխատավորների ուժերը, մրցության ինչպիսի արդյունավետ ձևեր ու մեթոդներ կկիրառենք, կուսկազմակերպություններն ինչպես կգլխավորեն կուսակցությանը և սովետական ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումի և սոցիալիստական մրցության մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի որոշման հրապարակումից հետո աշխատավորներին համակած արտադրական խանդավառությունը։ Իսկ այդ խանդավառությունն իր արտացոլումն է գտել կոլեկտիվների սոցիալիստական պարտավորություններում, այն խնդիրներում, որոնք դրել են նրանք իրենց առջև և որոնց լուծման համար անդադրում պայքարում են։

Ահա կոնկրետ մի օրինակ։ էլեկտրատեխնիկական գործարանը, որը շրջանի խոշոր ձեռնարկություններից է, իր առջև խնդիր է դրել 1974 թ. արտադրանքի իրացման տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 26-ին, պլանից ավելի թողարկել և իրացնել 300 հազար ռ. արտադրանք, երկրին տալ արտապլանային 1000 էլեկտրաշարժիչ։ Գործարանի կուսկազմակերպությունը, տնտեսական ղեկավարները հաստատակամորեն ձգտում են, որպեսզի ընթացիկ տարվա վերջում հասնեն 1975 թ. կոնտրոլ թվերին։ Դա հնարավոր է, եթե շուտափույթ կերպով շահագործման հանձնվի նոր արտադրական մասնաշենքը, գործարկվեն արտադրական կարողությունները։ Այդ ասպարեզում վճռական գործ է արվում։ Ձեռնարկության կոլեկտիվը ձգտում է այս տարի արտադրել 75 հազար հատ Ա—4 տիպի էլեկտրաշարժիչ, որն իր տեխնիկական մի շարք հատկանիշներով գերազանցում է մյուսներին, երկու էլեկտրաշարժիչ հասցնել որակի նշանի, 1973 թ. համեմատությամբ, այս տարի աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 9 տոկոսով։

«Հիդրոհաղորդակ» գործարանի կոլեկտիվը պայքարում է 1973 թ. համեմատությամբ իրացման ծավալը 16 տոկոսով մեծացնելու համար։ Ընդ որում, աճի 90 տոկոսը կապահովվի աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Այդ նպատակով արտադրության մեջ կներդրվեն 10 նոր նմուշի բարձր արտադրողական մեքենա-սարքավորումներ, կյուրացվի նոր նմուշի հիդրոպոմպի, հիդրոփականի և բարձր ամրության ու հուսալիություն ապահովող չուգունի արտադրությունը։

Շրջանի արդյունաբերության համակարգում որոշակի տեղ են գրավում նաև թեթև արդյունաբերության ձեռնարկությունները։ Սովետաշենի տրիկոտաժի ֆաբրիկան, օրինակ, տարեկան թողարկում է մոտ 9,5 մլն ռուբլու տրիկոտաժեղեն։ Ընդգրկվելով համամիութենական սոցմրցության մեջ՝ նրա կոլեկտիվը խոստացել է այս տարի հնգամյակի կոնտրոլ թվերով նախատեսված 9 մլն 700 հազարի դիմաց երկրին տալ 10 մլն ռուբլու արտադրանք։ Տրիկոտաժագործների նպատակն է՝ թողարկվող արտադրանքի 4 տեսակներ հասցնել արտասահմանյան և հայրենական լավագույն նմուշների մակարդակին, արտադրության մեջ ներդնել 38 նոր նմուշներ։ Մեծ տեղ է հատկացված նաև խնայողության ռեժիմի խստագույն կիրառմանը, խնայված հումքի հաշվին ձեռնարկությունը պարտավորվել է թողարկել 8 հազար հատ տրիկոտաժեղեն։

Օրավուր զարգացող և արտադրության ծավալն ընդարձակող արդյունաբերության մատակարարման և պատրաստի արտադրանքն այլ տեղեր առաքելու պատասխանատու խնդիրը դրված է երկաթուղային տրանսպորտի աշխատողների վրա։ Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի և Երևանում գտնվող նրա ձեռնարկությունների կոլեկտիվները, ճիշտ հասկանալով այդ խնդրի լրջությունը, միջոցառումներ են մշակում ոչ միայն պետական պլանները կատարելու, այլև ձեռնարկությունների կողմից արտադրվող արտապլանային արտադրանքը ժամանակին տեղափոխելու համար։ Նրանք վերցրել են հանդիպական պլան՝ լրացուցիչ տեղափոխել 30 հազար տոննա ժողովրդատնտեսական բեռ։

Երևանի լոկոմոտիվային դեպոյի կոլեկտիվը պարտավորվել է ժամանակին նորոգել ու պատրաստ վիճակում պահել էլեկտրաքարշերը, ջերմաքարշերը, ապահովել նրանց տեխնիկական բոլոր տեսակի սպասարկումների բարձր մակարդակ, ներքին ռեզերվներն օգտագործելու շնորհիվ 1974 թ. ծանրաքարշ գնացքներով տեղափոխել 2 միլիարդ 700 մլն տոննա/կմ ժողովրդատնտեսական բեռ, խնայել 1 մլն 200 հազար կվտ/ժամ էլեկտրաէներգիա, 45 հազար կգ վառելանյութ։

Կուսբյուրոյի առանձին անդամներ հանձնարարություն են ստացել ուսումնասիրել ձեռնարկության բոլոր չօգտագործված ռեզերվները, զրուցել մեքենավարների հետ, իսկ առանձին դեպքերում օգնել նրանց՝ իրենց նախաձեռնությունների իրականացման գործում։ Պատահական չէր, որ, երբ լոկոմոտիվային դեպոյի բազմամարդ ժողովում քննարկվում էր ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը՝ ուղղված կուսակցությանն ու ժողովրդին, մեքենավար, պատվավոր երկաթուղային, ՍՄԿԿ անդամ Ալբերտ Պողոսյանը, հավանություն տալով այդ կարևոր փաստաթղթին, հանդես եկավ հայրենասիրական նախաձեռնությամբ. 1974 թվականի համար իրեն տրված 3500 տոննա ժողովրդատնտեսական բեռների փոխադրման պլանը նա համարեց ցածր և առաջարկեց այն հասցնել 4100 տոննայի, իսկ միջնորոգման վազքը ավելացնել 10—15 տոկոսով։ Նա միաժամանակ պարտավորվեց տնտեսել 45 հազար կվտ/ժամ էլեկտրաէներգիա, տեխնիկական զննումները կատարել բրիգադայի ուժերով, ապահովել գնացքների անվտանգ երթևեկությունը։

1974 թ. հունվարի 19-ին, շրջանի արտադրության առաջավորների շրջանային հավաքում ելույթ ունենալով՝ մեքենավար Ա. Պողոսյանը կոչ արեց հանրապետության բոլոր մեքենավարներին՝ միանալ իր նախաձեռնությանը։ Նա միաժամանակ թվարկեց այն ուղիները, որոնցով հնարավոր է կատարել ստանձնած պարտավորությունները։

Շրջանի արդյունաբերության, տրանսպորտի, շինարարական, առևտրի և մատակարարող կազմակերպությունների կոլեկտիվները, ոգևորված կուսակցությանն ու ժողովրդին ուղղված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումով և մասնակցելով համամիութենական սոցիալիստական մրցությանը, իրենց վճռականությունն են արտահայտում՝ հնգամյակի որոշիչ տարին հաղթանակի տարի դարձնելու համար։

---

# ՀՆԳԱՄՅԱԿԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐՆԵՐԸ

## ՍՈՑԻԱԼ-ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ՖՈՆԴԸ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԽԹԱՆՄԱՆ ՍԻՍՏԵՄՈՒՄ

Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը տարեցտարի ավելացնում են բնակչության ձրի կամ արտոնյալ ձևով տրվող վճարումների և ծառայությունների ծավալն ու նրանց համար հատկացվող միջոցները։ Բավական է նշել, որ սպառման հանրային ֆոնդերը 1972 թ. կազմել են մոտ 73,0 մլրդ ռուբլի։ Բնակչության մեկ շնչի հաշվով պետությունը մեկ տարում կատարել է ավելի քան 290 ռուբլու վճարումներ կամ ձրի ու արտոնյալ ծառայություններ։ Հայկական ՍՍՀ-ում այդ ֆոնդերը 1971 թ. կազմել են 627,7 մլն ռուբլի՝ 1970 թ. 581,3 մլն-ի փոխարեն։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվներին համապատասխան, իններորդ հնգամյակում սպառման հանրային ֆոնդերը կաճեն 40 տոկոսով և 1975 թ. կկազմեն 90 մլրդ ռուբլի։

Տնտեսավարման նոր պայմաններում, ինչպես հայտնի է, արդյունավետ աշխատող ձեռնարկություններում շահույթի հաշվին ստեղծվում և օգտագործվում են սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության ֆոնդեր, որոնք աշխատանքի խթանման ու նյութական խրախուսման դերով առանձնահատուկ տեղ են գրավում համատեղ օգտագործման ֆոնդերի մեջ։

Կենտրոնացված, համապետական հանրային ֆոնդերի չափերն ավելի կայուն են և տարեցտարի ավելացող. դրանք նախապես սահմանում են կենտրոնական պլանային օրգանները։ Սպառման հանրային ֆոնդերի մյուս մասը, որը գոյանում ու օգտագործվում է անմիջապես ձեռնարկություններում, կարող է ունենալ միայն նախնական՝ մոտավոր չափեր, որոնք ճշտվում են կոնկրետ ժամանակաշրջանում, ձեռնարկության կոլեկտիվի տնտեսական գործունեության արդյունքները վերջնականապես հանրագումարի բերելուց հետո։

Սպառման հանրային ֆոնդերի ծավալը պայմանավորված է ժողովրդական տնտեսության մակարդակով և ուղղված դրա հետագա բարձրացմանն ու բնակչության կյանքի բարելավմանը։ Այնինչ սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության ֆոնդը արտադրական կոնկրետ կոլեկտիվի ջանքերի արդյունք է և ուղղված այդ նույն կոլեկտիվի գործունեության արդյու-



նավետության ու յուրաքանչյուր աշխատողի բարօրությանը։ Ինչքան լավ է աշխատում կոլեկտիվը և բարձր են նրա աշխատանքի արդյունքները, այնքան մեծ են ձեռնարկությունում բաշխվող հանրային ֆոնդերը։ Վատ աշխատանքն ու շահույթի նվազումը անխուսափելիորեն պակասեցնում են ֆոնդի չափերը։

Անցյալում, հատկապես մինչև 60-ական թվականների կեսերը, մեր երկրում գերակշռում էր հանրային ֆոնդերի օգտագործման կենտրոնացված մեթոդը։ Օրինակ, 1965 թ. հանրային ֆոնդերի համապետական մասը կազմում էր դրանց ընդհանուր ծավալի 66 տոկոսը և միայն 14 տոկոսն էր պատկանում առանձին կազմակերպությունների ու կոլտնտեսությունների։

Ավելի ուշ, հատկապես արդյունաբերության մեջ տնտեսական ռեֆորմի իրականացման ժամանակ, երբ արտադրության արդյունավետության և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման հարցերն ավելի կոնկրետ դարձան, աստիճանաբար սկսեց ընդլայնվել համատեղ օգտագործման երկրորդ մեթոդը։

Հազիվ թե առարկելի լինի այն, որ աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունք դաստիարակելու խնդիրների առավել արդյունավետ լուծումը՝ որպես առաջնակարգ կենսական պահանջ, կարող է իրականանալ հանրային ֆոնդերի բաշխման երկու ձևերի կիրառման ու զուգակցման միջոցով։ Ընդ որում, ավելի խոշոր մասշտաբների խնդիրները, ինչպես, օրինակ, ժողովրդական կրթության, բուժսպասարկման, կենսաթոշակների ապահովումը և այլն իրականացվում է, առաջին հերթին, սպառման հանրային ֆոնդերի կենտրոնացված մասի միջոցով՝ ողջ երկրի մասշտաբով։

Ձեռնարկություններում սոցիալ-կուլտուրական ու բնակշինարարության ֆոնդի ստեղծումն ու օգտագործումը ուժեղացնում է սպառման հանրային ֆոնդերի կոլեկտիվ խթանիչ դերը։ Կոլեկտիվի անդամների արդյունավետ աշխատանքն ու ձեռնարկության շահութաբեր գործունեությունն է, որ իրավունք է տալիս շահույթի մի մասն օգտագործել խրախուսման սեփական ֆոնդերի ստեղծման ու հետագայում այն ինքնուրույն ծախսելու համար։

Եթե նյութական խրախուսման ֆոնդի ստեղծումն ու օգտագործումը ձեռնարկությանը հնարավորություն է ընձեռում բարձրացնելու աշխատավարձը (հաշվի առնելով կոլեկտիվի աշխատանքային հաջողությունները), ապա սոցիալ-կուլտուրական ու բնակշինարարության ֆոնդի շնորհիվ բարելավվում են կուլտուր-կենցաղային ու բնակարանային պայմանները։ Կոլեկտիվի լավ աշխատանքը նպաստում է ո՛չ միայն աշխատանքի վարձատրությանը, այլև սոցիալ-կուլտուրական կարիքների բավարարմանը։

Ձեռնարկությունների կոլեկտիվների նյութական խրախուսման ֆոնդի բավականաչափ մեծացումը նոր երևույթ է և նյութական խթանման առանձնահատուկ գծերից մեկը։ Ինչպես հայտնի է, մինչ տնտեսական ռեֆորմը ձեռնարկությունում մնացող շահույթի հաշվին ստեղծվում էր միայն աշխատողների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ու արտադրության կատարելագործման ֆոնդը։ Այժմ տնտեսական խթանման ֆոնդերը, որոնք ստեղծվում են հիմնականում ձեռնարկության շահույթից, տրոհվում են երեք ինքնուրույն ֆոնդերի։ Այն է՝ նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական ու բնակշինարարության և արտադրության զարգացման, որոնք, իրենց հերթին, բաժանվում են շատ այլ ֆոնդերի։

ՍՍՀՄ արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական խթանման ֆոնդերի միջոցները (մլն ռուբլով)

| | 1965 թ. | | 1970 թ. | | 1971 թ. | |
|---|---|---|---|---|---|---|
| | Օգտագործվել է | Մնացորդը տարեվերջին | Օգտագործվել է | Մնացորդը տարեվերջին | Օգտագործվել է | Մնացորդը տարեվերջին |
| Ամբողջը | 1363 | 1092 | 10313 | 5394 | 11184 | 5653 |
| Ձեռնարկություններում ստեղծված տնտ. խթանման ֆոնդերը | — | — | 8700 | 4452 | 9568 | 4748 |
| Դրանցից՝ | | | | | | |
| Նյութական խրախուսման | — | — | 3739 | 2519 | 4143 | 2695 |
| Սոց-կուլտ. և բնակաշինարարության | — | — | 1520 | 1044 | 1701 | 1031 |
| Արտադրության զարգացման | — | — | 3341 | 889 | 3724 | 1022 |

Ինչպես երևում է աղյուսակից, երկրի արդյունաբերական ձեռնարկու-
թյունների տնտեսական խթանման ֆոնդերի օգտագործած միջոցներն իններորդ
հնգամյակի առաջին տարում՝ 1971 թ. կազմել են 11.184 մլն ռուբլի։ Ձեռնար-
կություններում ստեղծված ու օգտագործված ֆոնդերի բաժինը եղել է 9.568
մլն ռուբլի, դրանցից նյութական խրախուսմանը՝ 4.143 մլն ռուբլի (43,7 տո-
կոս), սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարությանը՝ 1.701 մլն
(16,5 տոկոս) և արտադրության զարգացմանը՝ 3.724 մլն ռուբլի (39,6 տոկոս)։
1971 թ. միայն սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության
նպատակներով ձեռնարկությունների կողմից օգտագործված միջոցները (1.701
մլն ռուբլի) 338 մլն ռուբլով գերազանցել են 1965 թ. օգտագործված նյութա-
կան խթանման բոլոր ֆոնդերի գումարին։
Նյութական խրախուսման ֆոնդը, որն ինքնըստինքյան ըստ աշխատանքի
բաշխման ձև է, հաճախ օգտագործվում է առանց հաշվի առնելու աշխատան-
քը՝ նյութական օգնության համար։ Ակնբախորեն զգացվում է այդ ֆոնդի օգ-
տագործման աննպատակահարմարությունը։ Մյուս կողմից, սոցիալ-կուլտու-
րական ֆոնդից միջոցների տրամադրումը ավելի ճշտորեն կարտահայտեր հի-
շյալ ֆոնդի դերը որպես վճարումների և անվճար ծառայությունների միջոցի։
Այդ կարգը պետք է որ արդարացնի իրեն, մանավանդ, որ սոցիալ-կուլտուրա-
կան ու բնակարանային շինարարության ֆոնդի ծախսումը բաշխման ձև է՝
անկախ աշխատանքի քանակից ու որակից և համարվում է սպառման հան-
րային ֆոնդերի տարատեսակը։
Սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության ֆոնդը հան-
դես է գալիս որպես սպառման կոլեկտիվ ձևերի աղբյուր։ Դրա միջոցով իրա-
կանացվում է արդյունավետ աշխատանքի կոլեկտիվ շահագրգռությունը՝ ա-
ռանձին աշխատողների շահերը ձեռնարկության շահերին զուգակցելով։ Այն
համարվում է բաշխման հարաբերությունների զարգացման ու աշխատավոր-
ների կենսամակարդակի բարձրացման հուսալի աղբյուր և ավելանում է ձեռ-
նարկությունում մնացող շահույթի տեսակարար կշռի ու ծավալի մեծացման
շնորհիվ։
Սոցիալ-կուլտուրական և բնակարանային շինարարության ֆոնդը, ՀՍՍՀ
կենտրոնական վիճակագրական վարչության տվյալների համաձայն, հանրա-



պետական մինիստրությունների ձեռնարկություններում 1968 թ. կազմել է 2,550, 1969-ին՝ 7,116, 1971-ին՝ 16,6 մլն ռուբլի։ Նշված տարիներին այդ գումարներից համապատասխանաբար օգտագործվել է՝ 2,247, 4,869 և 5,3 մլն ռուբլի։

Սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության ֆոնդը կարևոր դեր է կատարում առանձին աշխատողների ու ձեռնարկության շահերի զուգակցման և արտադրության արդյունավետության բարձրացման համար նրանց նյութական շահագրգռության ուժեղացման գործում։

Առաջին մասը ծախսվում է աշխատողների կուլտուր-կենցաղային ու բժշկական սպասարկման, ձեռնարկության հիվանդանոցա-սանատորական հիմնարկություններին անհրաժեշտ դեղանյութերով ապահովելու և հանգստյան տների ու սանատորիաների ուղեգրերի, բանվորական ճաշարանների, բուֆետների, հանգստյան տների, սանատորիաների, ակումբների, կուլտուրայի պալատների ու մանկական հիմնարկությունների կահավորման, տրանսպորտային միջոցներ ու գույք ձեռք բերելու, սպորտային միջոցառումների, մանկամսուրներում, մանկապարտեզներում ու պիոներական ճամբարներում երեխաների սննդի ուժեղացման և կուլտ-կենցաղային այլ միջոցառումների համար։

Երկրորդ մասն օգտագործվում է բնակելի շենքերի, ակումբների, կուլտուրայի պալատների, հանգստյան տների, սանատորիաների, պրոֆիլակտորիումների, պիոներական ճամբարների, մանկապարտեզների, մանկամսուրների, բանվորական ճաշարանների, սպորտային շինարարությունների ու կուլտուր-կենցաղային այլ օբյեկտների շինարարության համար։

Օրինակ, Հայաստանի քիմիական արդյունաբերության ձեռնարկություններից միայն մեկը՝ Կիրովականի քիմկոմբինատը բանվորներին բուժելու նպատակով դեղորայքներ ու բժշկական սարքավորումներ ձեռք բերելու համար 1968—1970 թթ. սույն ֆոնդի հաշվին ծախսել է 7.964 ռուբլի։

Հատկանշական է, որ այդ ֆոնդի հաշվին կառուցված բնակարանները աշխատողներին են բաշխվում անմիջապես տեղում՝ տվյալ ձեռնարկության ղեկավարների կողմից։ Եթե ձեռնարկության սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության ֆոնդն այնքան էլ մեծ գումար չէ, ապա այն կարող է օգտագործվել այլ կազմակերպությունների հետ համատեղ՝ բնակելի տների, առողջարանային հիմնարկությունների ու կուլտուր կենցաղային օբյեկտների կառուցման համար։ Այդ դեպքում շինարարությանը մասնակցող յուրաքանչյուր ձեռնարկություն կարող է բաժնետեր դառնալ իր ներդրած գումարի համապատասխան։

Բնակշինարարության ֆոնդը մեծ նշանակություն ունի աշխատողներին արտադրությանը կապելու, կադրերի հոսունությունը կրճատելու գործում և այլն։ Այդ հարցերը դեռևս չեն կորցրել իրենց հրատապությունը, քանզի բնակարանի պատճառով աշխատանքից ազատվելը մեր հանրապետության շատ ձեռնարկություններում դեռևս զգալի տոկոս է կազմում։

Սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության ֆոնդը ձեռնարկությունների մեծ մասում բավական գումար է կազմում։ Սակայն այդ ֆոնդի ոչ բոլոր միջոցներն են օգտագործվել նշված ժամանակում, իսկ մասամբ էլ նպատակին չի օգտագործվել։ Չօգտագործված միջոցները փոխանցվում են հաջորդ տարվան։ Այսպես, այդ ֆոնդին հատկացված գումարներից 1971 թ. Կիրովականի քիմկոմբինատը չի ծախսել 126 հազար, արհեստական

մետաքսաթելի գործարանը՝ 384 հազար, Երևանի կաբելի գործարանը՝ 342 հազար ռուբլի և այլն։

Սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության ֆոնդը արդյունավետ օգտագործելու համար, մեր կարծիքով, ձեռնարկությունների վճարումների միջոցով կարելի է քաղաքային ու ավանային սովետներին կից ստեղծել բնակարանային ու կուլտուր-կենցաղային շինարարության կենտրոնացված ֆոնդեր։ Այդ կարգը հնարավորություն կընձեռի նյութա-տեխնիկական մատակարարումը և շինարարական աշխատանքները նախօրոք մտցնել ժողովրդատնտեսական պլանում, աշխատանքը հանձնարարել նախագծային ու շինարարական մասնագիտացված կազմակերպություններին։

Կոոպերատիվ տների կառուցումը երկրում և մասնավորապես Հայաստանում մեծ թափ է ստացել։ Սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության ֆոնդը փայավճարային կարգով կոոպերատիվ բնակշինարարության նպատակով օգտագործելը (պետական վարկերի ու բնակիչների անհատական վճարումների հետ մեկտեղ), անկասկած, կնպաստի բնակարանային ֆոնդի արագ աճին ու կադրերի ամրացմանը արտադրությանը։

Երկրի, մասնավորապես Հայաստանի արդյունաբերական կենտրոններում (մանավանդ այնտեղ, ուր քիմիական ձեռնարկություններ կան) ծուխը, փոշին, գազերը և արտադրական այլ մնացորդներ ու թափոններ աղտոտում են մթնոլորտը, ջրերը, շրջապատի տերիտորիան։ Անհրաժեշտ միջոցառումների համար առանձնացված գումարը մեծ մասամբ քիչ է լինում։ Այնինչ սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության ֆոնդի գումարները, ինչպես ցույց տվեց վերը, լրիվ չեն իրացվում։

Մեր կարծիքով, սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար նախատեսված, բայց չիրացված միջոցները նպատակահարմար կլինի օգտագործել քիմիական և այլ մնացուկներից մարդկանց համար օգտակար արտադրանք ստանալու, լիկվիդացնելու կամ գոնե կրճատելու դրանց վնասակար ազդեցությունը։ Դա թույլ կտար ո՛չ միայն բարելավել մարդկանց աշխատանքի ու կյանքի պայմանները, այլև օգուտների հաշվին բավականաչափ միջոցներ կուտակել ձեռնարկության սոցիալ-կուլտուրական ու բնակարանային շինարարության համար։

Հայտնի է, որ Կիրովականը ո՛չ միայն արդյունաբերական, այլև կուրորտային քաղաք է՝ իր սանատորիաներով, հանգստյան տներով, պրոֆիլակտորիումներով ու պիոներական ճամբարներով։ Բայց գործող քիմկոմբինատի թափոնները՝ ազոտային օքսիդը, կարբիդի ու կրի վառարանների ծուխն ու փոշին, ամոնիակի ու ցիանուրաթթվի գազերի անջատումը և այլն աղտոտում են կոմբինատի ու քաղաքի մթնոլորտը։ Նույնը կարելի է ասել նաև Երևանի, Հրազդանի, Ալավերդու և այլ քաղաքների մասին։ Մեզ թվում է, որ սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության չօգտագործված ֆոնդը կարելի է ծախսել վերոհիշյալ առողջացուցիչ միջոցառումների համար։

Սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության ֆոնդը, ինչպես հայտնի է, ստեղծվում է ձեռնարկության լավ աշխատանքով։ Բայց ոչ պակաս կարևորություն ունի յուրաքանչյուրի աշխատանքը։ Առանձին աշխատողների անհատական գործունեության վրա այդ ֆոնդի խթանիչ ազդեցությունն ուժեղացնելու նպատակով աշխատանքի շահագրգռությունը հարկավոր է տարածել ո՛չ միայն ձեռնարկության, այլև անհատների վրա։



Այդ կարելի էր անել լավագույն աշխատողներին սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆոնդի հաշվին անվճար ու արտոնյալ ծառայություններ մատուցելիս։ Նախկին չափերով վճարումները կկատարվեին անհատական աշխատանքի բարձր տեմպերի պահպանման դեպքում, իսկ վատացման ժամանակ համապատասխանաբար կնվազեր վճարումների չափը։ Միայն այդ դեպքում կարող է պահպանվել անհատ աշխատողների բարձր շահագրգռվածությունն արտադրության արդյունավետության բարձրացման գործում։

Ինչպես հայտնի է, ձեռնարկություններին իրավունք է տրված առաջավորներից ուղարկել բուհեր ու տեխնիկումներ՝ վճարելով բարձր թոշակ։ Այս բոլորը, անշուշտ, կմեծացնի սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆոնդի խթանիչ դերը։ Այն կմեծանա նաև այն դեպքում, եթե բնակարաններ տրամադրելիս, սանատորական ու հանգստյան տների, տուրիստական ուղեգրերը բաշխելիս ու խրախուսական այլ միջոցներ ձեռնարկելիս հաշվի առնվեն աշխատողների ո՛չ միայն անձնվեր աշխատանքը արտադրությունում, այլև հասարակական կազմակերպություններում։

Հասարակական աշխատանքը հաշվի առնելը և նրա մասնակի փոխհատուցումը խրախուսման նման ձևերի միջոցով կարող էին ավելի շահագրգռել աշխատողներին։ Եվ կստացվեր այսպես. լավ գործի համար աշխատողը կխրախուսվեր նյութապես և բարոյապես ո՛չ միայն արտադրության մեջ (դրույք, պրեմիա, վճարումներ, արտոնություններ, պատվոգրեր, շնորհակալություն), այլև հասարակական աշխատանքում (շնորհակալություն, պատվոգիր, բնակարանային պայմանների բարելավում, անվճար ու արտոնյալ գներով ուղեգրերի ստացում և այլն)։ Այլ խոսքով, արտադրությունում լավ աշխատելու համար, հարկավոր է ավելի լայնորեն կիրառել բարոյական խթանները, իսկ նյութականն օգտագործել նաև հասարակական կյանքում ակտիվ աշխատանքը խրախուսելիս։ Աշխատողների նյութական ու բարոյական խրախուսման այդպիսի փոխկապվածությունն ավելի լիարժեք կհամապատասխաներ բաշխման սկզբունքին և նյութական շահագրգռվածության բարձրացմանը, նյութական ու բարոյական խթանների միասնությանը։

ԱԼ. Ծ. ԾԱՏՈՒՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՓՈՒԼԸ*

Ժողովրդի բարեկեցության բարելավման անմիջական հիմքը լայն սպառման ապրանքներ արտադրող արդյունաբերության ճյուղերն են։ Դրանցից առաջատարը թեթև արդյունաբերությունն է, որը զանգվածաբար թողարկում է կենսական անհրաժեշտ և բազմազան արտադրատեսակներ։

Սովետական իշխանության տարիներին զարգացած արդի բազմաճյուղային թեթև ինդուստրիան ապահովում է բնակչության աճող պահանջները։ Բավական է նշել, որ վերջին երեսուն տարում այդ արդյունաբերության արտադրանքի ծավալը երկրում աճել է ավելի քան 5 անգամ, իսկ 1960 թ. հետո համարյա կրկնապատկվել է։ Նախատեսվում է ընթացիկ հնգամյակի վերջում Հայաստանում թեթև արդյունաբերության աճը, 1960 թ. համեմատությամբ, ավելացնել ավելի քան 3 անգամ։

Չնայած այդպիսի արագընթաց զարգացմանը, թեթև արդյունաբերությունը, ինչպես և հասարակական արտադրության երկրորդ ստորաբաժանման մյուս ճյուղերը, իրենց ծավալով դեռ չեն հասել մարդկանց բուռն աճող պահանջմունքներն ապահովող բարձր մակարդակին։ Հանրահայտ է, որ մեր երկրի արդյունաբերության զարգացման պատմական օբյեկտիվ իրադրությունը պահանջում էր հիմնական ուշադրությունը նվիրել ժամանակակից արտադրության հիմքերի հիմքին՝ ծանր ինդուստրիային։

Սակայն, մեր երկրի բազմապատկվող տնտեսական հզորության շնորհիվ մեծ չափով բարձրացել է սովետական ժողովրդի բարեկեցությունը։ Այժմ խնդիր է դրված առաջիկա 15—18 տարում սովետական յուրաքանչյուր մարդու պահանջմունքներն ապահովել ֆիզիոլոգիական ռացիոնալ նորմաների մակարդակով։ Կուսակցությունն այդ պահանջն առաջադրել է որպես այն գլխավոր խնդիրներից մեկը, որոնք բնորոշ են զարգացած սոցիալիստական հասարակարգին։

Մեր երկրի զարգացման արդի պատմական փուլում ո՛չ միայն հնարավորություն է ստեղծվում լուծելու մատնանշված խնդիրները, այլև այն դառնում է տնտեսական անհրաժեշտություն, որն առանձնապես ընդգծվեց ՍՄԿԿ XXIV համագումարում։ ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշեց. «...պետք է ավելի ու ավելի շատ ուժեր ու միջոցներ կենտրոնացնենք սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման խնդիրների լուծման վրա։ Մենք արդեն չենք կարող, առաջ անցնելով այս կամ այն, թեկուզ խիստ կարևոր տեղամասում, երկար ժամանակ ետ մնալ մյուս տեղամասերում» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 51)։

Հիրավի, սովետական իշխանության տարիներին երկրի արագ ինդուս-

* Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.։



տրացման օբյեկտիվ խնդրի լուծումն ու Սովետական Միության պաշտպանունակության ապահովումը պահանջում էին տարեցտարի բարձրացնել արտադրամիջոցների արտադրության տեսակարար կշիռը։

ՍՄԿԿ XXIV համագումարի դիրեկտիվների հիման վրա, սովետական պետության ամբողջ պատմության ընթացքում, ժողովրդական սպառման լայն առարկաներ արտադրող արդյունաբերությունն սկսեց ավելի արագ տեմպերով զարգանալ, քան արտադրամիջոցներ արտադրող ինդուստրիան։

1961—1965 թթ. արդյունաբերության «Ա» խմբի աճի տարեկան միջին տեմպերը 1,5 անգամ գերազանցում էին «Բ» խմբին։ 1966—1970 թթ. դրանց միջուտը շեշտակիորեն կրճատվեց և արդեն կազմում էր 4 տոկոս։ Սակայն «Ա» խմբի աճի տեմպերը դեռևս գերազանցում էին։ Եվ միայն ընթացիկ՝ իններորդ հնգամյակում «Բ» խումբն աճի տեմպերով 6,4 տոկոսով կգերազանցի «Ա»-ին։ «Բ» խմբի արտադրաճյուղերի կազմում թեթև արդյունաբերության տեսակարար կշիռը՝ 1965 թ. 26,4 տոկոսից 1970 թ. բարձրացավ մինչև 28,3 տոկոսի։ Ընթացիկ հնգամյակում թեթև արդյունաբերության պետական կապիտալ ներդրումները կավելանան կրկնակի անգամ։

Թեթև արդյունաբերության տեսակարար կշիռը զգալի է նաև մեր հանրապետությունում։ Ներկայումս այդ ճյուղն արտադրում է տեքստիլ գործվածքեղենի, տրիկոտաժի, սպիտակեղենի և վերնազգեստի բոլոր տեսակները, կոշիկի, կարի, կաշվի և այլ արտադրանքների լայն ասորտիմենտ։ Իններորդ հնգամյակում հատկապես բարձր տեմպերով կաճեն տրիկոտաժի, կարի, բրդեղենի և կաշվի արտադրությունները։ Այսպես, 1960 թ. համեմատությամբ, 1975 թ. տրիկոտաժի արտադրության ծավալը կավելանա 7,3, կարինը՝ 4, բրդեղենինը՝ 2,5 անգամ։

Եթե նշված առաջին երկու ճյուղերի արտադրանքի բուռն աճին նպաստում էր արտադրաբազայի համեմատական նշանակալի ծավալը, ապա բրդյա գործվածքեղենի ճյուղում՝ դրան հանգեցրին տեխնիկական վերազինվածությունը և արտադրության կազմակերպման կատարելագործումը։ Տրիկոտաժի, գուլպեղենի, կոշկեղենի և որոշ այլ արտադրանքներով ապահովվեցին ըստ շնչի սպառման գործող նորմաները. դրանց համապատասխան արտադրության ճյուղերը Անդրկովկասի մասշտաբով տերիտորիալ մասնագիտացում ստացան։

Այժմ հանրապետությունից արտահանվում են տրիկոտաժի, գուլպեղենի, կոշկեղենի և կարի արդյունաբերության արտադրանքներ, ընդ որում, դրանց որոշ տեսակներ, հատկապես տրիկոտաժից սպիտակեղենը, բարձր է գնահատվում միութենական շուկայում։ Սակայն, դժբախտաբար չի կարելի սքողել այն փաստը, որ նշված արտադրանքների մեծ մասը, հատկապես կարինը, դեռևս ցածրորակ է։

Թեթև արդյունաբերության մի շարք ճյուղերի աճի բարձր տեմպերը որոշակի հարց են հարուցում դրա գլխավոր և հետագա զարգացման հեռանկարի վերաբերյալ. մի հարց, որը մշակում են շատ տնտեսագետներ և պրակտիկ աշխատողներ։ Դրա էությունը հետևյալն է։

Ինչպես արդեն նշեցինք, հանրապետության թեթև արդյունաբերության որոշ արտադրանքների քանակը, բնակչության թվի համեմատ, գերազանցում է ըստ շնչի սպառման նորմայից։ Ոմանք այն կարծիքին են, որ հանրապետությունում արտադրության ծավալը որոշելիս հարկավոր է նկատի առնել ըստ

շնչի սպառման նորմաները նաև այնպիսի արտադրանքների նկատմամբ, ինչպիսիք են տրիկոտաժը, գուլպեղենը, կարի և կոշիկի արտադրանքները, այսինքն՝ համեմատաբար կայուն մակարդակի վրա պահել դրանց արտադրության աճը։ Նրանք գտնում են, թե անհրաժեշտ է առաջիկա հնգամյակները այնպես պլանավորել, որ դրանց արտադրության տեմպերն զգալիորեն ցածր լինեն, քան արդյունաբերության մյուս հիմնական ճյուղերինը։ Ընդ որում, դրանց արտադրության ծավալի աճը պետք է նախագծել գործող ձեռնարկությունները նոր տեխնիկայով վերազինելու, արտադրության տեխնոլոգիան կատարելագործելու, որակը բարելավելու, աշխատանքի արտադրողականության աճի և բանվորական առատ աշխատուժ ունեցող շրջաններում հարաբերականորեն մանր, ոչ մեծաթիվ ձեռնարկությունների շինարարության հաշվին։

Նման տեսակետը, մեր կարծիքով, սխալ է։ Արդյունաբերության նյութատեխնիկական բազա ստեղծելու ժամանակաշրջանում կուսակցությունը բացահայտեց էական անհամամասնություններ երկրի հասարակական արտադրության I և II ստորաբաժանումների միջև. այս հանգամանքը խանգարում էր ժողովրդական տնտեսության հետագա զարգացմանն ու բնակչության կենսամակարդակի բարձրացմանը։ Ուստի, նշված անհամամասնությունը վերացնելու համար արդի պատմական փուլում ո՛չ միայն հնարավոր, այլև անհրաժեշտ է երկու ստորաբաժանումների զարգացման տեմպերի ժամանակավոր հավասարեցումը և նույնիսկ II ստորաբաժանման նկատմամբ I-ի զարգացման տեմպերի գերազանցումը, որպիսին ամենևին էլ չի հակասում I ստորաբաժանման առավել աճի օրենքին։ Դրան համապատասխան, ընթացիկ հնգամյակում նախատեսված է II ստորաբաժանման աճի տեմպերի մի որոշ գերակշռություն։

Ակներև է, որ 15—18 տարվա տնտեսության զարգացման հեռանկարային ժամանակաշրջանի նպատակային ֆունկցիան այնպիսի նյութատեխնիկական բազայի ստեղծումն է, որը հնարավորություն կընձեռի բնակչությանն ապահովելու համապատասխան ֆիզիոլոգիական ռացիոնալ նորմաներով, լայն սպառման արտադրանքներով։ Այդ պատճառով II ստորաբաժանման աճի տեմպերի գերազանցմանն ուղղված կուսակցության տնտեսական քաղաքականությունը ո՛չ միայն չի կարող դադարել, այլև է՛լ ավելի ռացիոնալ կզարգանա։ Այդ դրույթը վերաբերում է միութենական բոլոր հանրապետություններին, որտեղ նյութական, բնական և աշխատանքային հնարավորությունների համեմատ հեռանկարային պլան է ստեղծված։ Վերը նշվածից Հայկական ՍՍՀ-ն բացառություն չի կարող կազմել։

Հայաստանի գյուղատնտեսությունը բնապայմանների տեսակետից խիստ սահմանափակ է զարգանում։ Այդ լիովին տարածվում է նաև սննդարդյունաբերության զարգացման վրա, որը հիմնականում պայմանավորված է հանրապետության գյուղատնտեսության հնարավորություններով։ II ստորաբաժանման միայն մեկ ճյուղը՝ թեթև արդյունաբերությունը, զուտ տեղական, հատկապես կանանց աշխատուժի միջոցներով տնտեսապես առավել չափով կապված է հանրապետության գյուղատնտեսության և տեղական սպառողական շուկայի հետ։

Ուստի, միանգամայն սխալ է թեթև արդյունաբերության արտադրության պլանավորվող արտադրանքի ծավալը շաղկապել ըստ շնչի սպառման նորմաների հետ, որովհետև ամենուրեք, որտեղ զարգանում է թեթև արդյունաբերությունը (իսկ այն կարող է զարգանալ այս կամ այն ուղղությամբ ամենուրեք),



այն գործում է հիմնականում արտադրանքի արտահանման հաշվին։ Այդ հանգամանքը պայմանավորված է հետևյալ պատճառներով։

Առաջին. ճյուղի արտադրության առանձնահատկությունը համեմատաբար այնպիսին է, որ դրա փոքր ձեռնարկությունները կարող են արտադրել հսկայական ծավալի արտադրանք։ Երկրորդ. այդ ճյուղի արտադրատեսակները չափազանց լայն են, բազմազան և տեղափոխման համար առավել շարժուն։ Եթե դրան ավելացնենք նաև ձեռնարկությունների մասնագիտացման արդի տնտեսական անհրաժեշտությունը, ապա միանգամայն պարզ կդառնա տեղական շուկայի հաշվով գործելու անհնարինությունը, որքան էլ լայն լինի սպառող շուկան։ Ուստի, ամենևին էլ զարմանալի չէ, որ թեթև արդյունաբերության այս կամ այն արտադրանքն արտահանվում և միաժամանակ նույնպիսի քանակությամբ ներմուծվում է։ Երրորդ. ինչպես թեթև արդյունաբերության ճյուղերում օգտագործվող հումքն ու կիսաֆաբրիկատները, այնպես էլ դրանց պատրաստի արտադրանքը, մի փոքր բացառությամբ, մեծ չափով փոխադրումների կարիք են զգում։ Այդպիսի ճյուղերից են, մասնավորապես, տրիկոտաժի, կարի և կոշիկի արտադրությունը։

Հանրապետության թեթև արդյունաբերության որոշ ճյուղեր տերիտորիալ մասնագիտացում չունեն. չնայած միութենական ընդհանուր արտադրության մեջ դրանց տեսակարար կշիռը փոքր է, բայց նրանց համար նախօրոք ստեղծվում է արտադրական բազա։ Այդպիսիք են տեքստիլ արդյունաբերության բամբակյա, մետաքսյա, բրդյա արտադրաճյուղերը։ Կասկած չի հարուցում այդ ճյուղերի հետագա էական ընդլայնման տնտեսական աննպատակահարմարությունը, որտեղ օգտագործվում են հիմնականում ներմուծվող, համեմատաբար պակաս չափով փոխադրամիջոցներ պահանջող հումք և մեծ կապիտալ ներդրումներ։ Մյուս կողմից դրանց արտադրանքը կիսաֆաբրիկատ է, որը մեծ մասամբ վերջնական արտադրանք չի դառնում, այլ հանրապետությունից արտահանվում է։ Այդ ճյուղերում, իհարկե, պետք է առավելագույն չափով սահմանափակվի նոր շինարարությունը։ Մինչդեռ դրանց ձեռնարկությունները հետագայում պետք է վերակառուցվեն, տեխնիկապես վերազինվեն և միայն դրա հիմնա վրա բարձրացնեն աշխատանքի արտադրողականությունը, բարելավեն արտադրանքի որակը և արտադրության ծավալը։

Այսպես, հանրապետության բամբակյա արտադրանքների ճյուղը պետք է զարգանա հիմնականում Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատը բարձրարտադրողական սարքավորումներով վերազինելու հաշվին՝ անցնելով անիլիկ մանելու, իսկ ջուլհակության մեջ՝ անմաքոք եղանակին։

Բրդյա գործվածքեղենի արդյունաբերության ոլորտում ընթացիկ հնգամյակում կավարտվի Երևանի նուրբ բրդյա գործվածքեղենի կոմբինատի և մահուդի ֆաբրիկայի վերակառուցումը՝ հետագա տեխնիկապես վերազինմամբ և տեխնոլոգիայի կատարելագործմամբ։ Դրանց հաշվին կաճի բրդյա գործվածքեղենի արտադրությունը։ Այդ ճյուղում նաև կավելանա ձեռքի ու մեքենայական, ինչպես նաև հատակի նրբագիպակ բարձրարվեստ գորգերի արտադրությունը։ Մետաքսե գործվածքեղենի արդյունաբերությունն ընթացիկ հնգամյակում նույնպես նախատեսված է վերակառուցել այն հաշվով, որ հետագայում նրա մեքենաների ամբողջ համակազմը նորացվի։

Այսպիսով, տեքստիլ արդյունաբերության ճյուղերում, մեր կարծիքով,

փոքր բացառությամբ, նոր ձեռնարկությունների շինարարության ոչ մի անհրաժեշտություն չկա։

Միանգամայն այլ մոտեցում պետք է լինի այնպիսի ճյուղերի նկատմամբ, ինչպիսիք են՝ տրիկոտաժի, կարի և կոշկեղենի արդյունաբերությունները։ Եթե հանրապետությունում տեքստիլ արդյունաբերության ճյուղերը չեն կարող զարգացման մեծ հեռանկարներ ունենալ, ապա մասնանշված ճյուղերի արտադրապայմանները Հայաստանում Միության մյուս հանրապետությունների ձեռնարկություններից ավելի լավ են։ Ինչպիսի՞ն են այդ առանձնահատուկ պայմանները։ Նախ՝ դա արտահայտվում է զգալի չափով ազատ բանվորական, հատկապես կանանց աշխատուժի միջոցներով։ Միութենական հանրապետությունների մեջ Հայաստանում առավել մեծ չափի է հասնում I ստորաբաժանման հարաբերությունը II-ի նկատմամբ։ Մեր հանրապետությունում մեծ չափով զարգացել են ծանր արդյունաբերության ճյուղերը, որտեղ տղամարդկանց աշխատանքի զբաղվածությունն առավել չափերի է հասնում. բնականաբար, ծանր արդյունաբերության ոլորտում զբաղված տղամարդկանց ընտանիքների անդամ կանայք ազատ աշխատուժ են, որը հնարավոր է հաջողությամբ օգտագործել մասնանշված ճյուղերի, հատկապես տրիկոտաժի և կարի արտադրությունների զարգացման համար։ Ալավերդի քաղաքում կարի ձեռնարկություն կազմակերպելու անհաջող փորձը չի կարող հիմք ծառայել այնպիսի եզրահանգման, թե իբր այստեղ կանանց աշխատուժն անբավարար է, թե պետք է հրաժարվել հետագայում համապատասխան շինարարությունից։ Նախ՝ տվյալ շրջանում այդպիսի նոր ձեռնարկությունների շինարարության համար անհրաժեշտ է նախապատրաստական լուրջ աշխատանք կատարել հատուկ մասնագիտացված դպրոցներում, տեխնիկումներում և այլ եղանակներով համապատասխան կադրերի ուսուցման ուղղությամբ, մի բան, որ հանրապետության թեթև արդյունաբերության բնագավառում խիստ անբավարար վիճակում է։ Բացի այդ, պետք է բոլոր միջոցներով բնակչության շրջանում լայնորեն պրոպագանդվի այդ ճյուղերի աշխատանքը։

Երկրորդ. կարի ֆաբրիկա կառուցելու փորձ կատարվեց այնպիսի մի շրջանում, որտեղ տղամարդ բանվորական ուժը շատ ավելի բարձր է վարձատրվում, քան թեթև արդյունաբերության ճյուղերում։ Չի կարելի կարծել, թե այդ դրությունը նորմալ է և կպահպանվի հեռանկարային պլանավորման ժամանակ։ Ակներև է, որ թեթև արդյունաբերության արտադրանքների հարաճուն հասարակական օգտակարությունը և դրա որակի շեշտակի բարձրացման անհրաժեշտությունը գնալով ավելի ու ավելի է պահանջելու այդ ճյուղի աշխատողների վարձատրությունը մյուս ճյուղում գոյություն ունեցող վարձատրության մակարդակին մոտեցնելու տնտեսական անխուսափելիությունը։

Թեթև արդյունաբերության մասնանշված ճյուղերի աճը պահանջում է համեմատաբար ոչ մեծ կապիտալ ներդրումներ, որոնց արտադրանքն արագությամբ իրացվում և հատուցվում է։ Ցածր կապիտալ ներդրումները և բարձր համախառն տարողությունը պայմաններ են ստեղծում ֆոնդհատուցման և հանրապետության արդյունաբերության արտադրանքի աճի համար։

Այսպես, մեր կարծիքով, անհրաժեշտ է կառուցել տրիկոտաժի արդյունա-



բերության խոշոր ձեռնարկություններ մինչև 6—12 մլն հատ արտադրանքի կարողությամբ, ընդլայնել թողարկվող ասորտիմենտը, հատկապես տրիկոտաժեղենի վերնահագուստի, ընդհուպ վերարկուների և կոստյումների արտադրությունը։ Ճյուղի հումքային բազան ևս ընդլայնվելու է քիմիական եղանակով ստացված նրբաթելերի վերամշակման հաշվին՝ ինչպես մաքուր, ինքնուրույն, այնպես էլ բնական մանրաթելերի խառնուրդով լայնորեն կիրառվելու են արհեստական մանրաթելերից ստացված բարձրածավալ մանվածքը, առաձգական, պարուրաձև թելերը։ Հանրապետության թեթև արդյունաբերության առաջատար ճյուղը կարող է դառնալ տրիկոտաժի արտադրությունը, որը պետք է տա ամբողջ համախառն արտադրանքի մեկ երրորդից ավելին։

Զարգացման մեծ հեռանկարներ ունի կարի արդյունաբերությունը։ Այդ ճյուղը թեև ներկայումս տալիս է թեթև արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր թողարկման 14,7 տոկոսը, այնուամենայնիվ, կազմված է վատ հագեցված ինն ոչ մեծ ձեռնարկություններից։ Համախառն արտադրանքի ցուցանիշը, որով որոշվում է այս կամ այն ճյուղի արտադրանքի ընդհանուր ծավալը, կարող է զգալիորեն աղճատել արտադրության իրական չափերը։ Այսպես, կարի արդյունաբերությունը մասնավորապես, մեծ չափով համախառն տարողություն ունի, որովհետև արտադրանքի գնի մեջ մտնում են գործվածքեղենի երեսացուի և աստառի գները՝ արտադրության վրա կատարված ծախսերի մինչև 90 և ավելի տոկոսը։ Այդ պատճառով թեթև արդյունաբերության արտադրության ընդհանուր արտադրանքի ծավալում կարի արդյունաբերության փաստացի տեսակարար կշիռը, անշուշտ, շատ ավելի համեստ է և կարելի է համարձակ ասել, որ այն թեթև արդյունաբերության ընդհանուր արտադրության մեջ ունեցած իր փաստացի տեսակարար կշռով պատկանում է հիմնական ճյուղերի թվին, այն ոչ թե երրորդ տեղում է, ինչպես ներկայացվում է արտադրանքի արժեքի մեջ, այլ վերջին տեղերից մեկում։ Այդպիսին է նաև նորաձև կոշկեղենի արտադրության ոլորտում, որի տեսակարար կշիռը աննշան է և կազմում է ընդհանուր արտադրության մոտ 13 տոկոսը։

Ի դեպ, համախառն արտադրանքի ցուցանիշն արտադրության կառուցվածքն աղճատում է նաև մյուս ճյուղերում։ Այդպես է ստացվում, մասնավորապես, նաև տեքստիլ արդյունաբերությունում, որի տարբեր ենթաճյուղային արտադրության բնեղեն ծավալը մոտավորապես համադրելի է։ Եթե համախառն արտադրանքի ցուցանիշի տեսակարար կշռի նվազման կարգով միայնց հաջորդում են բրդեղենի, բամբակեղենի, իսկ այնուհետև՝ մետաքսեղենի արտադրության ճյուղերը, ապա բնեղեն ցուցանիշներով բամբակե գործվածքների և մանվածքի արտադրության ծավալը գերակշռում է մետաքսե և ավելի շատ՝ բրդյա գործվածքեղենի արտադրության ծավալին։

Այսպիսով, բրդյա գործվածքեղենի արտադրությունը, որը թեթև արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ ունեցած իր տեսակարար կշռով երկրորդ տեղում է, ըստ երևույթին, արտադրության իրական ծավալով գրավում է ավելի համեստ տեղ, զիջելով բամբակյա գործվածքեղենին։

Կարի արդյունաբերությունը ո՛չ միայն զարգացման մեծ հեռանկարներ ունի, այլև, սկզբունքային և արմատական փոփոխություններ մտցնելուց հետո, նոր տեխնիկայի ներդրումից և այլ միջոցառումներից արտադրության հսկայական պաշարներ կհայտնաբերի։ Օրինակ, կարի արտադրության ավտոմատացումը և ձևելու մեքենաների գործադրումը հիմնված են փռվածքը էլեկտրոնային ճառագայթով կամ խտացված գազով կտրատելու վրա և հնարա-

վորություն են տալիս նախապատրաստական-ձևարարական արտադրությունն անջատել կարի արտադրությունից. այս նորությունները կարող են տասնյակ անգամ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Մեր կարծիքով, այդ ճյուղի հեռանկարային զարգացման գործում անհրաժեշտ է հաղթահարել գոյություն ունեցող հոգեբանական խոչընդոտը և պլանավորել ո՛չ թե մինչև 100 և 200 համակողմանի մեքենաների կարողությամբ մանր, այլ 360, 480 և անգամ 960 համակողմանի մեքենաներ ունեցող խոշոր ֆաբրիկաներ՝ 3—4 հազար բանվորներով։ Ընդ որում, այդպիսիք պետք է կառուցել հանրապետության խոշոր քաղաքներում և, առաջին հերթին, Երևանում։

Բարձր տեմպերով պետք է զարգանա նաև կոշկեղենի արդյունաբերությունը, որը տերիտորիալ մասնագիտացված ճյուղ կդառնա։ Այդ ժամանակ լայնորեն կարմատավորվեն կոշիկ կարելու, սոսնձման և տաք վուլկանացման մեթոդները, որոնք հնարավորություն կընձեռեն կիրառելու աշխատանքի արտադրողականությունը 2—3 անգամ բարձրացնող կիսաավտոմատ հոսքեր։

Թեթև արդյունաբերության զարգացման նկատմամբ այդպիսի շրջադարձը, որի անհրաժեշտությունը մատնանշել է ՍՄԿԿ XXIV համագումարը, զգալիորեն կբարձրացնի հանրապետության արդյունաբերության կապիտալ ներդրումների և հիմնական ֆոնդերի ընդհանուր արդյունավետությունը։

Սակայն այդպիսի «շրջադարձի» համար հարկ կլիներ հաղթահարել երկրում, նաև մեր հանրապետությունում ստեղծված հոգեբանական խոչընդոտը։ Նկատի ունենալով այդ, Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ ասաց, որ մեր արդյունաբերությունն օբյեկտիվ հնարավորությունների տեսակետից պատրաստ է բարձրանալու այն պահանջների նոր մակարդակին, որոնք ներկայացնում է ժողովրդի բարեկեցության հետագա վերելքը՝ կուսակցության կուրսը, «բայց, ինչպես որ ամեն մի գործում, այստեղ ևս հաջողությունը որոշվում է ո՛չ միայն օբյեկտիվ պայմաններով. հսկայական նշանակություն ունեն նաև սուբյեկտիվ գործոնները։ ...Կենտրոնական կոմիտեն կարևոր է համարում պլանային ու տնտեսական մարմինների, կուսակցական, սովետական, արհմիութենական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրել հենց սպառողական ապրանքների արտադրության նկատմամբ մոտեցումը լրջորեն փոխելու անհրաժեշտության վրա»։ Այնուհետև նախազգուշացնում է՝ «...եթե որոշ ընկերներ այս բանը հաշվի չեն առնում, ապա գործի նկատմամբ նման վերաբերմունքի ետևում կուսակցությունը իրավունք ունի տեսնելու կա՛մ աշխատավորության բարեկեցության անշեղ բարձրացման իր քաղաքականության էության չըմբռնում, կա՛մ իրենց անգործունեությունն արդարացնելու ձգտում։ Կենտրոնական կոմիտեն անհրաժեշտ է համարում այս հարցը դնել ամենայն սրությամբ և ամենայն անկեղծությամբ» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 67—68)։

Վ. Ի. ՂԱԶԱՆՋՅԱՆ

ՀՍՍՀ պետպլանի տնտեսագիտության և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի դիրեկտորի տեղակալ

---

# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԿՆՃՌՈՏ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ

Շինարարության թափն ու ծավալը մեր երկրում համաժողովրդական գնահատականի են արժանացել։ Կոմունիստական կուսակցությունն անում է ամեն ինչ երկրի տնտեսական հզորության, ժողովրդի նյութական, հոգևոր ու կենցաղային պահանջմունքների բավարարման համար։

Հրճվանքի ու հպարտության զգացումով են համակված ո՛չ միայն սովետական ժողովուրդը, այլև արտասահմանյան բազմահազար հյուրերն ու տուրիստները, որոնք ականատես են, թե ինչպես քանդվում է հինը ու կառուցվում նորը, ավելի լավը, առավել գեղեցիկը։

Ավելի մեծ չափով այդ զգացումներով են տոգորված մեր շինարարները, որոնց ձեռքով կառուցվում ու վեր են խոյանում նոր գործարաններ, բնակելի շենքեր, ավաններ, քաղաքներ։ Սակայն մենք, շինարարներս, կրում ենք նաև մեծ պատասխանատվություն այն բանի համար, որպեսզի բոլոր նորակառույցներն ամուր ու գեղեցիկ լինեն և արժանանան ո՛չ միայն մեր, այլև գալիք սերունդների հավանությանը։

ՀԿԿ Կենտկոմի 1973 թ. նոյեմբերյան պլենումի նյութերում ու որոշումներում համակողմանի և ճիշտ արտացոլված է հանրապետության շինարարության վիճակը՝ իր լուսավոր ու ստվերոտ կողմերով։ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանը, գնահատելով շինարարության ասպարեզում եղած տեղաշարժերը, իր զեկուցման մեջ առանձնապես կանգ առավ այդ բնագավառի թերությունների վրա, շեշտելով, որ «...հանրապետությունում կապիտալ շինարարության վիճակն ամբողջությամբ վերցրած դեռևս բավարար համարել չի կարելի և մենք լուրջ պահանջներ ենք ներկայացնում կառույցների կուսակցական կազմակերպություններին։

Կենտրոնացված կապիտալ ներդրումների տասն ամսվա պլանն ամբողջությամբ վերցրած կատարվել է 89,1, շինմոնտաժային աշխատանքներինը՝ 96,8 տոկոսով։ Տարեկան պլանի դիմաց շահագործման չեն հանձնվել ավելի քան 411 մլն ռուբլու հիմնական ֆոնդեր»։

Հետևաբար, կառույցների կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները կոչված են վճռական քայլեր անելու, որպեսզի ընթացիկ տարում ամենուր վերացվեն շինարարության ոլորտի թերությունները և նշանակալի գերակատարմամբ իրագործվեն կառույցների ո՛չ միայն պետական առաջադրանքները, այլև սոցմրցությամբ հանձն առած հանդիպական պլանի պարտավորությունները։

Այս հոդվածում կուզեինք հպանցիկ անդրադառնալ մեր շինարարության պրակտիկայում առկա մի քանի թերությունների ու դրանց հաղթահարման կոնկրետ մեթոդներին, թերություններ, որոնք բացասաբար են ազդում դրա որակական և քանակական ցուցանիշների վրա։

«Լիտերատուրնայա գազետա»-ի 1973 թ. նոյեմբերի 14-ի համարում զետեղված է Ա. Զլոբինի «Այս մանուկ Հակոբյանը» վերնագրով ակնարկը, որում հեղինակը պատմում է, թե ինչպես շինարարը, չկարողանալով ուղղել կառույցի պլանավորման սխալները, այն շտկում է «անօրինական» մեթոդով, իլյուզիոնիստ Հակոբյանի հնարամտությամբ:

Այո՛, մեր իրականության մեջ ևս կան ոչ քիչ օրինակներ, երբ շինարարությունը պլանավորելիս կատարում են սխալներ և տիտղոսային ցուցակներում մտցնում են առաջին հերթին ոչ այն օբյեկտները, որոնք, իրոք, անհրաժեշտ են սկզբում, այլ այն, որոնք կարելի է կառուցել ավելի ուշ: Իհարկե, շատ ջանքեր են պահանջվում շտկելու այդ սխալը. սակայն ոչ միշտ է հաջողվում այն: Ով չի կարող օրինական ձևով շտկել պլանավորման սխալը, նա հաճախ «հնարամտում» է, այսինքն՝ մի օբյեկտի անվան տակ կառուցում է մեկ ուրիշը: Իսկ ում դա չի հաջողվում, հաշտվում է պետական շահերը պաշտպանելու իր անկարողության հետ:

Ճիշտ այդպես կատարվեց Սևանի ապակյա թելերի գործարանի շինարարությունը: Սկզբում կառուցվեցին արտադրական միավորները, տեղադրվեցին մեքենաները և ապա համոզվեցին, որ բանվորական ուժ հավաքագրելու համար հարկավոր է կառուցել նաև բնակելի շենքեր, մանկամսուր, մանկապարտեզ և այլն: Գործարանը երկար տարիներ աշխատեց ոչ լրիվ կարողությամբ ու դեռ մինչև այժմ բանուժի պակասության հետևանքով արտադրական կարողությունները լրիվ ծանրաբեռնված չեն:

Սակայն շինարարության մեջ, բացի պլանավորման ու ֆինանսավորման հետ առնչվող սխալներից, լինում են նաև այլ կարգի թերություններ ու չլուծված հարցեր, որոնք պլանավորող ու ֆինանսավորող մարմինների, շինարարական կազմակերպությունների ու նախագծային ինստիտուտի, պատվիրատու և շահագործող կազմակերպությունների գործունեության արդյունք են:

Օրինակ, պակաս առեղծվածային չէ այն հարցը, թե ինչպես բազմաթիվ շինարարություններում մասսայական բնույթ կրող աշխատավարձի հավելագրումները լրիվ չեն սպառում աշխատավարձի ֆոնդը կամ մի՞թե չեն խախտվում եղած օրենքները, երբ ամենուր բազմահազար անհատական բնակելի շենքեր են կառուցվում, առանց անհրաժեշտ շինանյութեր ու տրանսպորտ ունենալու:

Փորձենք համառոտակի թվարկել այն ստվերոտ կողմերը, որոնց վերացումը ֆոկուսով չի լինում, այլ պահանջում է իրական միջոցառումների մի ամբողջ շարք: Շինարարության թերությունները կարելի է բաժանել երկու խմբի՝ նախագծող, պլանավորող ու կառուցող կազմակերպությունների անմիջականորեն առնչվող և շահագործման բնույթի, որոնք առնչվում են կառույցները շահագործող պատվիրատու կազմակերպությունների հետ:

Կառույցների շինարարական ժամկետները մեծ մասամբ խախտվում են: Եթե 10—12 հարկանի շենքի ավարտին նախատեսվում է ոչ ավելի մեկ տարի, ապա այժմ նման կառույցներն ավարտվում են 2—3 տարում, երբեմն էլ ավելի:

Իհարկե, ժամկետների հարատևող այդպիսի խախտումները չի կարելի բացատրել միայն կառուցողների անբավարար աշխատանքով, այլև նախագծող, պլանավորող ու ֆինանսավորող կազմակերպությունների իրարամերժ գործունեությամբ:

Հաճախ է պատահում, երբ նախագծային ինստիտուտները նախատեսում են այնպիսի կոնստրուկցիաներ, որոնց արտադրությունը հանրապետությունում



դեռևս չկա: Օրինակ, խոշոր եղջերավոր անասունների աճեցման ու բտման
համալիրի շինարարությունը Նաիրիի շրջանում սկսված է 1972 թ. և պետք է
ավարտվի 1974 թ., սակայն մինչև այժմ չի լուծված հատակի 24 հազար հատ
երկաթբետոնե ցանցասալիկների արտադրության հարցը:

Կառույցները ֆինանսավորվում են շատ հաճախ անկախ նրանց կառուց-
ման ժամկետներից: Բազմաթիվ կառույցներ դադարեցվում են ֆինան-
սավորման բացակայության հետևանքով: Ցավոք, միայն շինարարներն են
զգում, թե ինչ է նշանակում կառույցն ընդհատել ու վերսկսել: Ինչպես պետ-
պլանը, այնպես և պետշինը պետք է լուրջ խորհեն այս հարցերի մասին:

Նշենք, որ ցածր է շինարարական աշխատանքների որակը, մասնավորա-
պես երկաթբետոնե, երեսպատման, ծեփագործական, ներկարարական,
հատակապատման, սանտեխնիկական և այլ կոնստրուկցիաների պատրաստ-
ման գործում: Անթույլատրելի է, երբ երկաթբետոնե կոնստրուկցիաներում
կաղապարները հեռացնելիս երևում են երկաթյա մերկ ձողերը, մասնավորա-
պես այնպիսի կոնստրուկցիաներում, որոնք կրում են կառույցի հիմնական
ծանրությունը: Հաճախ դրանք ծածկվում են շաղախով, որը միայն քողարկում
է արատը: Կան և այնպիսի փաստեր, երբ աշխատանքի անորակությունը կամ
նախագծման սխալն ուղղելու նպատակով կուտակված կոնստրուկցիաներն
ամրացվում են մետաղական գոտիներով: Ոչ պակաս վտանգավոր է անորակ
կատարած երեսպատումը տուֆաքարերով, մանավանդ «միդիս» կոչված շար-
վածքում, որտեղ երեսպատումը կրում է կառույցի ծանրության մի մասը:

Նման աշխատանքի հետևանքը դրսևորված է Աբովյան-Թումանյան փո-
ղոցների անկյունում կառուցված բնակելի շենքի ճակատին, որտեղ մինչև օրս
երեսպատված քարերը քայքայվում են: Ծեփա-ներկարարական, հատակա-
պատման, սանտեխնիկական ու կառույցին վերջնական տեսք տվող մյուս
աշխատանքները հաճախ կատարվում են այնքան անորակ, որ բնակիչների
զգալի մասն առանց վերանորոգման չեն բնակվում:

Ճիշտ է և այն, որ անորակ գործերն արդյունք են ո՛չ միայն անպատաս-
խանատու աշխատողների, այլև ցածրորակ շինանյութերի (երեսպատման սա-
լիկներ, պարկետ, անտառանյութ և այլն), սակայն աշխղեկի բարձր պահանջ-
կոտության դեպքում, ինչպես և պատասխանատվության անհրաժեշտ մակար-
դակի պայմաններում, որը վերաբերում է նաև շինանյութ արտադրող ձեռնար-
կություններին, միշտ կարելի է հասնել ցանկալի արդյունքի և որակյալ բան-
վորական կորիզը պահել իր կոչման բարձրության վրա:

Դեռևս բարձր է շինարարական աշխատանքի ինքնարժեքը: Դա հետևանք
է նաև այն բանի, որ կառույցները սահմանված ժամկետներում չեն ավարտ-
վում: Ինքնարժեքի բարձրացման վրա ազդում են մի շարք այլ գործոններ,
որոնցից գլխավորը աշխատավարձն է:

Գաղտնիք չէ, որ ներկայումս բոլոր շինարարական կազմակերպություն-
ների բանվորների աշխատավարձը չի պարփակվում գոյություն ունեցող գնա-
ցուցակների սահմաններում և գերազանցում է այն երկու և ավելի անգամ:
Օրինակ, ծեփագործներին վճարում են մեկ, երբեմն 1 ռուբլի 50 կ., մինչդեռ
պատվիրատուներից ստանում են մեկ ռուբլուց ոչ ավելի, որտեղ մտնում է

նաև շինանյութի արժեքը: Բազմաթիվ աշխատանքների համար (այդ թվում և վերը հիշված անորակ գործերը) բանվորներին վճարում են օրական 8—12 ռուբլի, երբ գնացուցակով հնարավոր է վճարել դրա կեսը միայն: Անտարակույս, այս խախտումը կատարվում է աշխատանքի հավելագրմամբ: Մեր կարծիքով, այդ կամայականությունը շինարարության ոլորտի բոլոր տեսակի հանցանքների ու զանցանքների սկզբնապատճառն է:

Շինարարությունում գոյություն ունեցող բանվորական ուժի հոսունությունը հիմնականում կապված է աշխատավարձի նկատմամբ ցուցաբերած կամայականությունների հետ. ըստ որում, հոսունությունը նկատելի է ո՛չ միայն տարբեր մինիստրությունների ու գերատեսչությունների միջև, այլև միևնույն մինիստրության և նույնիսկ՝ միևնույն տրեստի շրջանակներում:

Շինարարության ինքնարժեքի, բանվորների աշխատավարձի հարցերում նշված թերությունների մասին խոսելիս չպետք է անտեսենք, որ պետշինն ու ժողովրդական վերահսկողության մարմիններն այդ խախտումների դեմ պայքարելու իրենց անկարողությունը թաքցնելու միտումով ջանում են չնկատել դրանք և ստեղծել տպավորություն, թե ամեն ինչ կարգին է:

Մեր գյուղերում ու քաղաքատիպ ավաններում մեծ ծավալ է ստացել անհատական բնակարանային շինարարությունը. բայց, ցավոք, այն անկազմակերպ է, առանց նյութատեխնիկական բազայի: Խիստ մոտավոր հաշիվները ցույց են տալիս, որ մեր հանրապետության սահմաններում ամեն տարի կատարվում է ոչ պակաս 80—90 մլն ռուբլու անհատական շինարարություն, որի համար չի պլանավորվում շինանյութ և տրանսպորտ: Եվ սա շարունակվում է դեռևս: Մի՞թե հասկանալի չէ, որ առանց շինանյութերի ու տրանսպորտի ոչ մի շինարարական գործ չի կատարվում, այն անօրինական ճանապարհով պետական-հանրային շինարարությունից հոսում է գյուղ ի հաշիվ որակի, ժամկետների խախտումների:

Սակայն չպետք է ասել, թե անհրաժեշտ է արգելել կամ սահմանափակել անհատական շինարարությունը գյուղերում: Ո՛չ, այն թերևս պետք է ավելի ծավալել, քանի որ բնակարանային պայմանների բարձր մակարդակը գյուղի աշխատավորների բարեկեցության հիմնական չափանիշներից է: Բայց այդ պետք է անել նույնպես կազմակերպված, ինչպես պետական շինարարությունն է: Չենք կարող համաձայնել այն կարծիքին, թե իբր անհատական շինարարությունը նույնպես ժողովրդի համար է. թող կառուցեն, ինչպես ուզում են: Այս դատողությունն ավելի շուտ ցույց է տալիս որոշ մարմինների անզորությունը՝ գլխավորելու անհատական շինարարությունը գյուղում, որի կարիքն, իրոք, զգացվում է:

Հաճախ է պատահում, երբ բնակելի և արդյունաբերական նշանակության կառույցները անավարտ են հանձնվում շահագործման, այսպես կոչված, այնպիսի չարված մանր գործերով, որոնք, ինչպես ընդունված է ասել, «չեն խանգարում բնականոն շահագործմանը»: Կառուցողների ու շահագործման ընդունող մարմինների անխուսափելի վեճերը հարթելու համար է հնարված այս դարձվածքը: Մինչդեռ, մենք պետք է հասնենք այն բանին, որպեսզի նախատեսված աշխատանքները մինչև շահագործումը լրիվ ավարտվեն, իսկ երբ որոշ բաներ ավելորդ են, բայց նշված են կատարողականում, այդպիսիք պետք է հանել նախագծից մինչև կառույցի շահագործման հանձնելը:

Շինարարական պրակտիկայում ականատես ենք եղել բազմաթիվ դեպքերի, երբ նախագծերից կամ տիտղոսային ցուցակներից բացակայել են շա-



հագործման համար միանգամայն անհրաժեշտ գործեր՝ ֆինանսավորման սահմանափակ լինելու կամ ինչ-որ սխալի հետևանքով (հատկապես բարեկարգման աշխատանքներ): Սակայն, մեր կարծիքով, լավ է բնակելի թաղամասում մի շենք պակաս կառուցել, բայց բարեկարգումը կատարել լրիվ, քան թե հազարավոր բնակիչների հարկադրել ապրելու անբարեկարգ շենքերում ու թաղամասերում:

Չմոռանանք ասել, որ բազմաթիվ բնակելի ու հասարակական շենքեր շարունակվում են կառուցվել քաղաքների կենտրոնական մասերում և սերտ կերպով առնչվում սրանց ներքին կարգ ու կանոնին: Բայց դրանք հաճախ չեն պահպանվում, կարծելով, թե այդ կներվի, որովհետև կառուցում են նորը, ավելի լավը: Շինարարության վրա բանող էքսկավատորներն ու ավտոմեքենաները կեղտոտում են ո՛չ միայն կառույցների շրջապատը, այլև ցեխն ու փոշին տարածում քաղաքով մեկ: Կենտրոնական շատ քաղաքներում և, առաջին հերթին, Մոսկվայում նորակառույցներն այնպես են մեկուսացված, որ իրենց յուրահատուկ աշխատանքով չեն խանգարում քաղաքների բնականոն ընթացքին: Չպետք է հանդուրժել, երբ բեռնատար մեքենաները բետոնով, հողով, ցեմենտով կամ շինարարական նման այլ նյութերով սրընթաց անցնում են փողոցներով, ամենուրեք կեղտ ու փոշի տարածելով առանց այն էլ մաքրությամբ չփայլող թաղամասերում:

Կյանքի բազմազան պայմաններում շինարարության հարատևումը, երբ այն զուգորդված է հնի քանդման հետ, արժանի է առավել լուրջ ուշադրության, և այն պետք է դրվի ամուր հիմքերի վրա:

Ինչպես արդյունաբերական, այնպես էլ բնակարանային ու սոցկուլտկենցաղային նշանակություն ունեցող օբյեկտների շահագործումը թե՛ գյուղում և թե քաղաքում անմխիթար վիճակում է: Հարկավ, բավական չէ կառուցել գեղեցիկ, հարմարավետ բնակելի շենքեր, ակումբներ, գործարաններ: Դրանք պետք է շահագործել ճիշտ, խնամքով, վերանորոգել ժամանակին, հակառակ դեպքում այդ կառույցներն անհրաժեշտ արդյունք չեն տա և ժամանակից շուտ կանպետքանան:

Թվենք շահագործման թերություններից մի քանիսը:

Բնակելի շենքերի զգալի մասը (մասնավորապես գյուղերում ու քաղաքների միկրոշրջաններում) գտնվում են սանիտարական ցածր մակարդակի վրա: Շենքերի շրջապատի բարեկարգումը կամ չի ավարտված, կամ թողնված է անխնամ: Կաթսայատները, նկուղները գտնվում են կեղտի մեջ, շրջապատի ջրմուղ-կոյուղու հորերի կափարիչները երբեմն հանված են կամ ջարդված: Բնակարանային ու կաթսայատների վարչություններն անհրաժեշտ հոգատարությամբ ու պահանջկոտությամբ չեն վերաբերվում թերությունների վերացմանը: Անգամ կաթսայատների մի մասը ապահովված չէ բանիմաց հնոցապաններով, որի հետևանքով որոշ կաթսայատներ գործում են ընդմիջումներով, իսկ գիշերները՝ առանց հսկողության: Նման վիճակը հղի է լուրջ վտանգներով:

Նախանձելի վիճակում չէ նաև բարձրահարկ շենքերի վերելակների օգտագործումը, որոնք հաճախ են փչանում, սիստեմատիկ հսկողությունից զերծ են, ատիճանավանդակներն օրերով չեն մաքրվում: Բնակիչներից շատերն են ճաշակում 10—12-րդ հարկերի աստիճաններով բարձրանալու «հաճույքը»:

Հասարակական զուգարանները, որոնցով իրավամբ բնորոշվում է տվյալ քաղաքի կուլտուրական մակարդակը, մշտապես հակասանիտարական վիճա-

կում են։ Ո՛չ միայն հյուրերը, այլև մեր քաղաքացիները, հաճախելով այդտեղ, ակամայից հարց են տալիս, թե արդյոք նման վիճակը սազակա՞ն է մի ժողովրդի, որին նույնիսկ դարեր առաջ անծանոթ չեն եղել քաղաքաշինությունը։

Բնակելի ու կոմունալ-կենցաղային շենքերի վերանորոգումը կատարվում է ո՛չ թե պլանով, այլ ծայրահեղ կարիքի դեպքում, որի հետևանքով որոշ կոնստրուկցիաներ (տանիքները, անձրևատար խողովակները, կաթսայատների ու աստիճանավանդակների, ինչպես և նկուղային հարկերի դուռ-լուսամուտները) նորոգվում են միայն լրիվ փչանալուց հետո։

Պետական հսկողությունից զերծ են բնակիչների կողմից կատարվող վերանորոգումները։ Քաղաքի նույնիսկ կենտրոնական մասերում շենքերի գլխավոր ճակատների վրա այսօր էլ կարելի է նկատել տարբեր գույներով ներկված դուռ-լուսամուտներ ու պատշգամբներ։ Ի դեպ, շատ բան չի կարելի պահանջել կենցաղային սպասարկման մինիստրության վերանորոգման գրասենյակներից, որոնք վերանորոգումներ են կատարում առանց բավորական ուժ ծախսելու, բայց վերանորոգման լիարժեք վարձը ստանում են։

Խիստ անբավարար վիճակում է քաղաքների փողոցների մաքրության ու կանաչապահպանման գործը։ Այստեղ ամենուր երևում են կամայականության հետքեր։ Ուստի, իրավ են մեր այցելուները, երբ միաբերան կրկնում են՝ գեղեցիկ է քաղաքը, բայց կեղտոտ է։ Չմոռանանք, որ քաղաքացիներից շատ բան է կախված քաղաքը մաքուր վիճակում պահելու գործում։ Սակայն այս բնագավառում դեռևս ցածր է մայրաքաղաքի բնակիչների զգալի մասի կենցաղավարության մակարդակը։ Նրանցից շատերը քաղաքաբնակ են, բայց, դժբախտաբար, դեռևս քաղաքացիներ չեն։

Ոչ պակաս թերություններ ունեն այն նախագծերը, ըստ որոնց իրականացվում են փողոցների և պուրակների բարեկարգումն ու կանաչապատումը։ Մի քանի տարի առաջ այդպիսի մի նախագիծ իրականացվեց մայրաքաղաքի Աբովյանի անվան փողոցում, որը փաստորեն դարձավ զբոսավայր։ Սակայն նախագծի հեղինակները հաշվի չէին առել մի շատ կարևոր հանգամանք՝ շենքերի մուտքերն ու խանութները զրկել էին մեքենաների համար անցումներից և այդ պատճառով մայթերն ու կանաչապատ տարածությունները սիստեմատիկ տրորում էին մեքենաները։ Այսօր էլ այդ երևույթը շարունակվում է։

Ինչպես երևում է, բարեկարգման նախագծերը հարկ եղած չափով չեն քննարկվում ու չափից ավելի են վստահում հեղինակներին։ Օրինակ, Հայֆիլհարմոնիայի փոքր դահլիճի անկյունում (Աբովյան փողոցի վրա), մի քանի տարի առաջ կառուցվեց ինչ-որ մի ...գերեզմանանման տաշտակ։ Այն մի տարի անօգտագործելի մնալուց հետո վերածվեց աղբանոցի։ Հետագայում քանդվեց ու փոխարենը կառուցվեց դրա փոքր տեսակը, որը, կարծեք, ծաղկաման է։ Կարծում ենք քաղաքի ղեկավարությունը ճիշտ վարված կլինի, եթե հրաժարվի նման անիմաստ ծախսերից։

Մենք համառոտ կանգ առանք շինարարության ու շահագործման ոլորտում գոյություն ունեցող որոշ թերությունների ու ստվերոտ կողմերի վրա։ Համոզված ենք, որ այդ հարցերը պետշինի և ժողովրդական վերահսկողության օրգանների կողմից արժանի են ամենալուրջ ուշադրության։ ՀԿԿ Կենտկոմի 1973 թ. դեկտեմբերյան պլենումում ևս բավականին խիստ խոսվեց մեր շինարարության ակնբախ արատների ու թերությունների վերաբերյալ։ Մնում է, որ կուսակցական ու պետական համապատասխան մարմինները գործնականորեն կիրառեն պլենումի հանգամանալի մշակված որոշումները։



Հանրապետության աշխատավորները մեկ ամսից ավելի է, ինչ գործով են պատասխանում ՍՄԿԿ Կենտկոմի՝ Կուսակցության ու սովետական ժողովրդին հղած հունվարի 4-ի պատմական դիմումին, որում շեշտված է. «Այժմ երկրում առաջավոր ձեռնարկությունների նախաձեռնությամբ ընդլայնվում է հանդիպական պլաններ ստանձնելու շարժումը։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հսկայական նշանակություն է տալիս այդ նախաձեռնությանը։ Յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում ներքին ռեզերվները մոբիլիզացնելու հիման վրա կարելի է հասնել արտադրանքի թողարկման նշանակալի ավելացման և որակի բարելավման։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատողներին կոչ է անում սոցիալիստական մրցության մեջ առանձնահատուկ ուշադրություն կենտրոնացնել աշխատանքի արտադրողականության աճի արագացման, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման վրա»։

Կենսական այս խնդիրների լուծումը յուրաքանչյուր կոլեկտիվից, մեզնից ամեն մեկից պահանջում է քրտնաթոր աշխատանք, տնտեսավարման ինտենսիվ եղանակի կիրառում, առավելագույն խնայողություն, աշխատանքային բարձր կարգապահություն և վստահված գործի խորիմացություն։ Այս պայմանով միայն հնարավոր կլինի համակողմանիորեն կենսագործել ՍՄԿԿ XXIV համագումարի ծրագրային որոշումները, ընթացիկ հնգամյակի չորրորդ՝ որոշիչ տարվա պլանները։

**Գ. Կ. ՍԱՐԳՍՅԱՆ**
Շինարար-ինժեներ

# ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ

*

## ՀՈՒԺԿՈՒ

## ՏԱՂԱՆԴ

*

(Պարույր Սևակի ծննդյան
50-ամյակի առթիվ)

Բազմադարյան պատմություն ունեցող հայ բանաստեղծությունն այնքան
է հարուստ ստեղծագործական վառ անհատականություններով, գեղարվես-
տական խոսքի հոյակապ կոթողներով, որ մեր օրերում դժվար է արժանի
կերպով շարունակել նրա խոշորագույն դեմքերին ու կանգնել նրանց կողքին,
նոր էջ բացել նրա «ոսկե մատյանում»: Դրա համար ո՛չ միայն բնատուր մեծ
տաղանդ է հարկավոր, այլև ժամանակի սուր և խոր զգացողություն, գեղար-
վեստական մշակույթի բազմակողմանի իմացություն, ավանդույթների և հա-
մարձակ նորարարության զուգակցման կարողություն, որ քչերին է հատուկ:
Պարույր Սևակը այդ հազվագյուտներից էր, բանաստեղծական-«ճառա-
գայթային ախտով» հարուստ մի խառնվածք, և նրա անունը մեկընդմիշտ
մտնելու է նոր ժամանակների հայ բանաստեղծության ամենամեծ երախտա-
վորների շարքը: Նա մեկն էր իր իսկ երգած «մեծերից», ովքեր «ուշ-ուշ են
գալիս, բայց ոչ ուշացած, ծնվում են նրանք ճիշտ ժամանակին» և գեղարվես-
տական խոսքի նոր հորիզոններ բացում, հայրենի մշակույթի զարգացմանը
նոր ընթացք տալիս:
Երեք տասնամյակ տևեց Պարույր Սևակի ստեղծագործական կյանքը,
որ հագեցած էր բանաստեղծական ուղիների անդադրում, խիզախ որոնում-
ներով, հայտնություններով ու հաղթանակներով: Իր ճանապարհն սկսելով
հայ և համաշխարհային պոեզիայի մի շարք դասականների անմիջական ազ-
դեցությամբ, նա ունեցել է նաև իր անկրկնելի ձայնը, մտքերի ու ապրումնե-



րի սեփական աշխարհը: Այդ ինքնատիպը գնալով խորացել, հստակվել ու դարձել է հայրենի բանարվեստի մի թարմ հոսանք, ուր ամեն ինչ կրում է բանաստեղծական հզոր անհատականության կնիքը:

**Ես նոր մի պոետ, անհայտ տակավին,**
**Խոհերի անտես մակույկին նստած՝**
**Չգիտեմ՝ արդյոք կլինի քամի,**
**Որ առաջ մղի իմ առագաստը,**
**Թե ինքս պիտի շապիկն իմ՝ կայմին**
**Առագաստ շինեմ, նոր լինեմ վստահ,**
**Որ երգն իմ նորեկ, նավը իմ գանձի,**
**Պիտի ընթանա օվկիաններն ի վեր**
**Եվ փոթորկածուփ ծովերում անծիր**
**Որպես գալիքի անմարմին նվեր,**
**Պիտի շնչով իր անանձնապատկան**
**Վառվի որպես վես, սրբազան պատգամ:**

Բանաստեղծության, երգի մասին այսպիսի ըմբռնումներով ու պատկերացումներով 1942 թվականին առաջին անգամ Սևակը ներկայացավ ընթերցողին: Մանկական տարիներից, իր ապագան ու կոչումը պատկերացնելով պոեզիայի մեջ՝ նա առաջին իսկ քայլերից ձգտել է ընթանալ դժվարին ճանապարհով: Եվ, պատահական չէ, որ հենց սկզբից նրա առջև հառնել են «ինչպիսի՞ն պիտի լինի երգը», «ի՞նչ պիտի տա նա կյանքին» հարցերը և ստացել որոշակի ու կտրուկ պատասխաններ.

**Պիտի իմ երգը ծնվի կյանքի մեջ,**
**Կյանքի գրկի մեջ... կյանքից գոյացած,**
**Պիտի որ դառնամ կյանքի բանաստեղծ,**
**Կյանքի զորությամբ բարձր խոյացած...**
**Պիտի ջարդոտեմ ամեն մի կապանք,**
**Ամեն մի շղթա՝ հոգիս կաշկանդող,**
**Որ կյանքը երգիս մեջ էլ մնա կյանք,**
**Որ չլինեն տողեր խոհերս բանտող....**

Պատանի բանաստեղծը, իբրև պոեզիայի հիմնական չափանիշ, առաջադրում է ճշմարտության զգացումը: Այսպիսի ծրագիր առաջադրելով՝ պատանի Սևակը ներքին հավատ է ունեցել իր ուժերի հանդեպ, և, որ շատ կարևոր է, այդ ժամանակ արդեն հասկացել է, որ հայ պոեզիայի զարգացման ուղին ամենից առաջ պիտի խարսխել չարենցյան ավանդների վրա, որ բանաստեղծների նոր սերունդն իր ճանապարհը պիտի սկսի այնտեղից, որտեղ ավարտել է Եղիշե Չարենցը:

Պատերազմի տարիներին Սևակի բանաստեղծությունների մեծ մասը համակված է խոր թախծով: Վառվռուն երազներով, սովետական հայրենիքի հզորության, մարդկայնության, արդարության, խաղաղության ու ապագայի նկատմամբ անհուն հավատով լեցուն պատանու վրա ծանր ազդեցություն են թողնում հանկարծակի սկսված պատերազմի թոհուբոհը, միլիոնավոր մարդկային զոհերը: Բանաստեղծն այդ պատճառով հուսահատ է սիրո մեջ, ամենուրեք մահ է տեսնում— մահ մանուկի ու ծերի, օտարի ու հարազատի, մտերմի ու արյունակցի և, նրան թվում է, թե այլևս «չի հնչի լռած երգը», բայց և հավատում է, որ մարդկային սպանդը վերջ կունենա: «Բայց ես հավատում եմ հավատով խորին, շուտով մահը նորից գին կունենա ինձ համար

և քո կյանքում»— դիմելով բանաստեղծ ընկերոջը այսպես է գրում Սևակը 1943 թվականին: Պատերազմը և մարդը, պատերազմը և բանաստեղծը թեման Սևակը չի պատկերում կոնկրետ իրադարձությունների, դեպքերի նկարագրությամբ: Այդ գործերի բնորոշ առանձնահատկությունը մտավոր խորհրրդածությունն է այն ծանր ժամանակների ու աշխարհի շուրջ, որի մեջ վիճակվել էր ապրել մարդկությանը:

Ինչպես ամեն մի մեծ բանաստեղծի պատանեկան գործերում, այնպես էլ Պարույր Սևակի առաջին շրջանի բանաստեղծություններում հանդիպում ենք սեփական ճանապարհ դուրս գալու փորձերի, գիտակցված կամ չգիտակցված նմանությունների. պատանի բանաստեղծը ներծծում ու յուրացնում է ուրիշների զգացումներն ու հնարանքները, դրանց մեջ որոնում սեփական մտքերի ու ապրումների համահնչունություն: Այդ գործերում ինքնուրույն, ինքնատիպ մտածողության ու ընկալման, զգացումները խտացնելու և դրանք սեփական բառերով արտահայտելու կարողության կողքին զգացվում են նաև լավ հասկացված ընթերցումներ ո՛չ միայն հայ պոեզիայի դասականներից (հատկապես Նարեկացուց, Սիամանթոյից, Վարուժանից ու Չարենցից), այլև ռուս ու համաշխարհային պոեզիայից (Պուշկին, Լերմոնտով, Ու. Ուիտմեն, Ալ. Բլոկ, Բ. Պաստեռնակ և ուրիշներ): Հետագայում այս անուններին ավելանում են Վլ. Մայակովսկին, Ռ. Դարիո, Պ. Էլյուարը, Գ. Լորկան, Պ. Ներուդան: Կարելի է վստահ ասել, որ Սևակը նկատի է ունեցել ժամանակակից մարդու սեփականությունը կազմող համաշխարհային մշակույթի գանձերը, սովորել դրանցից:

1948 թվականին լույս տեսավ Սևակի երախայրիքը՝ **Անմահները հրամայում են** գրքույկը, որի հիմնական բովանդակությունն անցած պատերազմի հիշողություններն են, սպիացող վերքերի անանց ցավը: Մահվան, կոտորածի ու ավերումի տարիները մնացել են հետևում: Բանաստեղծի հոգին համեմատաբար խաղաղվել է: Խռովքից, համատարած ցավի հոգեմաշ ապրումներից հետո բանաստեղծը զգում է բնության զարթոնքը: Սակայն դրա գիտակցումը բերում է նաև ցավի գիտակցում՝ նրանց համար, ովքեր չվերադարձան պատերազմի դաշտից: Բնության զարթոնքի ու ծաղկումի և բանաստեղծի հոգեկան վիճակի բախումից էլ ծնվում է նրա զգացմունքների դրամատիզմը: Բանաստեղծի հոգեկան մաքառումներն ու տարուբերումները, ի վերջո, լուծվում են գալիք օրերի հանդեպ ունեցած հավատով:

Բանաստեղծն իր սերնդին բնութագրում է իբրև «իմաստությամբ, փորձով, տառապանքով հարուստ» սերունդ, եկած խաղաղությունն իմաստավորում իբրև ժողովրդի երկար տարիների ջանքերի, զոհերի ու սխրագործությունների արդյունք, իսկ պատերազմը դիտում իբրև անձնական ողբերգություն, թեմային տալով քնարական լուծում:

**Անմահները հրամայում են** գրքույկում վերստին, նորովի արծարծվել են բանաստեղծի դերի ու կոչման, կյանքի ու պոեզիայի փոխհարաբերության հարցերը: Երիտասարդ Պարույր Սևակի քաղաքացիական ու բանաստեղծական նկարագրի լավագույն արտահայտություններից է 1947 թ. գրված **Դարը** բանաստեղծությունը.

Դարն այս և ի՛մ մեջ է, և քո՛ մեջ է— մեր մեջ,
Նրա ծնունդն ենք մենք, նրա արյունն ենք թանկ,
Եվ չենք կարող երբեք մեր հոգու մեջ մեղմել
Ա՛յն, ինչ ժառանգել ենք մենք սրությամբ:



Թեթևության համար դարը մեզ չի ների,
Ինչպես որ չենք ներում ինքներըս մեզ,—
Սո՛ւր է դրված հարցը լինել-չլինելու...
Մենք, որ լինելու ենք՝ լինենք ծա՞նր ու մե՛ծ:

Եվ հասկանանք, սի՛րտ իմ, ինչ մե՛զ է վիճակվել,
Որքան ծա՛նր է, դժվա՛ր, նույնքան թա՛նկ է, անգին,
Եվ եթե մեզ պահենք թեթևամի՛տ, անգե՛տ,—
Առա՛նց խնայելու դարը մեզ կապտակի...

Սևակին խորթ են դարից, ժամանակից ետ մնալ-ուշանալը. նրա բանաստեղծական դավանանքն է՝ «սեփական բազկի ուժով զգալ շունչը դարի», և՝

— Մասնագիտությո՞ւնս:— Կյանքին նայել
Միայն բարձունքներից ապագայի:

**Անմահները հրամայում են** գրքույկում ակներև էր մտածողության ինքնատիպությունը, բանաստեղծական անհատականության ուժեղ կնիքը: Հարցադրումների ու պատասխանների անսպասելիությունը, որ Սևակի բանաստեղծական զգացողության յուրահատուկ կողմն է, թարմություն էր հաղորդում նույնիսկ ընդհանուր դարձած թեմաներին: Պատկերների, համեմատությունների, փոխաբերությունների նրա զինանոցը իրականությունն է, ժամանակակից կյանքը՝ իր բնորոշ կողմերով ու երևույթներով: Այս գրքույկին հաջորդում են նրա **Անհաշտ մտերմություն** պոեմը (1953) և **Սիրո ճանապարհ** ժողովածուն (1954), որոնք բավականաչափ հեռու էին բանաստեղծի անհատականության դրսևորումից:

Պարույր Սևակի բանաստեղծական ինքնատիպ ձայնն ամբողջ ուժով սկսեց հնչել 1950-ական թվականների կեսից հետո՝ մեր երկրի զարգացման համար կարևոր նշանակություն ունեցող իրադարձություններով լի տարիների:

1953 թվականին Սևակը գրում է **Ուշացած իմ սեր** պոեմը, որ **Դժվար խոսակցություն** վերնագրով նախ լույս տեսավ Մոսկվայում «Новый мир» ամսագրում (1956 թ.), ապա **Ես ևս այդ մասին** խորագրով՝ **Բանաստեղծություններ** ռուսերեն ժողովածուում, գրական ու ոչ գրական շրջաններում բորբոքելով շատ կրքոտ վեճեր և հեղինակի անունը հայտնի դարձնելով ռուս ընթերցողների ամենալայն խավերում: «Ուշացած» սիրո պատմության առիթով Սևակը խորհրդածում է սիրո, ընտանիքի, բարոյականության խնդիրների շուրջ, բողոքում մարդուն հասարակացնելու, նրա անհատականությունն անտեսելու մտայնության դեմ:

Սիրո «մասնավոր» պատմությունը պոեմում իմաստավորվում է իբրև բարոյական մեծ խնդիր՝ ճշմարտության ու կեղծիքի անհաշտ պայքարի, ճշմարտության հաղթանակի ու այդ հաղթանակի դժվարության խնդիր: Պոեմը սկզբունքային ու իրոք «դժվար խոսակցություն» է ազնվության, ճշմարտության մասին և ուղղակի մարտահրավեր քաղքենիությանն ու քաղքենիական բարոյականությանը:

**Ուշացած իմ սեր** պոեմից հետո ավելի բեղուն է դառնում Սևակի գրիչը: Բանաստեղծը, որ ամբողջ էությամբ ապրում էր երկրի ու ժողովրդի շահագրգռություններով, կյանքին անմիջականորեն միջամտելու անկեղծ ու բուռն ցանկությամբ գրում է հրապարակախոսական կրքոտ, մեր իրականության

խորք երևույթներն ու դրանք կրողներին մերկացնող, անցյալը նոր հայացքով գնահատող բանաստեղծություններ, ութնյակներ ու քառյակներ, ֆելիետոնային սրությամբ ծաղրում այն ամենը, ինչ խանգարում է հասարակական առաջընթացին ու զարգացմանը: Նա դատապարտում է չարությունը, կամայականությունը, կեղծիքը, դյուրահավատությունը, կաղապարվածությունը և ուղղակի կամ անուղղակի հաստատում ազնվության, բարության, շիտակության ու ճշմարտության հաղթանակը: **Ինքն իր հետ, Մարդ էլ կա, մարդ էլ, Որդուս** և մի շարք այլ բանաստեղծություններ, ժողովրդական ասացվածքների, առածների հիման վրա ստեղծված ութնյակներն արծարծում էին լայն զանգվածներին հուզող կենսական հարցեր, պոետի համար դառնալով գրչի սրությունն ստուգելու փորձեր ու վարժություններ՝ ապագա մեծ թռիչքների համար:

Այդպիսի թռիչք էր 1957 թ. գրած **Մարդը ափի մեջ** շարքը, որ «իր ու ժամանակի մասին» դարի զավակի անկեղծ խոստովանություն է: Ափի մեջ դրված մարդը ոչ այլ ոք է, քան բանաստեղծն ինքը, որ լիովին անկեղծ է, թաքցնելու բան չունի, որովհետև նրա հոգետունը լցված է ոչ թե քաղքենիական նվնվոցով ու անմաքրությամբ, այլ երկրի, ժողովրդի, մարդու նկատմամբ սիրով ու սրտացավությամբ:

**Ապրե՜լ, ապրե՜լ, այնպե՛ս ապրե՜լ,**
**Որ սուրբ հողըդ երբեք չզգա քո ավելորդ ծանրությունը:**
**Ապրե՜լ, ապրե՜լ, այնպե՛ս ապրե՜լ,**
**Որ դու ինքդ էլ երբեք չզգաս քո սեփական մանրությունը:**

Սևակի քնարական հերոսը ապրելու, լինելության հազար ու մի ձևերից ընտրում է այս միակը, որ հասարակական մարդու իդեալն է, և ուզում է ողջ էությամբ ձուլվել ժողովրդի կյանքին, սեփական ջանքն ու տառապանքը խառնել աշխարհը շենացնողների ջանքին ու տառապանքին:

«Ես համոզված եմ,— գրել է Սևակը,— որ ժամանակակից պոեզիայում պետք է է՛լ ավելի ուժեղանա անձնական, քնարական սկզբունքը: Այնտեղ, որտեղ կա իսկական «ես», որտեղ կա իսկական անհատականություն, չի կարող չլինել քաղաքացիություն: Դա հոյակապ ձևով ցույց են տվել Մայակովսկին ու Չարենցը...

Մենք ձգտում ենք քնարական ու քաղաքացիական սկզբունքների այնպիսի համադրման, պոեզիայում քնարական անհատականության այնպիսի զարգացման, որ բնորոշ էին Մայակովսկու և Չարենցի ստեղծագործական սկզբունքներին: Մենք նորից ու նորից ենք վերադառնում նրանց մեծ ավանդույթներին՝ իբրև սովետական հեղափոխական պոեզիայի ամենից ավելի վառ ու լրիվ արտահայտված դպրոցի» («Дружба народов», 1964 թ., № 6):

**Մարդը ափի մեջ** շարքը Վլ. Մայակովսկու, Ե. Չարենցի սովետական հեղափոխական պոեզիայի, ինչպես և Ու. Ուիտմենի ավանդույթների ստեղծագործական յուրացման ու շարունակման օրինակ է, որտեղ անհատականության, անձնականության սկզբունքը հաստատվում է ժամանակակից աշխարհի հետ ունեցած խոր կապերով: Անձնականի ու հասարակականի, բանաստեղծականի ու քաղաքացիականի մի զարմանալի համաձուլվածք է այդ շարքը:

Ափի մեջ դրված մարդը ուժեղ է իր հավատարմությամբ, բարությամբ, արդարության ու ճշմարտության իր անկասելի ձգտումով, բայց նաև հողի, երկրի ու ժողովրդի հետ ունեցած իր կապվածությամբ, նրանց հանդեպ տածած որդիական երկյուղածությամբ ու սիրով: Բանաստեղծն ազնիվ հպարտու-



թյամբ է լցված իր ժողովրդի երեկվա ու այսօրվա հանդեպ, այն հողի հանդեպ, որտեղ ոչ թե տատասկ ու փուշ, այլ խաղող է անում, այն մի կուց ջրի հանդեպ, որ ոչ թե կորչում է, այլ մեկին տասը տալիս.

**Ես հպարտ եմ իմ ճյուղերով ու սաղարթով,**
**Բայց առավել՝ իմ արմատով**
**Եվ իմ բնի վաղեմությամբ:**
**Ժողովրդիս ծերունական**
**Խիստ բնական**
**խոհեմությամբ,**
**Բայց ավելի՝**
**Նոր շիվերի դալարությամբ...**

Իր հավատո-հանգանակներից մեկում Սևակը գրում է.

**Կարող եմ կյանքում ես շա՛տ բան անել,**
**Բայց անկարող եմ ինձանից վանել**
**Իմ երկվորյակին՝**
**Անկեղծությանը:**

Բանաստեղծի համար սա քաղաքացիական հավատամք է. նա անկեղծ է իր սիրո ու ատելության, հիացմունքի ու մերժման, հպարտության ու արհամարհանքի և բոլոր այն զգացումների մեջ, որոնք հատուկ են մարդուն: Ի՞նչ և ո՞ւմ է սիրում, ի՞նչ և ո՞ւմ է ատում,— այս հարցերի պատասխանը միաժամանակ որոշում է նրա պոեզիայի ուղղությունը, բնույթը, նրա գաղափարական-քաղաքական, բարոյա-հասարակական չափանիշը:

Պարույր Սևակը ամբողջովին փարած էր հայրենի հողին ու ժողովրդին և բանաստեղծություն է դարձրել նրանցից բխող մտորումներն ու ապրումները, հավատն ու հույսը: Ճշմարիտ հայրենասիրությամբ տոգորված բանաստեղծը ամենաանձնական նվագների մեջ իսկ ձգտել է իր յուրաքանչյուր պատկերն ու միտքը լցնել հայրենի երկրի գույներով ու ձայներով, մտորումներով ու ներշնչանքով: **Անլռելի զանգակատուն, Եվ այր մի Մաշտոց անուն** պոեմները, **Տխանի ծուխ, Հարկ հոգեկան** բանաստեղծական շարքերը շնչում են ճշմարիտ հայրենասիրությամբ ու քաղաքացիությամբ: Սևակը ո՛չ միայն ապրել է ժողովրդի կյանքով, այլև նրանից անբաժան է եղել.

**— Թեկուզ անանուն՝**
**Ինչպես խոտերդ սարերի լանջին,**
**Եթե ես օգնեմ կանաչությանըդ,**
**Կարող եմ ասել.**
**«Ես էլ ապրեցի»...**

Աշխարհի, մարդկության վաղվա օրվա մասին խորհելիս բանաստեղծի աչքի առջև միշտ էլ հառնել է իր ժողովրդի կերպարը, նրա երեկվա, այսօրվա ու վաղվա, նրա դարավոր մշակույթի պահպանման ու զարգացման հոգսը: Թե՛ **Անլռելի զանգակատուն**, թե՛ **Եվ այր մի Մաշտոց անուն** պոեմներում Սևակին հետաքրքրողը եղել է ոչ թե ազգային այդ ինքնատիպ անհատներից յուրաքանչյուրի կերպարը ինքնին, այլ ժողովրդի ճակատագրի բախտորոշ շրջանի ու այդ կերպարների համապատասխանության խնդիրը, ոչ թե պատմության դեպքերն ու իրադարձություններն ինքնին, այլ դրանց էությունը, փիլիսոփայությունը: Բանաստեղծը նոր ժամանակների բարձունքից և տեսանկյունից է գնահատել ու իմաստավորել Կոմիտասի ու Մաշտոցի կատարածը:

Ողբերգության ու հերոսականության, ստեղծարար աշխատանքի ու

կյանքի ամայացման հակադիր թեմաների պայքարը **Անլռելի զանգակատան** մեջ, ինչպես երաժշտական համանվագում, հասնում է բարձրակետին. երկիրը ամայացված է, ներսը խելագարված: Կործանարար չար ուժը թվում է թե հաղթել է: Բայց ո՛չ, չարը չի կարող հաղթել, և չի էլ հաղթում կյանքում: Նա կարող է ամայացնել ու ոչնչացնել երկիրը, բայց ոչ ժողովրդի ոգին, նա կարող է ոչնչացնել երգի աղբյուրը, սպանել երգ ստեղծողին, բայց ոչ երգը, որովհետև այն արձագանքում է ապրողների հոգիներում, արձագանքվելով ուժգնանում է և ահագնանում՝ դառնալով «Ահագնացող արձագանք». աշխարհով անցնում է մաքրող մի փոթորիկ՝ Հոկտեմբերյան հեղափոխությունը: Մեռած-սպանված մարմնի հետ Կոմիտասի ոգին վերադառնում է հայրենիք: Հարություն ապրող ժողովրդի հոգում իր անմահությունն է ապրում Կոմիտասը:

60-ական թվականները Սևակի ստեղծագործական կյանքում նշանավորվեցին բանաստեղծական նոր խիզախ իրագործումներով: **Նույն հասցեով, Թռուցիկ երգեր** շարքերը, **Ականջդ բեր ասեմ, Երգ երգոց, Նահանջ երգով, Եռաձայն պատարագ** պոեմները երևույթների էության մեջ խորանալու, բանաստեղծական թեմաները նորովի բացելու կարողությամբ հայ պոեզիայի ամենահինքնատիպ էջերից են, ուր ամենակարևոր և կենսական խնդիրների (հայրենիքի, ժողովրդի, անցյալի պատմության, երեկվա ու ներկայի, մարդու, աշխարհի, սիրո, արվեստի) մասին խոսվում է ամենայն անկեղծությամբ ու հոգու մաքրությամբ:

Սևակին խորթ է տրամադրության անշարժությունը, միատոն զգացմունքների ու միալար նվագների քնարերգությունը: Բանաստեղծը լավ գիտեր, որ նորաձևությունը շատ շուտ է անցնում և չգնաց դրա հետևից: Բայց և համոզված էր, որ չպիտի ժամանակից ետ մնալ՝ քարանալով ձեռք բերված պոետիկայի վրա: Ուստի և ամեն անգամ գրոհել է նոր, անակնկալ ուղղությամբ, ամեն անգամ նորոգվել ու նորացել է: Կան բանաստեղծներ, որոնց քնարական հերոսը չգիտե, թե ինչ է կատարվում իր տնից երկու քայլ այն կողմ, և ապրում է սահմանափակ շրջանակում՝ չփորձելով երբեք նրա սահմաններից դուրս գալ: Սևակի քնարական «ես»-ին խորթ է և վախեցնում է այդպիսի մեկուսացված գոյությունը: Նրա մտածումները, խոհերը ընդգրկման լայն շառավիղներ ունեն, կապված չեն կենցաղային մանրուքների հետ («պոեզիան երբեք մանրուքներից չի ծնվում»), այլ հիմնված են ժամանակակից աշխարհի, կենսափորձի խոր ըմբռնման վրա:

XX դարի երկրորդ կեսը, որի բանաստեղծն էր Սևակը, սկսվեց մարդկության պատմության մեջ աննախադեպ իրադարձություններով: Կիսվեց դարը. նրա հետ կիսվեց ո՛չ միայն ատոմը. կիսվեց նաև աշխարհը՝ քաղաքական ու գաղափարական տարբեր կողմնորոշումներով, մարդկության առջև դրվեցին հասարակական-քաղաքական այնպիսի տագնապահույզ խնդիրներ, որոնցով պայմանավորված է մարդկության ու աշխարհի ճակատագիրը: Լարվածությունը երկրագնդի տարբեր անկյուններում ու կետերում, պարբերական դարձած ռազմական բռնկումները չեն կարող չանհանգստացնել մարդկության ճակատագրով այրվող մարդուն, որովհետև դրանք կարող են վերածվել համաշխարհային պատերազմի:

Այս ամենը չէին կարող չհուզել Պարույր Սևակին, նա ոչ թե ի լրո գիտեր այդ ամենը, այլ ապրում էր այդ ամենով, ոչ թե ժամանակ առ ժամանակ է խորհրդածել երկիր մոլորակի ու մարդկության ապագայի շուրջ, այլ



մշտապես կրել է այդ մտորումները, պատասխանատվության մեծագույն զգացում ունեցել աշխարհի ճակատագրի հանդեպ:

«Վիթխարի հեղաշրջումների նախադռանն է մեր փոքրիկ ու մեծ մոլորակը,— գրել է Սևակը 1962 թ.,— և մարդկային մտքի էպիկենտրոնում է գտնվում այն երկիրը, որի զավակը լինելու պարտավորությունն ունենք:

Այդ մենք ենք, որ գագաթների ու տիտղոսների աչքերով համայն աշխարհին ենք նայում մի բարձունքից, ուր միայն մենք ենք հասել: Կոմունիզմ ունենալով մեր հայրենիքը՝ պոեզիայի մեջ էլ մենք պիտի դուրս գանք այն ուղեծիրը, որտեղից երևում է ողջ երկրագունդը, ողջ մարդկությունը...»

Աշխարհի ու մարդկության ճակատագրի թեման, որ Սևակի վերջին տասնամյակի պոեզիայում հիմնական ու կենտրոնական տեղ է գրավում, մարմնավորվել է **Եղիցի լույս** գրքում:

Այս ժողովածուի բանաստեղծական շարքերի, ինչպես ընդհանրապես Սևակի պոեզիայի միջով, անցնում է «մարդ» բառը: Նրա քնարական հերոսը ինչ-որ գերմարդ չէ, այլ հողածին, որ պատմության, աշխարհի հետ ներդաշնակության համար պայքարում է այն ամենի դեմ, ինչ նրան խորթ է ու չի համապատասխանում նրա բարձր կոչմանը: Հենց սա է Սևակի պոեզիայի մարդասիրական էության հիմքը: «Անմահության իրավունք ունի միայն մարտական պոեզիան, այսինքն՝ իսկական մարդկային պոեզիան» («Дружба народов», 1964 թ. № 6): Սևակի այս խոսքերում «մարտական պոեզիա» և «մարդկային պոեզիա» արտահայտությունները պատահական զուգադիպություն չէ, այլ բանաստեղծի մարտնչող (ոչ հայեցողական) մարդասիրության ձևակերպում:

Բանաստեղծը, որ «միանգամից է ողջ աշխարհի հետ նստում զրույցի» և «երկրագնդի պտույտն զգում է կրունկով», պատրաստ է ամեն մի զոհողության, միայն թե իրականանան սպասումներից հոգնած երկիր մոլորակի երազանքները: Սևակի երազանքն է՝ աշխարհը մաքրված տեսնել խավարից, իսկ մարդուն՝ սպառազինված ուժի ու արիության այնպիսի զենքերով, որոնք կոփվում են վստահությունից, բարությունից, հոգևոր ջերմությունից: Թեկուզ մեծ դժվարությամբ, ահռելի դիմադրողականությամբ, բայց և այնպես աշխարհը պիտի սրբագրվի բանականության ուժով: Նա համոզված է, որ աշխարհի երեսից կվերանան այն բոլոր ստվերները, որոնք անհամատեղելի են մարդասիրությանն ու մարդկային բարոյականությանը:

Մեր ժողովրդի դարավոր պատմության ու մշակույթի ժառանգորդն է Սևակը, որ կամրջեց անցյալն ու ներկան, դեպի ապագան թռչելու համար բացած հզոր թևերով: Հոկտեմբերյան հեղափոխությամբ վերածնված իր ժողովրդի հոգսերով, առօրյայով ապրող բանաստեղծի ողջ պոեզիան ստեղծագործական ակտիվ պայքար է հանուն սովետական մարդու անաղարտության, կատարելացման, նոր մարդու լինելության: Ազգային, ապա համամարդկային ազատաբաղձ մաքառումների արտացոլումն է այն:

Սևակի պոեզիան ընթերցողին համակում է բանաստեղծական ինքնայրումով, ճշմարտությամբ ու լավատեսությամբ, նրա մեջ ներարկում ու ամրապնդում պատասխանատվության զգացում աշխարհի ու մարդկության համար, մեր՝ կոմունիստական իդեալների անաղարտության համար:

**Ա. Վ. ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆ**
Բանասիրական գիտությունների թեկնածու

# ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆ

**Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ**

## ՆՈՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՌԱՋԱՐԿ*

*1922 թվականի ապրիլի վերջին մի հանդիպում ես ունեցա Ստալինի հետ։ Այս անգամ խոսքն իմ նոր աշխատանքի մասին էր։*

*Ստալինն ասաց, որ Կենտկոմում մտադիր են ինձ առաջ քաշել՝ որպես ՌԿԿ Կենտկոմի Հարավ-արևելյան բյուրոյի քարտուղար։*

*Այդպիսի առաջարկությունն ինձ համար անակընկալ էր և խախտում էր իմ բոլոր անձնական պլանները։ Անշուշտ, ես հասկանում էի, որ Կենտկոմն իր հիմքերն ունի՝ ինձ մի այլ տեղ փոխադրելու համար։*

*Բայց ինքս անձամբ այն ժամանակ չէի ուզում հեռանալ Նիժնիից։ Նոր միայն սկսել էի ինչպես հարկն է «խրվել» նիժնինովգորոդյան գործերի մեջ, կոմունիստները և անկուսակցական բանվորներն ինձ գիտեին, կուսակցական վերջին կոնֆերանսում լիակատար վստահություն էին ցուցաբերել... Բացի դրանից, ես աշխատում էի մեծ ոգևորությամբ, և գործերն էլ մեզ մոտ կարծես թե վատ չէին ընթանում։ Այս պայմաններում «պոկել» ինձ տեղից և ուղարկել մի բոլորովին նոր, այն էլ շատ մեծ աշխատանքի, որից ես, ի դեպ, կարող էի գլուխ չհանել, թվում էր անժամանակ։*

*Ուստի, խորհելով, ասացի Ստալինին, որ Կենտկոմը, իհարկե, իրավունք ունի ինձ տեղափոխելու մի այլ տեղ, մանավանդ որ Ուգլանովը լիովին կարող է գլուխ հանել նահանգկոմի քարտուղարի պարտականություններից։*

*— Ես չեմ կարող առարկել իմ տեղափոխման դեմ, բայց, անկեղծ ասած, կուզեի դեռ որոշ ժամանակ աշխատել Նիժնիում։ Դա միայն օգուտ կբերի ինձ՝ որպես կուսակցական աշխատողի։ Թեև այդ ժամանակամիջոցում կարողացել եմ խորամուխ լինել արդյունաբերության, գյուղատնտեսության և սովետական շինարարության կուսակցական ղեկավարման շատ հարցերում, այնուամենայնիվ այդ տեսակետից ինձ դեռևս բավականաչափ ուժեղ չեմ զգում և ինձ համար օգտակար է դեռ անհրաժեշտ փորձ ձեռք բերել։*

*Ստալինն ինձ լսում էր շատ ուշադիր, իսկ հետո ասաց.*

*— Միայն թե դուք ավելորդ համեստություն մի՛ք անի։ Նիժնիում արդեն մեծ աշխատանք է արված։ Կազմակերպությունը նկատելիորեն շտկվել է, գաղափարապես և կազմակերպորեն ամրապնդվել, դարձել է ավելի համախմբված։ Ուրեմն, գլխավորն արված է, և դուք հանգիստ կարող եք անցնել այն նոր տեղը, որ առաջարկում է Կենտկոմը։*

*Այն ժամանակ ես ներկայացրի իմ փաստարկները ինձ հատկապես կուսակցության Կենտկոմի Հարավ-արևելյան բյուրոյի քարտուղար նշանակելու դեմ։*

*— Շատ մեծ և պատասխանատու աշխատանք է դա,— ասացի ես,— որի համար ինձ առայժմ պատրաստ չեմ զգում։ Հյուսիսային Կովկասը հսկայական և բարդ երկրամաս է։ Այնտեղ դեռևս կան չլուծված և ինձ համար ոչ այնքան պարզ շատ պրոբլեմներ՝ կապված, օրինակ, կազակության, լեռնական ազգությունների և նրանց փոխհարաբերությունների հետ։ Բացի դրանից, այն հսկայական գյուղատնտեսական երկրամաս է, իսկ ես, հենց գյուղատնտեսական աշխատանքի փորձ, առայժմ շատ քիչ ունեմ։ Մի խոսքով՝ վախենում եմ ձախողել այդ աշխատանքը և չարդարացնել Կենտկոմի հույսերը։*

*Ստալինը դրան պատասխանեց.*

*— Դժվարությունները մի՛ք չափազանցնի։ Իհարկե, այդպիսիք այնտեղ կան։ Այժմ Կենտկոմի բյուրոյի քարտուղարն է Վիկտոր Նանեյշվիլին, նրան դուք պետք է լավ ճանաչեք դեռևս Բաքվից։ Հին բոլշևիկ է, նախկին ուսուցիչ։ Բայց աշխատանքում նա պահպանել է ուսուցչի բնավորությունն ու ընտելությունները— ավելի շատ ուսուցանում և պարզաբանում է։ Նրան չի հաջողվել կազմակերպորեն միավորել և համախմբել մարդկանց։ Բացի Ստավրոպոլի նահանգից, մնացած բոլոր տեղական կազմակերպությունները չեն պաշտպանում Կենտկոմի բյուրոյին, համարելով այն ավելորդ օղակ, իրենց և Կենտկոմի միջև ընկած անջրպետ։ Իսկ մենք գտնում ենք, որ առայժմ գոյություն ունեցող կապի վատ միջոցների և հենց Կենտկոմում չամրապնդված ապարատի պայմաններում Մոսկվայից դեռևս դժվար է ղեկավարել ու լուծել այդ երկրամասի յուրահատուկ, երբեմն իրոք շատ բարդ հարցերը։ Կենտկոմի բյուրոն ավելորդ օղակ չէ, այլ առայժմ կուսակցության Կենտկոմի անհրաժեշտ օրգանը՝ երկրամասում։ Առաջին շրջանում գլխավոր խնդիրն այնտեղ քաղաքական, կուսակցական, կազմակերպչական աշխատանքի ամրապնդումն է։ Այս աշխատանքը դուք կարող եք լիովին հաղթահարել։ Ինչ վերաբերում է տնտեսական գործերին, ապա Կենտկոմը պատրաստ է խոշոր և ուժեղ մասնագետ աշխատողներ տալ Մոսկվայից։ Տեղում գործերին ծանոթանալուց հետո ձեզ համար պարզ կլինի, թե ինչպիսի աշխատողներ է հարկավոր ուղարկել այդ երկրամասը։ Համենայնդեպս, Կենտկոմը մարդիկ չի խնայի այդ երկրամասի համար։*

*Իհարկե ես չէի կարող և չփորձեցի հերքել Ստալինի այդ փաստարկները, դրանք բավականին համոզիչ էին։ Ես միայն հայտնեցի մի նկատառում ևս.*

*— Այժմ,— ասացի,— Հարավ-արևելյան բյուրոյի կազմում է Հյուսիսային Կովկասի ռազմական շրջանի հրամանատար Վորոշիլովը։ Ես նրա հետ երբեք չեմ աշխատել և անձամբ նրան չգիտեմ։ Նա հայտնի քաղաքական գործիչ է։ Որպես բոլշևիկ և կուսակցության Կենտկոմի անդամ ինձնից բավականին մեծ է։ Հավանորեն նա արդեն ունի իր հաստատուն կարծիքը տեղական բոլոր հարցերի վերաբերյալ և, բնականաբար, կպաշտպանի իր դիրքերը։ Չէ՛ որ մենք կարող ենք և որևէ հարցում տարաձայնել... Այդ հողի վրա մեր միջև կարող են կոնֆլիկտներ ծագել։ Ես նրան հարգում եմ և չէի ուզի բախվել նրա հետ, իսկ հարմարվել չեմ կարող...*

*Ստալինն սկսեց հավաստիացնել ինձ, որ ոչ մի նման բան չի պատահի։*

*— Կարող եք գործել միանգամայն ինքնուրույն և ոչնչից չվախենալ։ Ես լավ գիտեմ Վորոշիլովին՝ որպես բանիմաց և խելացի մարդու։ Նա լավ ընկեր է և չի խանգարի ձեզ՝ երկրամասի ամրապնդման աշխատանքում։ Ընդհակառակը, ամեն կերպ կօգնի։ Բացի դրանից, ես խոստանում եմ անձամբ խոսել Վորոշիլովի հետ։*

*Դրանից հետո ինձ մնում էր միայն համաձայնել Կենտկոմի առաջարկին։*

*Զրույցի վերջում Ստալինը նկատեց, որ չափազանց նիհարել եմ և իմ տեսքը բավականին հիվանդոտ է։ Իրոք, տեսքս լավ չէր, ինչպես երևում է, ազդել էր այն ժամանակվա կիսաքաղց մթերաբաժնով անցկացրած կյանքը։ Սակայն ես միայն ասացի, որ մեկ ամիս առաջ մոտ երկու շաբաթ հիվանդացել եմ թոքերի բորբոքումով և պառկել բարձր ջերմությամբ։ Ըստ երևույթին հենց դա էլ անդրադարձել է...*

*Այդ ժամանակ նա ինձ առաջարկեց գնալ Ռիգայից ոչ հեռու, Բալթիկ ծովի ափին գտնվող՝ Կենտկոմի հանգստյան տունը։*

*— Այնտեղ պայմանները լավ են, և կկարողանաք արագ կազդուրվել։*

*Ես համաձայնեցի, մանավանդ որ 1917 թվականից հետո դեռ ոչ մի անգամ արձակուրդում չէի եղել։*

*Հրաժեշտ տալով ինձ՝ Ստալինն ասաց.*

*— Գնացեք Նիժնի, կարող եք նահանգկոմի բյուրոյի անդամներին տեղեկացնել Կենտկոմի մտադրությունը Նիժնիից ձեզ ետ կանչելու մասին և սպասեք Կենտկոմի որոշմանը։*

*Ես վերադարձա Նիժնի, բյուրոյի անդամներին պատմեցի Կենտկոմում ունեցած իմ զրույցի մասին և, սպասելով Կենտկոմի հետագա ցուցումներին՝ շարունակեցի աշխատել։*

*Մի քանի օր հետո մեզ համար անսպասելիորեն լուրջ բարդություն ծագեց Սորմովոյի գործարանում։*

*Բանն այն է, որ այդ գործարանի բանվորներն արդեն շատ անգամ էին դժգոհություն հայտնել իրենց և մայրաքաղաքի գործարանների բանվորների աշխատավարձի միջև գոյություն ունեցող խզումից։*

*Որքան էլ ջանում էինք ղեկավար տնտեսական ու սովետական օրգաններում հասնել այդ խզման վերացմանը, առայժմ ոչինչ չէր ստացվում։*

*Իսկ այստեղ հենց հակառակի պես Սորմովոյի գործարանի հիմնական պատվիրատուն՝ ՀՃԺԿ-ն, միջոցների բացակայության պատճառով, ձգձգել էր փողի փոխանցումը գործարանին՝ նրա արտադրած շոգեքարշերի դիմաց։*

*Այդ առիթով գործարանում ֆինանսական դժվարություններ էին ծագել, և գործարանի դիրեկտոր Դանիլովը երկար ժամանակ չէր կարողանում մարել բանվորների աշխատավարձի պարտքը։*

*Բանվորները համբերությամբ սպասում էին, իսկ հետո եկան Դանիլովի մոտ հետևյալ հարցումով— այնուամենայնիվ ե՞րբ են իրենք փող ստանալու։ Բայց նա չկարողացավ կոնկրետ ժամկետ նշել և միայն նորից վկայակոչեց ՀՃԺԿ-ին։*

* Սկիզբը տե՛ս «Լենինյան ուղիով» № 11, 1973 թ.։

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԳՐՔՈՒՅԿ ԿԵՆՍԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄԻ ՄԱՍԻՆ

Արդի փուլում մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման գլխավոր խնդիրը, ինչպես նշել է ՍՄԿԿ XXIV համագումարը, ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի նշանակալի վերելքի ապահովումն է։ Այդ կենսական խնդրի իրագործման համար պահանջվում է բացահայտել բնակչության կենսամակարդակի առավել բարձրացման հնարավոր ուղիները, ինչպես նաև մշակել ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման պլանավորման տեսական ու մեթոդաբանական հարցերը։ Այս առումով ուշագրավ է Գ. Ա. Ղարիբյանի մենագրությունը[1]։ Այն նվիրված է զարգացած սոցիալիզմի ժամանակ բնակչության կենսամակարդակի բարձրացման առանձնահատկությունների ու դրա պլանավորման մեթոդաբանական հարցերի ուսումնասիրությանը, ինչպես նաև մեր հանրապետության բնակչության կենսամակարդակի բարձրացման ընթացքի բազմակողմանի վերլուծությանը։

Աշխատությունն ունի կուռ տրամաբանական կառուցվածք։ Քանի որ բնակչության կենսամակարդակի բարձրացման հիմքն անհրաժեշտ արդյունքն է, այդ պատճառով հեղինակն ամենից առաջ հանգամանորեն լուսաբանում է դրա բնույթը, սահմանները, ֆունկցիոնալ դերը և կառուցվածքը։ Հենվելով մարքս-լենինյան տնտեսագիտության դրույթների վրա, Ղարիբյանը տեսական-տրամաբանական վերլուծությամբ բացահայտում է արտադրության ու բնակչության անձնական պահանջմունքների փոխադարձ կապը և իրավացիորեն նշում, որ անհրաժեշտ արդյունքի և՛ չափերը, և՛ կառուցվածքը հիմնականում կախված են բնակչության պահանջմունքներից։ Հատկապես ուշադրության արժանի են հեղինակի հարցադրումներն անհրաժեշտ արդյունքի սահմանների և ֆունկցիոնալ դերի ու հավելյալ արդյունքի հետ ունեցած փոխհարաբերության մասին։

Հատկանշական է, որ անհրաժեշտ արդյունքի նպատակներից մեկը համարվում է արտադրության զարգացման տնտեսական խթանումը։ Իրոք, երբ սոցիալիզմի պայմաններում աշխատանքը չի դարձել մարդու առաջին կենսական պահանջմունք, այլ գոյության միջոց է և նյութական ու հոգևոր բարիքները հիմնականում բաշխվում են ըստ աշխատանքի, արտադրության արդյունավետության բարձրացման գործում արտադրողների տնտեսական խթանումն անհրաժեշտ արդյունքի էական նպատակներից մեկն է, մի բան, որը, ցավոք, անտեսվել է տնտեսագիտական գրականության մեջ։

Անդրադառնալով անհրաժեշտ արդյունքի սահմանների ու հավելյալ արդյունքի հետ փոխհարաբերության հարցերին, Գ. Ղարիբյանը քննադատում է այն տնտեսագետներին, որոնք նեղացնում են աշխատուժի վերարտադրության սահմանները և մի շարք պահանջմունքների բավարարման համար անհրաժեշտ գոյամիջոցների աղբյուրը համարում են հավելյալ արդյունքը։ Ըստ այդ տնտեսագետների, անչափահասների, թոշակառուների պահպանման, մասնագետ կադրերի պատրաստման ծախսերի և, ընդհանրապես, բնտանիքի կուլտուրական բնույթի պահանջմունքների բավարարման աղբյուրը հավելյալ արդյունքն է։ Հեղինակը համոզիչ ցույց է տալիս, որ նշված ծախսերը աշխատուժի վերարտադրության համար կատարվող ծախսումների բաղադրամասն են և փոխհատուցվում են անհրաժեշտ արդյունքից։

Ընդգծելով, որ բնակչության կենսամակարդակը բնութագրող առավել սինթետիկ ցուցանիշը բնակչության ռեալ եկամուտներն են, հեղինակն իրավացիորեն նկատում է, որ այդ ցուցանիշի հաշվարկման մեթոդը կատարելագործման կարիք ունի և, բացի այդ, այն ամբողջությամբ չի արտացոլում բնակչության կենսամակարդակը։ Ներկայումս գործող մեթոդի համաձայն, ծառայությունների վճարը հանվում է բնակչության վերջնական եկամուտներից այն պատճառաբանությամբ, որ դրանք արտացոլվում են ծառայություններ մատուցողների մոտ իբրև աշխատավարձ։ Մինչդեռ, այդպիսով բնակչության եկամուտներից դուրս է մնում այն մասը, որը վճարվում է ծառայությունների դիմաց։ Գ. Ղարիբյանն այն ճիշտ տեսակետն է պաշտպանում, որ ծառայությունների համար կատարված վճարումները բնակչության ռեալ եկամուտների մեջ պետք է արտահայտվեն երկու անգամ՝ ծառայություն մատուցողի մոտ իբրև աշխատավարձ և ծառայություն ստացողի (սպառողի) մոտ իբրև սպառված կոնկրետ յուրահատուկ սպառարժեք (ծառայությանը համարժեք)։

Հեղինակը ճիշտ եզրահանգումներ է անում նաև հանրային բնակարանային ֆոնդի գնահատման, բնակչության խնայողությունների հաշվարկման և նրանց ռեալ եկամուտների մեջ դրանց արտացոլման կարգի հետագա կատարելագործման մասին։ Անշուշտ, նման եզրակացություններն ունեն ո՛չ միայն տեսական, այլև գործնական նշանակություն հատկապես ռեալ եկամուտների ճիշտ հաշվարկման և պլանավորման համար։ Ուշագրավ են նաև հեղինակի դատողությունները բնակչության կողմից նյութական բարիքների և ծառայությունների սպառման ընդհանուր ֆոնդի ցուցանիշի հաշվարկման, ռեգիոնալ կտրվածքով բնակչության կենսամակարդակի ուսումնասիրության և պլանավորման, սպառման ռացիոնալ ծավալի ու կառուցվածքի դեռևս գիտական մշակման փուլում գտնվող, բայց տեսական ու գործնական մեծ հետաքրքրություն ներկայացնող հարցերի վերաբերյալ։

Հետաքրքրությամբ են ընթերցվում աշխատության այն էջերը, որոնք նվիրված են Սովետական Հայաստանում բնակչության կենսամակարդակի բարձրացման պատմական ընթացքի բազմակողմանի և խոր վերլուծությանը։ Վիճակագրական հարուստ նյութերով լուսաբանվում է հայ աշխատավորի նախահեղափոխական չարքաշ վիճակը։ Հանգամանորեն ցույց են տրվում, թե ինչպիսի որակական և քանակական փոփոխություններ են կատարվել սովետական իշխանության տարիներին մեր ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի մեջ։ Բնակչության եկամուտների կառուցվածքի և աճի ուսումնասիրության հետ մեկտեղ մանրակրկիտ քննվում են հասարակական սպառման ֆոնդերից ստացվող եկամուտների ծավալը, կառուցվածքը և օգտագործման ուղղությունները։ Այս հարցերի լուսաբանման ժամանակ հեղինակն օգտագործում է ո՛չ միայն հարուստ վիճակագրական տվյալներ, այլև Երևան և Հոկտեմբերյան քաղաքների բանվոր-ծառայողների ընտանիքների բյուջեների մոմենտային ուսումնասիրության բավական ուշագրավ նյութերը։ Առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում սննդամթերքների հիմնական տեսակների (հացամթերքներ, կարտոֆիլ, միս, կաթ և այլն) սպառման դինամիկայի և կառուցվածքի, հատկապես ՍՍՀՄ-ում ու ՀՍՍՀ-ում սպառման մակարդակի համեմատական վերլուծությունը։

Աշխատության երկրորդ գլուխը եզրափակվում է դրամական խնայողությունների աճի և հանրապետության բնակչության վերարտադրության օրինաչափությունների ու առանձնահատկությունների խոր լուսաբանմամբ։ Անհրաժեշտ է նկատել, որ այստեղ եզրահանգումներն ու ընդհանրացումները զուգակցվում են նոր և հետաքրքրական նյութերի գիտական շրջանառության մեջ դնելու հետ։

Գրքում այնուհետև բազմակողմանիորեն լուսաբանվում է ընթացիկ հնգամյակում բնակչության կենսամակարդակի աճը ինչպես ՍՍՀՄ-ում, այնպես էլ Հայկական ՍՍՀ-ում, նշվում կենսամակարդակի բարձրացման բնագավառում ըստ աշխատանքի վարձատրության ու հասարակական սպառման ֆոնդերի դերն ու նշանակությունն իններորդ հնգամյակում։ Մասնավորապես ուշագրավ են մեր հանրապետությունում առողջապահության, կրթության, առևտրի զարգացումը, բնակչության կոմունալ-կենցաղային և բնակարանային պայմանների բարելավումը բնորոշող չափազանց հետաքրքրական ու պերճախոս տվյալներն ու դրանց խոր և համեմատական վերլուծությունները։

Գ. Ղարիբյանի աշխատությունը, մեր կարծիքով, ամբողջական հետազոտություն է, որտեղ պատշաճ գիտական մակարդակով քննարկվում են բնակչության կենսամակարդակի բարձրացման պրոբլեմի առավել այժմեական հարցերը։

Անշուշտ, գրախոսվող աշխատությունը զերծ չէ նաև թերություններից ու վիճելի դրույթներից։

Խոսելով սոցիալիստական հասարակարգում անհրաժեշտ արդյունքի ֆունկցիոնալ դերի և կառուցվածքի մասին, Գ. Ղարիբյանն այն տեսակետն է արտահայտում, որ բնակչության անձնական սպառման ֆոնդը և պահանջմունքները պլանավորելիս պետք է, իբրև ցուցանիշ, օգտագործել և պլանավորել նաև անհրաժեշտ արդյունքը, քանի որ միայն անհրաժեշտ արդյունքի պրիզմայով կարող են ճիշտ արտացոլվել ինչպես արտադրողի ընտանիքի պահանջմունքները, այնպես էլ դրանց բավարարման միջոցները (էջ 17)։ Այս հարցադրումը ո՛չ միայն վիճելի է, այլև որոշ չափով թերի։ Նախ, հեղինակը չի խոսում այն մասին, թե դա ինչպես պլանավորել, այսինքն՝ այդ դրույթը չի հասցվում գործնական կիրառության աստիճանի և այն մնում է թերի ու ոչ լրիվ հիմնավորված։ Բացի այդ, բնակչության կենսամակարդակի ցուցանիշները ժողովրդատնտեսական պլանում բազմակողմանիորեն բնորոշում են այն և այդ իմաստով, մեր

---

[1] Գ. Ա. Ղարիբյան, Բնակչության կենսամակարդակը և նրա բարձրացումը Սովետական Հայաստանում, Ե., «Հայաստան» հրատ., 1972, 177 էջ։

կարծիքով, նպատակահարմար չէ օգտագործել մի նոր ցուցանիշ ևս, մանավանդ որ դա կապված է մեթոդական լուրջ դժվարությունների հետ։

Անդրադառնալով բնակչության կենսամակարդակի բարձրացման ծրագրի՝ որպես ժողտնտպլանի բաժիններից մեկի, կառուցվածքին, հեղինակը գտնում է, որ այդ բաժնում պետք է լինեն նաև այն ցուցանիշները, որոնք արտացոլում են ժողովրդական կրթությունը, կուլտուրան, առողջապահությունը, բնակչության կենցաղային սպասարկումը և կոմունալ տնտեսությունը, մանրածախ ապրանքաշրջանառությունն ու հասարակական սնունդը և այլն։ Նա ճիշտ չի համարում այն մոտեցումը, որ դրանք պլանավորվում են որպես պլանի առանձին բաժիններ, քանի որ նշված ցուցանիշներն անմիջականորեն արտացոլում են բնակչության կողմից նյութական ու հոգևոր բարիքների անձնական սպառման պրոցեսները (էջ 33)։ Հեղինակն իրավացի է, երբ խոսքը վերաբերում է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման պետական պլանը մշակելու մեթոդական ցուցումներին, որտեղ սերտորեն կապված այդ ցուցանիշները տրված են առանձին-առանձին և ոչ թե միասին՝ որպես մեկ ընդհանուր բաժնի տարբեր ցուցանիշներ։ Մինչդեռ իրականում այդպես չէ։ Հաստատվող և այնուհետև կենսագործվող պետական պլաններում վերը թվարկված ցուցանիշները պլանավորվում են որպես բնակչության կենսամակարդակի բարձրացման պլանի բաղադրամասեր և ոչ թե ժողտնտպլանի առանձին բաժիններ (տե՛ս «Государственный пятилетний план развития народного хозяйства СССР на 1971—1975 годы», М., 1972, стр. 282—326)։

Ձեռնարկություններում շահույթից ստեղծվող կոլեկտիվ նյութական խրախուսման և հասարակական սպառման ֆոնդերի հարաբերակցության հարցի շուրջը բանավիճելով սովետական որոշ տնտեսագետների հետ, Գ. Ղարիբյանն այն տեսակետն է պաշտպանում, որ կոլեկտիվ սպառման ֆոնդերն իրենց ձևավորման, բաշխման և օգտագործման բնույթով, ինչպես նաև տնտեսական որոշակի ֆունկցիոնալ դերով էապես տարբերվում են ո՛չ միայն աշխատավարձի ֆոնդից, այլև հասարակական սպառման ֆոնդերից (էջ 124)։ Կոլեկտիվ խրախուսման ֆոնդերը երկուսն են՝ նյութական խրախուսման և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ու բնակարանային շինարարության, որոնք նման են միայն գոյացման սկզբունքներով և արմատապես տարբեր՝ բաշխման, օգտագործման բնույթով։ Ընդ որում, եթե նյութական խրախուսման ֆոնդն իր տնտեսական բովանդակությամբ նման է աշխատավարձի ֆոնդին, ապա սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարությանը, մեր կարծիքով, կարող է դիտվել որպես ապակենտրոնացված հասարակական սպառման ֆոնդ. որովհետև դրանք ունեն ընդհանուր գծեր բաշխման և օգտագործման մեջ։ Ձեռնարկությունում ստեղծվող այդ ֆոնդը չի բաշխվում ըստ աշխատանքի քանակի և որակի, ինչպես գրում է հեղինակը (էջ 125)։ Դրա հաշվին կառուցվում են բնակելի շենքեր, ակումբներ, մանկական հիմնարկություններ և այլն, որոնցից օգտվում են ձեռնարկության կոլեկտիվի անդամները։ Հետևաբար, այդ և հասարակական սպառման ֆոնդերի թերևս միակ ու հիմնական տարբերությունը բաշխման և օգտագործման շրջանակների մեջ է, քանի որ վերջինից օգտվում են ո՛չ միայն առանձին կոլեկտիվի, այլ հասարակության անդամները։ Ակնհայտ է, որ այս ֆոնդերի մի տարբերությունն այնքան էլ էական չէ, ինչպես գրում է հեղինակը։

Նշված թերությունները, անտարակույս, չեն նսեմացնում աշխատության անվիճելի արժանիքները։ Մեր կարծիքով, Գ. Ղարիբյանի ուշադրավ աշխատությունն օգտակար կլինի տնտեսագետների, բուհերի ուսանողության և բնակչության կենսամակարդակի բարձրացման հարցերն ուսումնասիրողների համար։

ՅՈՒ. Մ. ՍՈՒՎԱՐՅԱՆ
Տնտեսական գիտությունների թեկնածու



Адрес редакции: 375033, Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64։

ՎՖ 03836 Պատվեր 51 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$։ Տիրաժ 14.300 Գինը 25 կ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 19/I 1974 թ.

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ Ավ. Իսահակյան փող. № 28։




СОДЕРЖАНИЕ

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԱՌԱՆՑ ԼԻՆԶԻ ԼՈՒՍԱՆԿԱՐՄԱՆ ՆՈՐ ՄԵԹՈԴ

*Ինտեգրալ գոլոգրաֆիայի վերջին նվաճումների հիման վրա սովետական գիտնականներն ստեղծել են լուսանկարման նոր մեթոդ՝ լազերի օգնությամբ, առանց լինզի: Ի տարբերություն սովորական լուսանկարման, գոլոգրաֆիական պատկերն ստացվում է ծավալային (եռաչափ): Դա հնարավորություն է ընձեռում պարզ ու արագ կատարելու զանազան հետազոտություններ: Գոլոգրաֆիական ապարատները կիրառվում են գիտության ու տեխնիկայի տարբեր բնագավառներում:*

## ՆՈՐ ԲԱԶՄԱՌԱՐԿԱ ԿՈՆՎԵՅԵՐ

*Լենինգրադի «Վիբրատոր» գործարանում ստեղծվել է արտադրանքի անսինխրոն ռիթմով և ավտոմատ հասցեավորման նոր, բազմառարկա կոնվեյեր: Այն նախատեսված է ավելի քան 20 անուն վահանային էլեկտրոնաչափիչ պրիբորների թողարկման համար: Ընդ որում դրանցից յուրաքանչյուրի վերասարքավորումը կատարվում է ուղղակի բանելու ընթացքում, առանց աշխատաժամ կորցնելու: Այդ կոնվեյերի վրա ամեն ոք կարող է աշխատել օպտիմալ ռիթմով: Նոր սարքավորման յուրացումից հետո հավաքողների աշխատանքի արտադրողականությունը կբարձրանա 180 տոկոսով:*

## ԱՄԵՆԱՈՒԺԵՂ ԿԱՅՈՒՆ ՄԱԳՆԻՍԸ

*Շվեյցարիայում ստեղծվել է ամենաուժեղ կայուն մագնիսը, ավելի ճիշտ, ամենամագնիսային նյութը, որը կոչվում է «ռեկոմա»: Կոբալտի և սամարիումի համաձուլվածքն է այն: Այդպիսի մագնիսը կարող է պահել իր քաշից 74 անգամ ծանր մետաղ: Հայտնի բոլոր կայուն մագնիսները դրանից մոտ վեց անգամ թույլ են: Չնայած սամարիումը թանկ է, այդ համաձուլվածքն արդեն կիրառվել է պրակտիկայում: Շվեյցարիայում այն օգտագործվել է ձեռքի էլեկտրոնային ժամացույցներում:*

## ՌԱԴԻՈՌԵՊՈՐՏԱԺ՝ ԱՎՏՈԴՈՂԻՑ

*Շատ ավտովթարների պատճառն ընթացքի ժամանակ ծակվող ավտոդողն է: Այդ հատկապես վտանգավոր է դյուրակեզ ու պայթուցիկ նյութեր փոխադրող բեռնատարների համար: Շվեյցարիայում պատրաստված է փոքրիկ ռադիոհաղորդիչ, որը դրվում է յուրաքանչյուր դողի մանոմետրի մեջ: Ճնշման աննշան նվազման դեպքում իսկ հաղորդիչը ահազանգում է: Ռադիոհաղորդիչների գործողության շառավիղն ընդամենը վեց մետր է: Սակայն այդ էլ բավական է, որպեսզի ազդանշանը լսվի վարորդի խցիկում. վարորդն անմիջապես կանգնեցնում է մեքենան և վերացնում անսարքությունը:*

## ՀԵՌԱԽՈՍՆԵՐ ԽՈՒԼԵՐԻ ՀԱՄԱՐ

*Շուտով խուլ-համրերի բնակարաններում կերևան հեռախոսային ապարատներ: Արևմտագերմանական ինժեներներն ստեղծել են հեռախոսներ, որոնք ստացված ինֆորմացիան փոխակերպում են տատանումների. դրանք կարելի է «կարդալ» շոշափելով:*

## ԳԱԶԱՏԱՐ՝ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ

*Շվեդիայում թողարկվել են ապակեթելով ամրացված պոլիստիրոլային գազատար խողովակներ՝ 30—80 սմ տրամագծով: Դրանք դիմանում են մինչև 50 մթնոլորտային ճնշման, միացվում են ռետինե անցումային սարքերով: Այս մետաղը ևս պլաստմասսայով փոխարինելու մի նոր քայլ է:*